Kostaniants, ...

# ՀԻՒՍՈՒԱԾ

## ԲԱՆԻՑ ՆԱԽՆԻ ՊԱՏՄԱԳՐԱՑ ՀԱՅՈՑ

Ա.

# ՀԻՒՍՈՒԱԾ

## ԲԱՆԻՑ ՆԱԽՆԻ ՊԱՏՄԱԳՐԱՑ ՀԱՅՈՑ

---

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԺԱՄԱՆԱԿԱՑ ՄԱՐԶՊԱՆՈՒԹԵԱՆ Ի ՀԱՅՍ

### ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

ՎԵՀԱՄԻՀՐՇԱՊՈՒՀ — ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

---

ՁԵՌԱՀԻՒՍԵԱԼ

Ի Կ. ԿՈՍՏԱՆԵԱՆՑ

### ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

*"Թէպէտ եւ եմք ածու փոքր, եւ ընդ այլով յոլով անգամ նուաճեալ թագաւորութեամբք, սակայն բազում գործք արութեան գտանին գործեալ ի մերում աշխարհիս եւ արժանի գրոց յիշատակի:"*

*ԽՈՐԵՆԱՑԻ:*

ՎԻԵՆՆԱ 1877.

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

ՏԵԱՌՆ ՏԵԱՌՆ

# ԳԷՈՐԳԱՅ Դ.

ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԵՒ ՎԵՀԱՓԱՌ

ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՏՊԱԳՐԵԱԼ ԾԱԽԻՒՔ

ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄԿՐՏՉԻ ՍԱՐԳՍԵԱՆ

Տ. ՍԱՆԱՍԱՐԵԱՆՑ

# ԱԶԴ

Զպարագայից գործոյս եւ զորպիսաբար կիրառութենէ սորին տեսցէ ընթերցողն ի յառաջաբանութեան մերում, որ ի գիրսն Երրորդ, ուրանօր գտանին նաեւ մեկնութիւնք թուանշանացն, որ ի բնագրիս. աղիւսակք ժամանակագրութեան եւ հատուածք ինչ յայլոց պատմագրութեանց։

Մակակէտն՝ ի բնագրիս ցուցանէ զսկիզբն բանի պատմչին, անուն որոյ նշանակի առընթեր ի լուսանցսն։ Ի սովորական փակագիծսն ( ) բովանդակին բանք պատմչաց, իսկ ի մանրիկ փակագիծսն ‹› — առ ի մէնջ յաւելեալ բանքն ուրեք ուրեք կարեւոր եղեալք ի պարզութիւն մտաց կամ ի դիւրութիւն ոճոյ։

# ԳԼՈՒԽ Ա.

## *Յանկումն ազգին Արշակունեաց:*

> "Եթէ ոք կարի առաւելեալ իցէ աշխարհային մեծութեամբ եւ մտօքն աղքատագոյն, այնպիսին ողորմելի է քան զաղքատս:
> Լաւ է կոյր աչօք՝ քան կոյր մտօք:,,
>
> ԵՂԻՇԷ:

Յետ մահուանն Յազկերտի որդւոյ Շապհոյ թա- Ղազար.
գաւորին Պարսից՝ թագաւորեաց Վռամ որդի նորա:
Եւ եկեալ իշխանք աշխարհին Հայոց[1] առաջի Վռամայ՝
խնդրեցին իւրեանց թագաւոր յազգէն Արշակու-
նեաց[2]. եւ նա թագաւորեցոյց ի վերայ նոցա զԱրտա-
շէս որդի Վռամշապհոյ՝ յազգէ թագաւորացն Հայոց:

Եւ ի թագաւորել Արտաշրի խաղաղանայր եր- Թովմայ.
կիրս առ վայր մի ի շփոթմանց պարսկական գնդի.
եւ հարկացն արքունի կանգնեցան դիւանքն. զի հինգ
ամ բեկեալ հարկք եւ զօրք յարքունէ Պարսից:

Եւ էր Արտաշէս այր մանուկ եւ իգամոլ. եւ Ղազար.
բազում անառակութեամբ վարէր զթագաւորու-
թիւնն. եւ չկարացեալ այսպիսի զեղխ եւ մոլեկան
վարուց թագաւորին Արտաշեսի տանել՝ նախարարքն
Հայոց[3] ժողովեցան միահամուռ առ մեծ քահա-
նայապետն Հայոց՝ առ սուրբ Սահակ ‘Պարթեւ’ “եւ Խորենն.
զբողոք բարձին՝ հրաւիրելով զնա յօգնականութիւն
ինքեանց՝ չարախօսել առ արքային Պարսից՝ ի բաց
ընկենուլ զթագաւորն իւրեանց եւ Պարսիկ ածել
ունող աշխարհի:,, ՚Ո՛չ եւս կարեմք ‘ասեն՚ այս- Ղազար.
պիսի անօրէն եւ պիղծ գործոց թագաւորին համ-
բերել. վասնզի լաւ համարիմք մեռանել՝ քան եթէ
զայսպիսի գործ աղտեղութեան հանապազօր տեսա-
նել եւ լսել: Մեք ոչ մի ինչ ելս գտանել կարող

եմք, բայց բողոքել Թագաւորին Պարսից՝ ի բաց բառնալ ի Թագաւորութենէ այտի։ Աղաչեմք միաբանել այսմ խորհրդոյ մեզ։„

Խորեն. Այլ նա ՙՍահակ՚ ասէ. “Ո՛չ առ սուտս ունիմ զձեզ. իմ իսկ լուեալ է զայդպիսի աղէտս ամօթալեաց եւ բազում անգամ յանդիմանեալ. բայց նա ՙԱրտաշիր՚ ուրացաւ։ Եւ արդ՝ պարտ է փոքր մի տանել Թերութեան առնն, մինչեւ զելս իրացն խորհել մարթասցուք կայսերբն Յունաց Թէոդոսիւ եւ ո՛չ անօրինաց մատնել ի ծաղր եւ յայպանումն։„ Եւ նոքա ՙնախարարք՚ ոչ կամէին. եւ ջանային զնա համախորհուրդ իւրեանց առնել։

Ղազար. Իսկ սուրբ կաթուղիկոսն՝ իբրեւ լսէր եւ ստուգիւ ճանաչէր, եթէ ի նոյն միտս հաստատեալ են բովանդակ աւագանի աշխարհին, հրաժարէր առնել պատասխանի բանիցն մինչեւ յաւուրս բազումս. եւ արգելեալ զինքն ի սենեակ՝ ողբոց միայն եւ արտասուաց լսէին ձայնս. քանզի տեսանէր խպառիսպուռ զկործանումն աշխարհիս Հայոց։ Յետ աւուրց՝ ոմանք յեպիսկոպոսաց եւ ի պատուական երիցանց եւ ի սարկաւագաց, որք ի նորին սուրբ ուխտէ հայրապետին էին, եւ ոմանք յազատ աւագանւոյն Հայոց համարձակեալ մտանէին ի ներքս եւ խօսէին ընդ նմա բանիւք ողոքանաց. ընդ որս սփոփեալ սակաւ մի սուրբ քահանայապետն լռեալ դադարէր առ վայր մի։

Դարձեալ՝ ժողովեալ առ նա միաբան ամենայն ազատագունդք աշխարհին Հայոց եւ զնոյն բանս երկրորդեալ առաջի սրբոյ կաթուղիկոսին Հայոց՝ խնդրէին ստիպով ի նմանէ եւ զնորա միաբանութիւնն ընդ ինքեանս։ Իսկ սուրբն իբրեւ տեսանէր եթէ ոչինչ ամենեւիմբ են կասեալք յառաջին խոր-

Հըրդոցն, վասնզի յաւելուած օրըստօրէ աղտեղի գործոց թագաւորին առաւել քան զառաւել աճեցուցանէր ի կորուստ անձին իւրոյ զմիաբանութիւն իշխանացն, ձայն բարձեալ ՚ողբալով ասէր. “Ինձ Խորեն. քա՜ւ լիցի մեռանել գայլոց զիմ մոլորեալ ոչխար եւ ոչ պատել զբեկեալն կամ զհիւանդացեալն, այլ գահավէժ առնել: Զի թէ էր հաւատացեալ թագաւորի առաջի, փութայի եւ ո՛չ յապաղէի, յուսալով զկանգնումն գլորելոյն: Այլ հեթանոսաց ՝առաջի՝ ո՛չ առնում յանձն. քանզի դրոշմեալ է աւազանաւն, թէպէտեւ անառակ է. պոռնիկ է, այլ քրիստոնեայ է. գիճացեալ է մարմնով, այլ ո՛չ անհաւատ հոգւով. զեղխ է վարուք, այլ ո՛չ կրակապաշտ. տկար է ի կանայս, այլ ո՛չ ծառայէ տարերց. ՚միով ախտանայ ցաւով, այլ ո՛չ ՝է՝ վարակեալ Ղազար. ամենայն ախտիւք իբրեւ զամբարիշտ: Եւ զի՞րդ զսակաւամեղն՝ ամենայնիւ ամբարշտելոցն մատնել ի սատակումն. քա՜ւ ձեզ, որդի՛ք, մի՛ խորհի՛ք ըզխորհուրդդ զայդ, եւ զընիկ տեարսդ, որպէս եւ ոմանք զձեր նախնեացն, կորուսանել մի՛ ջանայք: ՚Եւ զի՞րդ լինիցի այդ՝ փոխանակել զիմ ախտա- Խորեն. ցեալ ոչխար ընդ առողջ գազանի, որոյ առողջութիւնն է մեզ պատուհաս:„

Իսկ նախարարացն զմտաւ ածեալ՝ իբրթէ խաբկանօք իցէ գործն յապաղել զնոսա, զի զթագաւորն պատրաստեցուցէ ՚Սահակ՚, ասեն ամենեքին. “Վասընզի ո՛չ համակամեցար մեզ չթագաւորել նմա, արդ եւ մեք կամեցուք եւ քեզ չքահանայանալ մեզ:„ Եւ միաբանեալ ամենեքին՝ անցին առ արքայն Պարսից Վռամ հանդերձ Սուրմակաւ ոմամբ Արծկէացի փառամոլ երիցու՝ չարախօսել զարքայէն

իւրեանց զԱրտաշրէ եւ մեծէն Սահակայ՝ զՅունովք Թովմայ. գլեալ խորհրդովն։ ‘Սկսան ազգի ազգի լեզուագարութեամբ չարախօսել զսրբոյն Սահակայ, որպէս թէ ոչ կամի զթագաւորելն Պարսից եւ հարկել Հայոց եւ զօրավարել. այլ զթագաւորելն Յունաց ցանկայ գտանել. նաեւ հաւատարմութիւն իւրեանց առեալ զթուղթսն սրբոյն Սահակայ[4] առ կայսրն եւ առ հայրապետն, եւ զերթալն Մեսրովպայ եւ Վարդանայ ի Յոյնս առաջի արկանէին, եւ զգալն Անատողեայ եւ զշինել քաղաքին ի Կարին գաւառ։

Ղազա. Վաղվաղակի դեսպան արարեալ զթագաւորէն Արտաշիսէ՝ առ ինքն ճեպով գալ հրամայէր ‘Վռամ’. գալ նմա գրէր եւ մեծ քահանայապետին Սահակայ։

Եւ եկեալ նոցա ի Դուռն՝ հարցանէր նախ՝ առանձին արքայն Պարսից զթագաւորն Հայոց, եթէ “զի՞նչ են իրքդ, յաղագս որոյ ամբաստանեն զքեն նախարարքդ Հայոց։„ Եւ նորա պատասխանի տուեալ ասէր, եթէ՝ “ամենեւին ոչ գիտեմ, զինչ խօսին. եւ չարախօսեն դոքա զինէն, որպէս սովոր են ի բնէ թշնամանել զտեարս իւրեանց, քանզի միշտ իշխանափոխք լեալ են եւ տիրատեացք։„

Եւ Վռամ հրաման տայր միայն ընդ միայն կոչել առ ինքն զՍահակ եւ կամէր լսել ի նմանէ զամենայն. իսկ նորա պատասխանի արարեալ ասէր, եթէ “ոչ գիտեմ զինչ խօսին. նոքին իսկ ‘նախարարքն’ ասասցեն եւ դուք լուարո՛ւք. զիս ինչ մի՛ հարցանէք. զի ոչինչ լսելոց էք յինէն յաղագս չարախօսութեանդ այդորիկ չար ինչ կամ բարի։„

Ապա կոչէր Վռամ զՍուրէն Պահլաւն զիւր հազարապետն, որ ազգակից եւ տոհմակից էր Սահակայ [5], ‘եւ պատուէր տայր նմա՝ յօժարեցուցա-

նել զՍահակ՝, զի միաբանեալ ընդ այլ նախարարսն Հայոց վկայեսցէ չարախօսութեան նոցա։

Եւ նորա ‘Սուրէնայ’ անկեալ ի բանս հրապուրանաց ասելով “Զի արիւն իմ ես եւ հարազատութիւն, զքարին քո խոկալ ասեմ. եթէ միայն այժմ միաբանեսցիս ընդ նախարարացդ, մեծարեալ լինիցիս յարքայէն Պարսից. եւ զԹոռն քո Վարդան ‘Մամիկոնեան’ կարգեսցէ ‘Վռամ’ ի վերայ Հայոց զուգահաւասար Թագաւորին եւ համապատիւ[6]։„ Խորեն.

Այլ ‘Սահակ’ ոչ առնոյր յանձն՝ ասելով. “Զիա՞րդ վասն սնափառութեան եւ իշխանասիրութեան չարաբանիցեմ զընկերէ։ կամ ընդէ՞ր ձեր այդպիսի յօժարութիւն ընկենուլ զԱրտաշիր. զի ես նորա ապստամբութեան ինչ խորհուրդ ոչ գիտեմ. ապա եթէ վասն անառակ ինչ վարուց, զոր նոքա ամբաստանենն, պատուոյ արժանի է ի ձէնջ ըստ ձերում անմաքրասէր օրինացդ, թէպէտ ըստ մերումն դատապարտի։ Սակայն՝ յինէն ոչինչ էք լսելոց ամենեւին։„

Եւ լուեալ զայս պատասխանի Սուրէնայ ի մեծ հայրապետէն եւ պատմեալ Թագաւորին, ի ցասումն զայրացման գրգռեալ Թագաւորն՝ հրաման տայ այնուհետեւ ի բազմամբոխ Ատենին հարցանել զնախարարսն Հայոց եւ զԱրտաշէս։ Ղազար.

Եւ կուտեալ իշխանացն Հայոց բազում աղտեղաբանութիւնս եւ ազգի ազգի խօսս անարժանութեան ի վերայ Թագաւորին իւրեանց. քանզի ոչ եթէ ի նմա եղեալ զիրսն խօսէին, այլ եւս յաւելուածովք ըստ օրինի Թշնամութեան կուտէին ի վերայ նորա բազում վնաս։ ’Եւ ոչ գտնելով ունկն Խորեն. Արտաշրի՝ յօժարութեամբ լսէր չարախօսացն՝ ‘Վռամ’

առաւել եւս բանիցն Սուրմակայ։ Քանզի զաթոռ
եպիսկոպոսապետութեանն էր նմա Նախարարացն
խոստացեալ, վասն որոյ ինքնասիրութեամբ պատ-
րաստեաց ՙՍուրմակ՚ զլեզուն իւր սուսեր սատա-
Ղազար. կիչ։ ՚Եւ յուրաստ եղեալ Արտաշեսի թէ "չէ այդ-
պէս„ ոչ հաւատացին լուղքն, եդեալ զկամս իւ-
րեանց բառնալ ի միջոյ զթագաւորութիւնն յԱր-
շակունեաց ազգէն, մանաւանդ զի լուաւ թագաւորն
ՙՎռամ՚ ի դատախաղացն Արտաշեսի թէ "բնաւ զի՞
իսկ եւս պիտոյ է թագաւոր, այլ իշխան պարսիկ
ըստ ժամանակի եկեալ վերակացու լիցի մեզ եւ
զիւրաքանչիւր ուրուք ի մէնջ ծանուցեալ զհպա-
տակութիւն եւ զանհպատակութիւն՝ ցուցցէ ձեզ։„
Լուեալ զայս Վռամայ հանդերձ աւագանւով
Դրանն՝ յոյժ ուրախանայր եւ հրաման տայր վաղ-
վաղակի ի բաց առնուլ զթագաւորութիւնն յԱր-
Խորեն. տաշեսէ ՚եւ անդէն արգելուլ զնա եւ զամենայն
ինչս ազգի նորա ունել յարքունիս. Նոյնպէս եւ
զմեծն Սահակ ՙարգելուլ՚ եւ զտունն կաթուղիկո-
Ղազար. սական ունել յարքունիս. ՚փոխանակզի ոչ միա-
Խորեն. բանեցաւ տալ վկայութիւն ընդ Նախարարսն. ՚եւ
տալ նորա փոխանակ յաթոռ եպիսկոպոսապետու-
թեանն Հայոց զՍուրմակն զայն։ Եւ մեծապարգեւ
զնախարարսն արձակեալ պարսիկ մարզպանաւ[7],
Սեբէ. եպիսկ. որում անուն էր Վեհմիհրշապուհ*, ՙոր՚ ՚եկաց
մարզպան ամս երեքտասան։
Ղազար. Յայնմհետէ բարձաւ թագաւորութիւնն յազ-
գէն Արշակունեաց ի վեցերորդ ամի Արտաշեսի եւ
անկաւ աշխարհս Հայոց ընդ լծով ծառայութեան
անօրէն իշխանութեան Պարսից [8]։ (432 թւ.)

* Ըստ Թովմայի Մչ[?]ան։

# ԳԼՈՒԽ Բ.

## Սկիզբն հալածանաց:

"Որոց ոգիքն թուլացեալ են յերկնաւոր առաքինութենէն յոյժ ընդ ահիւ անկեալ է բնութիւն մարմնոյ. յամենայն հողմոյ շարժի, յամենայն բանէ խռովի, եւ յամենայն իրաց դողայ: Երազագէտ է այնպիսին ի կենաց իւրում, եւ յանգիւտ կորուստն յուզարկի ի մահուան իւրում:
ԵՂԻՇԷ:

Ի բառնալ ազգին Արշակունեաց, տիրեցին Եղիշէ.
աշխարհին Հայոց ազգն Սասանայ Պարսկի, որ վա-
րէր զիւր իշխանութիւն օրինօք մոգուցն[1] եւ բա-
զում անգամ մարտնչէր ընդ այնոսիկ, որք ոչ ընդ
նովին օրինօք մտանէին՝ սկիզբն արարեալ յամացն
Արշակայ արքայի[2] մինչեւ յամն վեցերորդ Արտա-
շիսի արքայի: Իբրեւ զնա եւս մերժեաց ի թա-
գաւորութենէն, ի Նախարարսն Հայոց անկանէր
թագաւորութիւնն. զի թէպէտ եւ գանձն յարքու-
նիս Պարսկաց երթայր, սակայն այրուձին[3] Հայոց
բովանդակ ի ձեռն Նախարարաց առաջնորդէր ի
պատերազմ: Վասն որոյ եւ աստուածապաշտու-
թիւնն բարձրագլուխ երեւելի լինէր յաշխարհին
Հայոց մինչեւ յամն երկրորդ Յազկերտի, որ թըշ-
նամի եւ հակառակորդ երեւեցուցանէր իւր զհաւա-
տացեալքս. յարձակեցաւ ի վերայ աշխարհին Յու-
նաց, եհար մինչ ի Մծբին եւ զբազում գաւառս
Հոռոմոց[4] աւերեաց ասպատակաւ եւ զամենայն ե-
կեղեցիս հրձիգ արար: Թէոդոս կայսր՝ քանզի խա-
ղաղասէր էր՝ այր մի Անատոլ անուն, որ էր սպա-
րապետ արեւելից, առաքեաց առ նա բազում գան-
ձիւք եւ զամենայն, զոր ինչ ասաց ի ժամանակին

կատարեաց ըստ կամաց նորա եւ դարձաւ անդրէն
յիւր քաղաքն Տիզբոն[5]։ Իբրեւ ետես անօրէն իշ-
խանն, եթէ յաջողեցաւ չարութիւնն նորա, դըր-
դուեցոյց զբազումս ի սուրբ ուխտէն քրիստոնէից,
էր զոր բանիւք սպառնալեօք, էր զոր կապանօք
եւ տանջանօք։

Ղազար. Եւ էր Յազկերտի հազարապետ մի Միհրներ-
սէհ անուն, այր չարահնար եւ դժնամիտ. որոյ ար-
կեալ ի միտս ի շատ ամաց զխորհուրդս անօրէնու-
թեան ի կործանումն եւ ի կորուստ թուլասիրտ
ոգւոց. որում գտեալ օժընդակ չար եւ սադրիչ
անօրէն մտածութեանն իւրում այր մի ի տոհմէն
Սիւնեաց, որոյ անունն էր Վարազվաղան, որ էր փե-
սայացեալ իշխանին Սիւնեաց Վասակայ. որ եւ ըստ
համբաւոյ ոմանց ատելութեամբ մեծաւ ասէին ըզ-
կեալն ընդ միմեանս՝ զՎարազվաղանայ եւ զդստեր
իշխանին Սիւնեաց. յաղագս որոյ ծանր քինու հայէր
հայր աղջկանն ընդ փեսային իւրում, մինչեւ հալա-
ծեալ հանէր զնա յաշխարհէս Հայոց։

Եւ չարիմացին Վարազվաղանայ գիտացեալ
զանհնարին ուրախութիւնն Վասակայ եւ զի ոչ
կարէր հանդուրժել սաստիկ բռնութեան աներոյն,
փախուցեալ յերկիրն Պարսից՝ առ Միհրներսէհ
անկանէր եւ ճեղքեալ ինքնակամ յօժարութեամբ
ի սուրբ եւ յարդար քարոզութենէն կենաց, զոր
առաքեալն Հայոց Գրիգորիոս վարդապետեալ, եղեւ
դեղագործ կորստեան ոգւոց անօրինաւն Միհրներ-
սէհիւ ամենայն տկարամիտ անձանց։ Ուսուցանէր
Միհրներսէհ զՎարազվաղան ասելով այսպէս “Հայ-
եա՛ց մտաց աչօքդ եւ տես թագաւորութիւն մի այս-
պիսի, որ ահաւոր է եւ ի վեր քան զամենայն թա-

թաւորութիւնս. ընդ նմին եւ զօրինացս յայտնապէս ըստ արժանի մեծ թագաւորութեանս զընտրողութիւն, զստոյգն եւ զվայելուչն. քանզի ո՞վ ոք ոչ տեսանէ յամենայն տիեզերս զարեգականն զփառաւորութիւն, որոյ ճառագայթիւք լուսաւորին ամենայն եղեալք, որով կերակրին եւ վայելեն ամենայն բանաւորք. որով բոյսք եւ սերմունք առոքացեալք եւ հասեալք ի կատարելութիւն մատուցանեն զկեալն բարի եւ զուրախանալն։„

Զորոյ անմիտ վարդապետութիւն լուեալ Վաղարշակ՝ չկարաց առնել անդրէն պատասխանի. եւ ի նախանձ ընկղմեալ ընդ աներոյն՝ խորհէր ի միտս իւր թէ "իմաստս այս իմ եւ ջանս եւ արարուած երկուց իրաց առիթ՝ է ինձ բարւոյ. կամ հաւանի աշխարհն Հայոց եւ ուրանայ, մեծաց պարգեւաց եւ պատուոյ արժանի լինիմ յԱրեաց, որպէս հաւատարիմ նախագիտ եւ օգտացոյց այսպիսի կարեւոր եւ մեծ իրաց. եւ կամ չհաւանին յանձն առնուլ եւ ընդդիմանան, չկարացեալ կալ առաջի այսպիսի մեծի ուժոյ, կորնչին ամենեւիմբ. կորնչի թերեւս եւ իմ թշնամին յիրիս յայսմիկ։„

Եւ լուեալ զայս ամենայն բանս Միհրներսէհի՝ մտեալ խնդալից առ թագաւորն՝ սկսաւ խօսել ընդ նմա առանձինն եւ ասէ. "Ոչ միայն ի վայելչութենէ շահից՝ եթէ որպէս ի դէպ է տերանց օգտել ի ծառայից՝ զայն եւեթ հոգալ պարտ է տերանց, այլ եւ յաղագս գիւտի ոգւոց արժան է զմտաւ ածել։ Արդ քանի՞ աշխարհ են, որում դուք իշխէք աստուածաբար. նախ առաջին Հայոց մեծ աշխարհն եւ առ նմին Վրաց եւ Աղուանից. միայն օգտիցն եւեթ հայիք, զոր ընդունիք յաշխարհացն. եւ ոը

մեծն է եւ կարեւոր յաղագս այնչափ կորուսեալ գիտոյ ոգւոց, զայն բնաւ եւ զմտաւ իսկ չածէք: Դուք ինքնին գիտէք եւ ամենայն Արիք զաշխարհն Հայոց, թէ որպէս մեծ է եւ պիտանի: Եւ մօտ եւ սահմանակից է կայսեր իշխանութեանն եւ զօրէնս եւ պաշտօն զնոյն ունի: Եւ եթէ մերոց օրինաց ընտանեցուցանէք զնոսա, այնուհետեւ զձեզ սիրեն եւ զԱրեաց աշխարհն: Եւ յորժամ Հայք սրտիւ մեր լինին, Վիրք եւ Աղուանք այնուհետեւ մեր իսկ են: Եւ իմ թէպէտ եւ էր յառաջագոյն հոգացեալ զպայպիսի մեծ իրս, 'այլ' առաւել եւս հաստատեալ յառնէն, որ ի Սիւնեաց տոհմէն. 'զի' գիտաց հեռանալ ի մոլար օրինացն եւ ընտրել զճշմարիտ եւ զհաստատուն օրէնս մեր, զոր կամաւ եւ ախորժելով յանձն էառ. ի նմանէ առաւելագոյն ծանեայ զօգուտ հոգեւոր եւ մարմնաւոր, որ յԱրեաց յայտնեսցէ լինելոց է ձեռամբ Թագաւորութեանդ. այլ եւ որ սերտ սիրով եմ զանձն իւր այրն, արժան է գիտել երեւելի փառաց քան զամենայն ընկերակիցս իւր եւ տոհմակիցս, որպէսզի տեսեալ տոհմին նորա եւ ամենայն Հայոց աւագանւոյն զմեծամեծ բարիս եւ զշքեղութիւն որ ի ձէնջ ի վերայ նորա, ի նախանձ գրգռեալ եւ նոքա յօժարութեամբ յանձն առնուն զձեր հրաման: Ապա թէ ոչ լինիցի այս այսպէս, կասկածիմ յառաջիկայն՝ մի գուցէ [illegible] օրինացն են հաստատուն՝ նոքա եւ ծառայութիւն առնել ցանկան:..

Իսկ եւ զայս ամենայն լուեր Յազկերտ ի հազարապետէն՝ հաճեալ ընդ խրատն եւ զարմացեալ յաներ մեծացոյց եւ առաջադիմեցոյց: [illegible] -Արքայ քաջ. Աստուածքն ետուն քեզ զաւերութիւն եւ

զյաղթութիւն. եւ ոչինչ կարօտ են նոքա մարմնաւոր մեծութեան. բայց եթէ ի մի օրէնս դարձուցանես զամենայն ազգս եւ ազինս, որ են ի տէրութեան քում. յայնժամ եւ աշխարհն Յունաց հնազանդեալ մնասցէ ընդ օրինօք քովք: Արդ՝ զօր գումարեա եւ գունդ կազմեա, խաղա, գնա դու յաշխարհն Քուշանաց[6] եւ զամենայն ազգս ժողովեա եւ անցո ըստ Պահ-դուռն[7] ի ներքս եւ դու անդէն արա քեզ բնակութիւն: Յորժամ արգելլուս եւ փակես զամենեսեան ի հեռաւոր օտարութեան, կատարին խորհուրդք կամաց քոց. տիրես դու եւ երկրին Քուշանաց. եւ Յոյնք իսկ ոչ ելանեն ընդ քո իշխանութիւնդ: Բայց միայն զաղանդ քրիստոնէից բարձ ի միջոյ:„

Հաճոյ թուեցաւ խորհուրդն թագաւորին եւ մեծամեծացն. հրովարտակս առաքէր յամենայն տեղիս տէրութեան իւրոյ. եւ է այս.

"Առանց զձեզ ինչ աշխատ առնելոյ խաղացաք գնացաք յերկիրն Յունաց եւ առանց պատերազմի նուաճեցաք զամենայն երկիրն մեզ ի ծառայութիւն. դուք անսպառ լերուք յուրախութեան: Մեք ի մտի եդաք դարձուցանել ի մեզ զտէրութիւնն Քուշանաց. դուք իբրեւ զհրովարտակս զայս տեսանէք՝ վաղվաղակի այրեւձի գումարեցէք, առաջի քանզի յանդիման լերուք ինձ յԱպար աշխարհին[8]:„

Ըստ այսմ հրովարտակ եհաս յաշխարհն Հայոց, ի Վրաց[9] եւ յԱղուանից[10] եւ բազում այլ տեղեաց հեռաւորաց: Գունդ կազմէր ի Հայոց մեծաց ի Վրաց եւ յԱղուանից եւ ի կողմանց կողմանց, որք էին ամենեքեան հաւատացեալք: Ոչ գիտացեալ զերկդիմի միտս թագաւորին՝ գնացին յիւրաքանչիւր աշ-

խարհաց լրջմտութեամբ եւ տիրասէր խորհրդովք. բարձին ընդ իւրեանս սուրբ կտակարանս բազում պաշտօնէիւք եւ բազմագոյն քահանայիւք, հրաման տուեալ աշխարհի, ոչ իբրեւ յակնկալութիւն կենաց, այլ իբրեւ ի վճարումն վախճանի. զի թէպէտ եւ խորհուրդ թագաւորին չէր յայտնեալ նոցա, սակայն կարծիք ի մտի էին ամենեցուն. մանաւանդ իբրեւ բեկեալ տեսին զզօրութիւն Յունաց։

Յիշէին զպատուիրեալսն ի Պօղոսէ, եթէ “Ծառայք հնազանդ լերուք տերանց ձերոց մարմնաւորաց, եւ յանձն եղեալք սուրբ Հոգւոյն յանդիման լինէին՝ փութով կատարեալ զհրամանն ըստ կամաց նորա։

Յոյժ ուրախ լինէր թագաւորն իբրեւ ետես զամենայն կազմութիւն եւ զբազմութիւն գնդին բարբարոսաց,[11] որք սրտի մտօք եկեալ էին ի վաստակ արքունի։

Խաղաց ի վերայ Հոնաց աշխարհին եւ զերկեամ մի կռուեալ, ոչինչ կարաց ազդել նոցա. արձակեաց զմարձիկսն յիւրաքանչիւր տեղիս եւ զայլսն փոխանակ նոցա առ իւր կոչէ նովին պատրաստութեամբ։ Այսպէս ամ յամէ սովորութիւն կարգեաց եւ իւր անդէն քաղաք բնակութեան շինեաց սկսեալ ի չորրորդ ամէ տէրութեան իւրոյ մինչեւ յամն մետասաներորդ։

Եւ իբրեւ ետես՝ եթէ հաստատուն կացին Հոռոմք յուխտին իւրեանց եւ դադարեցին Խայլընդուրք[12] ելանել ընդ պահակն Ճորայ[13] եւ ի նեղ եւս արկ զթագաւորն Հոնաց — աւետիս առաքեաց ընդ ամենայն տորուշանս աշխարհին իւրոյ — ցլուք սպիտակօք եւ գիսաւոր նոխազօք առատացոյց զզոհս

կրակին. պսակօք եւ պատուովք մեծարեաց զբա-
զումս ի մոգաց եւ մոգպետաց: Եւ նա հրաման՝
յափշտակել զքրիստոնէից ինչս եւ զստացուածս,
որք էին ի մէջ Պարսկաց աշխարհին:

Եւ այսպէս հպարտացաւ, ի միտս իւր մեծ ոմն
զինքն կարծէր եւ յոյժ էր ցասուցեալ ընդ անունն
Քրիստոսի, յորժամ լսէր՝ թէ տանջեցաւ, խաչե-
ցաւ, մեռաւ եւ թաղեցաւ: Մի ոմն ի մանկագոյն
Նախարարացն Հայոց ընդդէմ բանս եդ եւ ասէր,
“Արքայ քաջ, դու ուստի՞ գիտես այսպիսի բանս
խօսել զՏեառնէ.„ Թագաւորն ասէ՝ “Իմ իսկ առաջի
ընթերցան զգիրսն մոլորութեան ձերոյ:„ Եւ պա-
տասխանի պատանեակն՝ “ընդէ՞ր ցայդ վայր, արքայ,
միայն ետուր ընթեռնուլ. յառաջ եւս մատո́ զկար-
դացումն եւ լսես անդ զյարութիւնն, զյայտնու-
թիւնն առ բազումս, զվերացումն յերկինս, զնստելն
ընդ աջմէ Հօր, զխոստումն երկրորդ գալստեան,
զհամառօտ հատուցմունսն արդար դատաստանին:„
Թագաւորն վեր ի վայր ծիծաղեցաւ, ասէ, ամենայն
այդ խաբէութիւն է:„ Եւ պատասխանի զինուորն
Քրիստոսի՝ “Եթէ հաւատարիմ են քեզ մարմնաւոր
չարչարանքն Նորա, հաւատարմագոյն եւս լիցի քեզ
երկրորդ ահաւոր գալուստն Նորա:„ Յայնժամ զբո-
լոր բարկութիւնն եհեղ յայրն երանելի, որում
անուն էր Գարեգին. զերկեամ մի տուաւ ի չարչա-
րանս՝ հանեալ ի բաց զտէրութիւնն ի նմանէ[14]. եւ
ընկալաւ զվճիռ մահու:

———

# ԳԼՈՒԽ Գ.

## Առաջարկութիւն:

> “Ոչ եթէ ընդ մարդոյ է ուխտ հաւատոյ մերոյ, եթէ պատրիցիմք իբրեւ զտղայս, այլ ընդ Աստուծոյ:”
>
> ԵՂԻՇԷ:

Եղիշէ. Քրիստոնեայքն որ ի զօրուն էին, բարձր բարբառով եւ երգօք հոգեւորօք յայտ յանդիման մեծի բանակին զպաշտօնն ցուցանէին: Անօրէն իշխանն Յազկերտ իբրեւ գիտաց, եթէ յայտնեցաւ ծածուկ խորամանկութիւն խորհրդոցն, սկսաւ յառաջ կոչել զկրտսերս յաւագաց եւ զանարգս ի պատուականաց եւ զտգէտս ի գիտնոց եւ զանարիս ի քաջ արանց. մինչեւ զհայր եւ զորդի քակէր ի միմեանց: Պատրէր զոմանս ոսկւով եւ արծաթով. զբազումս առատ պարգեւօք. զոմանս պատուովք եւ իշխանութեամբք մեծամեծօք. եւ կեղծաւորութեամբ խոնարհեցուցանէր զինքն առ ամենեսեան ի պատճառս սիրոյ, զի խորամանկութեամբ որսալ մարթասցէ ըստ առաջին խորհրդեան խրատուացն:

Զայս առնէր ի չորրորդ ամէն մինչեւ ի մետասան ամն իւրոյ տէրութեանն: Իբրեւ ետես, եթէ ոչինչ յարգեցաւ ծածուկ հնարագիտութիւնն, յայտնեաց ակամայ զծածուկ խորհուրդսն եւ ասէ. “Ամենայն ազգ եւ լեզուք, որ ընդ իմով իշխանութեամբ, դադարեսցին յիւրաքանչիւր մոլոր օրինացն եւ միայնոյ եկեսցեն յերկրպագութիւն արեգական, սպաս ունելով կրակի եւ զմոգութեան օրէնս կատարելով:”

Ի սկզբան երկոտասան ամի թագաւորութեան իւրոյ անհամար բազմութեամբ յարձակեալ հասանէր յերկիրն Քուշանաց. առնոյր զբազում բերդս եւ զքաղաքս. կուտէր զգերին եւ զաւար: Այնուհետեւ հաստատէր ի կարծիս մոլորութեան ասելով՝ "Զի՞նչ հատուցուք աստուածոցն փոխանակ մեծի յաղթութեանս:„ Մոգքն եւ քաւդեայքն ասեն. "Աստուածքն ետուն քեզ տէրութիւն եւ զյաղթութիւն ի վերայ թշնամեաց քոց. ոչինչ կարօտ են խնդրել ի քէն, այլ զի բարձցես զամենայն ուսմունս մոլորութեան մարդկան եւ ի մի դարձուսցես օրէնս զրադաշտական պատուիրանին:„ Խորհուրդ ի մէջ առեալ՝ յաղթէր խրատն: Ի ներքոյ Պահ-դրանն արգելոյր զբազմութիւն պյրուձիոյն Հայոց, Վրաց եւ Աղուանից: Հրաման սաստիւ ի վերայ դռնապանացն առնէին, թէ " որ յարեւելս առ մեզ գայցեն՝ թողցեն. իսկ յարեւելից յարեւմուտս անանց լիցի ճանապարհն:„

Յայնմ ժամանակի մեծաւ չարչարանօք եւ տանջանօք ստիպէր ուրանալ զճշմարիտն Աստուած: Զօրականքն առհասարակ միաբան աղաղակէին եւ ասէին՝ "Վկայ են երկինք եւ երկիր. ո՛չ երբէք հեղգացեալ եմք յալքունի վաստակս. ի զուր անողորմ են հարուածքս ի վերայ մեր:„ Թագաւորն երդմամբ հաստատէր եւ ասէր. "Ոչ թողացուցից ձեզ, մինչեւ կատարեսջիք զկամս իմ:„ Յետ երկոտասան աւուր հրաման տայր ընթրիս կազմել առատութեամբ. եւ կոչէր զբազումս ի զինուորական քրիստոնէից. եւ սիրով խոնարհութեամբ խօսէր ընդ նոսա, զի թերեւս հաւանեսցին ուտել զմիս զոհեալ. իբրեւ ոչ կալան անձին ամենեքեանքն,

ոչինչ կարի ստիպեաց, այլ հրամայեաց նոցա մատուցանել զսովորական կերակուրն։ Եւ անտի ի դուրս ելեալ ի սրահն արքունի, արգելլին զոմանս ի նոցանէ ձեռս յետս կապելով եւ զգուշութեամբ պահելով՝ էր որ զերկուս աւուրս եւ էր որ զերիս։

Գունդս գունդս գումարէին ի նոցանէ յերկիրն հեռաւոր ի մարտ պատերազմի թշնամեացն արքայի. եւ պամենեցուն զկարգեալ թոշակսն նուազեցուցանէին. եւ քաղցիւ եւ ծարաւով տառապեցուցանէին զնոսա. եւ ձմերոցի տեղիս՝ զդժնեայ վայրսն հրամայէին նոցա։ Որչափ չարութիւն զանարգութիւն բազմացուցանէր, նոքա ՙքրիստոնեայք՚ եւս քան զեւս զօրանային ի սէրն Քրիստոսի. սակայն արտաքին տեսիլն կարի ողորմելի էր յօտարութեան. այնպիսի պատուական զինուորութիւն հասեալ էր ի չարաշուք անարգութիւն. եւ հայրենի ազատութիւնն[1] չարաչար կայր ի ծառայութեան մարդախոշոշ բռնաւորին։

Առաքէր ՙՅազկերտ՚ յերկիրն Հայոց զԴենշապուհ աշխարհագիր առնել ամենայն երկրին Հայոց՝ ի թողութիւն հարկաց եւ ի թեթեւութիւն այրեւձիոյ։ Առաջին զազատութիւն եկեղեցւոյն արկանէր ՙԴենշապուհ՚ ընդ ծառայութեամբ։ Երկրորդ՝ միայնակեաց քրիստոնեայք, որ բնակեալ էին ի վանորայս, ընդ նովին աշխարհագրաւ արկանէր։ Երրորդ զհարկ աշխարհին առաւել ծանրացոյց։ Չորրորդ՝ բանսարկութեամբ զնախարարեանն արկ ընդ միմեանս։ Զայս ամենայն առնէր թերեւս զմիաբանութիւնն քակեսցէ եւ զշինականսն վատնեսցէ, զուխտն եկեղեցւոյն ցրուեսցէ, եւ առ յոյժ աղքատու-

թեանն ակամայ դիմեցեն յօրէնս մոգուց։ Հինգերորդ՝ որ հազարապետն[2] էր աշխարհին, գըրգռեաց Դենշապուհ եւ յարոյց զամբաստանութիւն ի վերայ նորա. եւ հանեալ ի գործոյն փոխանակ նորա Պարսիկ ած յաշխարհն եւ միւս եւս մոգպետ դատաւոր աշխարհին։

Ամենայն գործքս դժնեայ էին. զի ո՞վ կարէ պատմել վասն ծանրութեան մտից եւ սակից, բաժից եւ հասից, լերանց եւ դաշտաց եւ մայրեաց։[3] Ինքեանք եւս մեծապէս զարմանային թէ ուստի այս ամենայն գանձ ելանէ. զիա՞րդ չէն կայցէ աշխարհն։ Իբրեւ տեսին ‘Պարսք’, թէ այսու ամենայնիւ չկարացաք[4] ձանձրացուցանել, յայտնապէս հրաման ետուն մոգաց եւ մոգպետաց նամակ մի գրել եւ է այս.

"Զմտաւ ածեալ՝ թէ որ միանգամ ընդ իշխա- Ղազար.
նութեամբ մերով թագաւորութեան են, որպէս օգտիւք եւ այլ հպատակութեամբ վայելեմք ի նոցանէ, եւս առաւել պարտիմք ընդ փրկութիւն ամենեցունցն հոգւոց հոգալ. եւ եթէ յանկարծ ծուլացեալ դտանիմք յայսպիսի մեծ հոգողութենէ, տեղեկացաք յօրինաց մերոց, թէ ծանր պատուհաս կրելոց եմք յաստուածոցն։ Արդ՝ եթէ մեք պատուհասիմք վասն չքողոքելոյ ումեք ի ձէնջ, ձեզ առաւել նեւս արժանի է նրկնչել, թէ հեղգայք ինչ յիւրաքանչիւր հոգւոյ օգտէ, զի ի մէնջ պատուհասիք եւ յաստուծոց։ Վասն որոյ զօրէնս մեր զստոյգ եւ զարդար գրեցաք եւ տուաք բերել առ ձեզ. կամիմք՝ եթէ որպէս դուք օգտակար աշխարհի էք եւ մեր սիրելի, զմեր արդեօք զարդար եւ զկշիռ օրէնս ուսանէիք եւ ունէիք. եւ չպաշտէիք զայնպիսի օրէնս, որ ամենեցուն մեզ յայտնի են, թէ

սուտ են եւ անօգուտ, եւ զկարծեցեալ զձեր օրէնսդ առ մեզ գրել հրամայեցաք ձեզ։„ ՙԱւասիկ օրէնքն մոգուց՚.

Եզնիկ. “Որմիզդ արար զերկին եւ զերկիր, Արհմն ընդդէմ չար գործեաց, ամենայն բարիք, որ յերկնից եւ պյսր լինին, Որմզդի են. եւ ամենայն վնասք՝ որ անտի եւ պյսր գործին, զայն Արհմն արար. յաջողութիւնք եւ տէրութիւնք եւ փառք եւ պատիւք, եւ առողջութիւնք մարմնոց, եւ գեղեցկութիւնք դիմաց, եւ ճարտարութիւնք բանից, եւ երկայնակեցութիւնք ամաց պյդ ի բարւոյն առնուն զգոյացութիւն. եւ ամենայն որ ոչ պյդպէս է ի նա չարին արարած խառնեալ է։ Մարդիկ մոլորեալ են, որ ասեն՝ թէ զմահ Աստուած արար. եւ չար եւ բարի ի նմանէ լինին. մանաւանդ որպէս քրիստոնեայք ասեն թէ Աստուած նախանձոտ է, վասն թզոյ միոյ զմահ արար. ասեն՝ Աստուած, որ զերկինս եւ զերկիր արար, ի կնոջէ ծնաւ։ Եթէ աշխարհն Հոռոմոց տգիտաբար մոլորեալ են եւ զրկեալ ի կատարեալ դենէս մերմէ, յանձանց պարմայեն զվնասն. դուք ընդէ՞ր զհետ նոցա մոլորութեանն ցնորիք. զոր օրէնս տէրս ձեր ունի, զնոյն եւ դուք կալարուք. զի առաջի Աստուծոյ վասն ձեր համարս ունիմք տալ։„

“Մի՛ հաւատայք առաջնորդացն ձերոց. զոր բանիւ ուսուցանեն, գործովք ոչ կարեն յանձն առնուլ. յարգեն զանարգս քան զպատուականս. գովեն զմահ եւ պարսաւեն զկեանս. որ չարագոյն եւս է՝ զԱստուած ի խաչ ելեալ ի մարդկանէ քարոզեն եւ զնոյն մեռեալ եւ թաղեալ եւ ապա յարուցեալ եւ վերացեալ յերկինս։„

"Արդ երկու իրք կան առաջի՝ կամ արարէ՛ք բան առ բան նամակիդ պատասխանի եւ կամ արի՛ք ի դուռն եկայք եւ յանդիման լերուք մեծի հրապարակին։[5]„

Ընդ նմին ՙՀրամայեաց Յազկերտ՚ ատրուշանս եւ փուշտիպանս[6] եւ քուրմս առաքել ի ձեռն մեծամեծաց իւրոց, որք եկեալ յաշխարհս Հայոց, մատուցին զնամակն մեծամեծ նախարարաց։ Ստեփ. եպիսկ.

## ԳԼՈՒԽ Դ.

### *Պատասխանի:*

> "Ոչ է եկեղեցի շինուած մարդոյ, ոչ պարգեւք թագաւորաց եւ ոչ արուեստ ճարտարութեանց. հիմունք նորա ոչ ներքինք շարժել կարեն՝ եւ ոչ վերինք դրդուեցուցանել. եւ զոր երկինք եւ երկիր ոչ դողացուցանեն մի՛ ոք ի մարդկանէ խորհեսցի յաղթել նմա։,,
>
> ԵՂԻՇԷ։

Ղազար. *Իսկ ընկալեալ զայսպիսի հրովարտակ ամենայն Հայոց աւագանւոյն՝ ժողովեցան այնուհետեւ ըստ*

Եղիշէ. *հրամանի տանուտէրանցն Հայոց ՚յԱրտաշատ [1] քա-*

Ղազար. *ղաքն ՚սուրբ եպիսկոպոսք ըստ գաւառաց աշխարհին Հայոց եւ պատուական երիցունք եւ վանականք. եւ Յովսէփ, որ Թէպէտեւ երէց էր ըստ ձեռնադրութեանն, զկաթուղիկոսութեանն Հայոց զաթոռն*

Սոփ. եղիս, *ունէր ի ժամանակին. ՚եւ խորհեալ ի միասին գրեն պատասխանի յոյժ բիրտ եւ պինդ վասն օրինաց իւրեանց առ Թագաւորն ՚օրինակ զայս՚։*

Ղազար. *"Ի լուսաւոր եւ ի ճշմարիտ օրէնս մեր գրեալ է, Թէ "ծառայք հնազանդ լերուք մարմնաւոր տէրանց ձերոց, որպէս Աստուծոյ։,, Եւ մեր երկուցեալ նախ՝ ի հրամանէ օրինաց մերոց եւ ապա ի ձեր ի մեծի Թագաւորութենէդ, եդեալ ի մտի ոչ ըստ երկիւղի, այլ կամաւ իսկ յամենայնի զձեր կամս կատարել եւ ծառայել ձեզ՝ ոչ միայն կարասւոյ ծախիւք, այլ եւ զարիւն անձանց մերոց եւ որդւոց ի վերայ ձեր դնել։,,*

*"Բայց վասն հոգւոց մերոց զձեզ ինչ ամենեւին այդ հոգս մի՛ աշխատեսցէ եւ վասն պարգեւի եւ պատուհասի, որ երկնչիքդ յաստուծոցդ,*

ի մեր անձինս եւ յոգիս յԱստուծոյ օգուտն այն կամ պատիժ։ Քանզի անհնար է, որ ի բնէ ուսեալ եմք եւ հաստատեալ յօրէնս յայս, անսալ այդպիսի հրամանի եւ հաւանել. զոր եւ լոկ բանիւք անգամ լսել ոչ կարեմք, քանզի եւ կամիմք իսկ ոչ։„

“Այլ վասն օրինաց ձերոց, զոր գրեալ էր եւ տուեալ բերել առ մեզ, մեք ձեզ ոչ երբէք լըսեմք, թող թէ եւ գրոց եւս յօժարեցուցանէք զմեզ կարդալ եւ լսել. այլ յառաւել եւս պատուելոյ զթագաւորութիւնդ ձեր՝ բանալ անգամ զգրեալսդ կամ տեսանել ոչ կամեցաք, զի զօրէնս՝ զոր ճանաչեմք, եթէ սուտ են եւ անմիտ, ոչ կարդալ պարտ է եւ ոչ լսել։ Վասնզի ընդ կարդալն հարկիմք եւ ծաղր առնել, ուստի օրէնքն եւ օրէնսդիրքն եւ որք պաշտեն զայդպիսի խաբէութիւնս ի միասին թշնամանին։„

“Յաղագս որոյ եւ ոչ զմեր օրէնս գրել եւ տալ բերել առ ձեզ ըստ հրամանիդ ձերոյ պատշաճ համարեցաք. զի եթէ զձեր սուտ եւ զարժանի ծաղու օրէնսդ չհամարեցաք արժանի կարդալոյ, զի մի՛ թշնամանեսցուք զձեզ, մեք զիա՞րդ զայսպիսի զաստուածասէր եւ զճշմարիտ օրէնսն գրիցեմք առ ձեր անգիտութիւնդ յայպանումն եւ ի թշնամանս։„

“Բայց այս եւեթ ձեզ ի հաւատոյս մերոյ յայտնի լիցի, զի տարերց ոչ ծառայեմք. արեգական եւ լուսնի, հողմոց եւ կրակի, որպէս դուքդ, պաշտօն ոչ մատուցանեմք. քանզի ծառայեմք միումն միայնոյ ճշմարտին Աստուծոյ, որ արար զերկինս եւ զերկիր եւ զամենայն ինչ որ ի նոսա. եւ նա միայն է անուանելոյդ ի ձէնջ աստուածոցդ Աստուած եւ Արարիչ։„

Եղիշ. «Մեք այսպէս գիտեմք զԱստուած եւ ի սոյն հաւատամք յաներկբայս։ Ցայսմ հաւատոց զմեզ ոչ ոք կարէ խախտել՝ ոչ մարդիկ, ոչ սուր եւ ոչ հուր։ Ամենայն ինչք եւ ստացուածք մեր ի ձեռս քո եւ մարմինք առաջի քո կան. ըստ կամաց քոց արա զինչ եւ կամիս։ Եթէ յետ այսր մեծի վկայութեան այլ ինչ հարցանես, աւասիկ կամք, զըոլոր մարմին տուեալ ի ձեռս քո վաղվաղակի արա զինչ եւ կամիս. ի քէն տանջանք եւ ի մէնջ յանձնառութիւնք, սուր քո եւ պարանոցք մեր. չեմք ինչ մեք լաւ քան զառաջինսն, որ յայսր վկայութեան վերայ եդին զինչս եւ զստացուածս եւ զմարմինս իւրեանց. մեացուք իբրեւ զմահկանացուս, զի ընկալցի՛ զմեր մահն իբրեւ զանմահից։»

Յովէփ եպիսկ. Եւ դարձեալ անդրէն դեսպանացն մատուցին զպատասխանին արքայի։

# ԳԼՈՒԽ Ե.

## *Երթ Նախարարաց ի դուռն:*

"Զուգութիւն է մայր բարեաց. անզուգութիւն ծնող չարեաց։" ԵՂԻՇԷ։

Յազկերտ Հրամայեաց կոչել զմոգսն եւ զա- Ղազար.
մենայն աւագսն դրանն՝ եւ բանալ զնամակն, զոր
առաքեցին Հայք եւ կարդալ առաջի ամենեցուն։

Բազումք, որ լսէին, գովէին զպատասխանիսն. Եղիշէ.
առաւել քան զճարտարաբանութիւնն ընդ Համար-
ձակութիւն աներկիւղութեանն զարմանային։

Եւ լուեալ զբանս Նամակին՝ Թագաւորն Հար- Ղազար.
ցանէր զմոգսն եւ զամենայն Արեաց աւագանին թէ
"ձեզ զի՞նչ թուի՝ ի ծառայից այդպիսի աներկիւղ
Համարձակութեամբ գրել առ իւրեանց տէրն։"
Դապք մոգուցն եւ ամենայն մեծամեծացն աւագան-
ւոյն դրանն յոտն կացեալ՝ ասացին, թէ "զնոցա
կորուստն գրեալ է առ ձեզ. բայց ձեզ թէ որպէս
պարտ է ծանուցանել նոցա զձեր տէրութիւն եւ
զնոցա ծառայութիւն, զայն դուք իշխէք։ Եթէ ոչ
ուստեք ունէին նոքա յայլուստ օգնականութեան
յոյս, զայդպիսի բանդ ի միտս իսկ իւրեանց նկատել
չիշխէին, թող թէ նամակաւ առ ձեր թագաւորու-
թիւնդ առաքել։"

Իսկ մոգպետն մեծ Հազարապետաւն ձայն ար- Եղիշէ.
ձակեաց եւ ասէ. "Ո՛չ ումեք թողացուցից ի մե-
ծամեծ Հարուածոցն, մինչեւ ակամայ ի բաց կայցեն
յայնպիսի վրիպական օրինաց. եթէ ի կարի մեր-
ձաւորաց իցէ, զնոյն անցս եւ ընդ նոսա ան-
ցուցից։"

Թագաւորն ի Ներքս կոչեալ զդպրապետն՝
Պատմ. հրամայեր գրել հրովարտակ[1] ՚յերեսին աշխարհին՝
Նախր. Հայոց, Վրաց եւ Աղուանից. ՚եւ ոչ եւս ըստ սովո-
րութեանն, այլ իբր առ ատելիս. միայն կոչելոյ
հրամանն տուեալ յականէ յանուանէ զարս՝ Սիւ-
նեաց Վասակ, Արծրունեաց Ներշապուհ, Ռշտու-
նեաց Արտակ, Խորխոռունեաց Գադեշոյ, Մամիկո-
նէից Վարդան, Մոկաց Արտակ, Ապահունեաց
Մանեճ, Ամատունեաց Վահան, Վահեւունեաց Գիւտ,
Անձեւացեաց Շմաւոն։ Զայս նախարարքս. կոչեցին
ի Դրունն արքունի։

Վկայ. Եւ հասեալ հրովարտակս այս յերեսին յաշ-
խարհն՝ (Հայոց, Վրաց եւ Աղուանից) իբրեւ լուան
զայնպիսի ստիպով կոչումն զամենեցուց՝ անդրէն
եւ անդ գիտացին զպատճառս իրացն։ Պատգա-
մաւորութիւն այնուհետեւ երեքին աշխարհքն առ
միմեանս առնէին եւ ուխտադրութիւնս եւ բազում
երդմամբ Աւետարանին հաստատէին։ Խորհէին չեր-
թալն որպէս ապստամբութիւն կարծեցուցանել. եւ
չերթալն խռովեալք տարակուսէին. հաշուէին զեր-
թալն լաւագոյն եւ ելից իրացն զԱստուած կոչէին օգ-
նական։ Բայց զիւրեանց զմիտս եւ զբանս եւ զխոր-
հուրդս միջնորդութեամբ սրբոյ Աւետարանին ան-
քակ եւ անբերկեւան առ միմեանս հաստատէին. եւ
Բուզ. այնպէս միաբանեալք ամենքեան եւ ՚յառաջագոյն
ի ձեռն Յովսէփայ նոյին ուխտի հաստատեալ,
յորժամ փութային փախն եղբարց եւ որդեաց եւ սի-
րելի զաւակացն բնակչացն, որ շարաշար կային
ի մեծի նեղութեան։[2] Իբրեւ հասին ի դուռն ար-
քունի, ի մեծի շաբաթու Զատկին յանդիման լի-
նէին մեծի թագաւորին։ Յեղակեալ տեսանէին

զեղբարս իւրեանց ի մեծամեծ վիշտս, ոչինչ տրտում եւ տխուր զերեսս ցուցանէին հրապարակին։

Օրէնք էին յառաջ ժամանակաւ՝ յորժամ ի Հայոց այրուձի ի Դուռն երթայր, ի ձեռն պատուաւորի զօրագլխի ուրուք այր ընդ յառաջ յղէր եւ հարցանէր զողջոյն եւ զխաղաղութիւն Հայոց աշխարհին. զհանդէս գնդին ինքնին տեսանէր. զգալն մեծ շնորհակալութիւն համարէր եւ յիշէր զնախնեացն զվաստակս։ Այն օր ոչինչ յայտցանէ յիշեաց. 'այլ հրաման տուեալ առ վաղիւն, որպէսզի ամենայն դրան աւագանին հանդերձ երեւելի մոգօք առաջի նորա լիցին ի խորանին. եւ ասացեալքն ի Թագաւորէն կատարէին առ վաղիւն։ Ապա հրամայէր զուղեկեալսն ի Հայոց ի Վրաց եւ յԱղուանից զառաջեաւ ածել։ Եւ նախագոյն՝ հարցեալ ցՀայոց տանուտեարսն եւ ցսեպուհսն ասէր, եթէ՝ զի՞նչ հաշուել կարծէք զիս. ասացէք ցիս։„ Եւ նոցա պատասխանի արարեալ ասացին, եթէ "մեք զձեզ Թագաւոր գիտեմք որպէս ամենեցուն առաւել եւս մեր. իշխանութիւն ունիս նման Աստուծոյ ի վերայ մեր եւ ամենայն մարդոց, որ է ի Թագաւորութեան քում, սպանանել եւ կեցուցանել։„ Եւ Յազկերտի լուեալ զայսպիսի պատասխանին ասէ ցնոսա. Այդ պատասխանիք ձեր ի նամակէն, զոր ետուք բերել առ իս, շատ հեռի են եւ աննմանք։ Վասն զի ի նամակին յայտ արարեալ էր եթէ իւիք իւիք, որովք ծառայեմք քեզ եւ կամաց քոց եւ հրամանի չընդդիմացեալք հաւանիմք. եւ է ինչ, զոր ո՛չ քեզ պարտ է ասել եւ ո՛չ մեզ հնազանդել եւ յանձն առնուլ։ Արդ՝ կամիմ պատուով եւ մեծամեծ փառօք արձակել զձեզ յաշխարհն ձեր. միայնթէ

զայդ եւս իմ զկամս, որ վասն ձեր հոգւոյ փրկութեան հոգացայք, յանձն առնուք եւ դառնայք ի կորստեան ճանապարհէն. ապա եթէ այլազգագոյն ինչ խորհիք, առ ոչինչ համարիմ զայնչափ ի ձէնջ օգուտս եւ վաստակս, այլ կնաւ եւ որդւովք եւ
Եղիշէ. ազգաւ կորուսանեմ ի միջոյ: 'Երդուեալ իցէ իմ յարեգակն, ի մեծ աստուածն, եթէ ոչ վաղիւ ընդ առաւօտն ընդ երեւումն սքանչելւոյն ընդ իս զխուրաքանչիւր ծունր նմա ոչ կրկնեսջիք՝ խոստովանելով զնա Աստուած, ոչինչ թողացուցից ձեզ՝ զամենայն նեղութիւնս ի վերայ ածելով, մինչեւ ակամայ կատարեսջիք զկամս իմ:„

Իսկ հաւատացեալքն զուարթագին դիմօք եւ համեստ բանիւք տային պատասխանի թագաւորին. "Արքայ քաջ, յիշեցուցանեմք քեզ զժամանակն[3] Շապհոյ. ետ նմա Աստուած զերկիրն Հայոց ի ժառանգութիւն սովին օրինօք, որով եւ մեք վարիմք այժմ. հայրքն մեր եւ հաւքն հարցն մերոց սիրով կատարէին զամենայն հրաման բանի նորա եւ ի նմանէ մեծապարգեւք լինէին: Եւ մեք զնոյն ծառայութիւն ծառայեցաք, քեզ լաւագոյն քան զառաջնոցն: Հարկ աշխարհին բազմագոյն քան առ հարբն երթայր յարքունիս. նաեւ ի սուրբ Եկեղեցւոյն, որ էր ազատ ըստ կարգի նախնեացն մերոց ի սկզբանէ՝ դու ընդ հարկաւ եդեր. եւ մեք առ սէր քոյոյ տէրութեանդ ոչինչ ընդդիմացաք քեզ: Արդ՝ ասա՛ մեզ, օրէնքն մեր պատճառք իցեն անվաստակ լինելոյ առաջի քոյ:„

Իսկ չարադեւն ասէ. "Վնաս համարիմ ընդունել ի գանձ արքունի զհարկս աշխարհին ձերոյ եւ անօգուտ զքաջութիւն ձեր. զի տգիտաբար մոլո-

րեալ էք ի ճշմարիտ օրինացս մերոց. գուցէ աստուածքն բարկացեալ վասն ձեր ի մէնջ վրէժս առնուցուն: Եթէ կամիք կեալ եւ մեծարանօք յուղարկել, զոր ասացի, վաղիւ վաղվաղակի կատարեսջիք:„

Եւ լուեալ զայս ամենայն երեցունց աշխարՀաց ազատանւոյն, լռեցին առ վայր մի այլքն: Բայց յառաջ կացեալ աներկիւղ եւ քաջասիրտ մտօք Վարդանայ Մամիկոնէից տեառն եւ Հայոց սպարապետի՝ պատասխանի ետ Յազկերտի առաջի ամենայն բազմութեանն եւ ասէ եթէ՝ "բազումք են այս երից աշխարՀաց յազատորերոյ, որք են աւագ քան զիս եւ գաՀու[4] եւ աւուրբք. եւ շատ են որ ի խոնարՀ են. զվաստակ եւ զՀպատակութիւն, զոր ծառայից պարտ է առ իւրեանց տեարսն եւ առ թագաւորն առնել՝ դու որ ամենեցուն տէրդ ես եւ ապա ամենայն Արիք քաջ գիտէք եւ ոչինչ պիտոյ է ինձ եւ կամ ումեք ի նոցանէ զիւր զվաստակ եւ զսպաս ծանուցանել ձեզ. յայսմ Հետէ եւ յառաջ ի մտի այսպէս եդեալ, զի եթէ եւ գոյ Հնար առնել զմի անձն իմ բազում անձինս, զկեանս եւ զկարասի, որ գամ մի յիմում տանս կայ, ձեր առնելով՝ ի վերայ Արեաց տեառն եւ ի վերայ Արեաց աշխարՀի մաշել: Բայց զօրէնս, զոր ուսայ յԱստուծոյ ի մանկութենէ իմմէ, թողուլ եւ ընդ երկիւղի մարդոյ փոխանակել՝ չէ Հնար. քա՛ւ լիցի. իմ պատասխանիք այդ են, յորում ցանկամ մեռանել քան թէ կեալ ուրացութեամբ առանց Աստուծոյ. իսկ այլքս՝ որ կան առաջի ձեր ամենքեան, բաւական է իւրաքանչիւրոք ընդ անձին իւրոյ տալ պատասխանի:„

Ղազար.

Եղիշէ. Երանելի Նախարարքն ասեն յանդիման ամենեցուն. "Մի՛ դու, արքայ, մի՛ զայդ այլ առ մեզ ասեր. ոչ է եկեղեցի շինուած մարդոյ եւ ոչ տուրք արեգական. ոչ պարգեւք Թագաւորաց եւ ոչ արուեստ ճարտարութեանց. ոչ գիւտք իմաստնոց եւ ոչ աւար զինուորաց։ Հիմունք նորա ոչ նեղքինք շարժել կարեն եւ ոչ վերինք դրդուեցուցանել։ Եւ զոր երկինք եւ երկիր ոչ դողացուցանէ, մի՛ ոք ի մարդկանէ խրոխտասցի յաղթել նմա։ Հա՛պա զինչ եւ կամիս առնել կատարեա՛. պատրաստ եմք ամենեքեան առ ամենայն մեքենայս տանջանաց, զոր սպառնացար, ոչ միայն ի չարչարել այլ եւ ի մեռանել։„

Երեքկնէր եւ չորեքկնէր ՙԹագաւորն՚ զանսուտ երդումն-յարեգակն եւ ասէր. "Ո՛չ որում ցանկացեալդ էք՝ վաղվաղակի տամ գտանել ձեզ. այլ զամենայն զձեզ եւ որ ի գնդիս են՝ տամ անցուցանել ընդ անճանապարհ տեղիս եւ ի բերդս ամուրս եւ ի բանտս անելս. ի ձեր աշխարհն առաքեցից զօրս անթիւս հանդերձ փղօք. եւ զկին եւ զորդիս ի Խուժաստան [5] տամ խաղացուցանել. զեկեղեցիս քանդեցից եւ յապականութիւն դարձուցից։„

Ղազար. Եւ լուեալ այլ ազատանւոյն, որք էին յերեք աշխարհէ, զպատասխան աներկիւղութեամբ զսպարապետին Հայոց Վարդանայ եւ զաստիկ սրտմտութիւն Թագաւորին, ետուն պատասխանի եւ ասեն. "Ներեսցէ մեզ արքայ աւուրս ինչ խորհել ընդ միմեանս եւ առնել ձեզ պատասխանիս հաստատապէս միաբանութեամբ. վասնզի յաղագս հոգւոյ ընտրողութեան խնդրին ի մէնջ պատասխանիքդ. եւ զնախնի եւ զսովորական հայրենի աւանդութեան

մերոյ խնդրէք զքակտումն. եւ զյանձնառութիւն բռնադատէք օրինաց, որոց ոչ եմք եղեալ մեք եւ կամ Հարք մեր ընդունողք եւ սիրողք:»

Եւ Թագաւորին ամենայն աւագանեաւն յանձն առեալ Հաւանեցան բանիցն, եւ շնորհեալ նոցա զժամանակաւորութեան խնդիրն՝ արձակեցին զԱտեանն*:

---

* Ըստ Եղիշէայ «Հրամայէր Հանել մեծաւ անարգանօք յերեսաց իւրոց եւ զգուշութեամբ Հրաման տուեալ դահճապետին առանց կապանաց յիւրաքանչիւր վանս պահել:»

# ԳԼՈՒԽ Ջ.

## Խորհուրդ նախարարաց։

> "Եթէ զերծուցես զմեզ յորոգայթագիր թշնամւոյն, ամենայն ասացելոց ի քէն լուիցուք՝ հեղլով զարիւն մեր ի վերայ ամենայն աշխարհին փրկութեան։" ՂԱԶԱՐ։

Եղիշէ. Հաւատացեալքն ոչինչ թերահաւատէին յառաջին խրատուէն ի սուրբ վարդապետացն. այլ խնդրէին հնարս իրացն, թէ որպէս զանձինս եւ զփրկելիս հանցեն ի մեծ նեղութենէն։ Մեծամեծացն որ օգնականք էին նոցա ի Դրանն, խոստմունս մեծամեծս առաջի դնէին եւ ոչ սակաւ գանձս առ ժամայն ծախէին նոցա։ Զխորհուրդն Աբրահամու ի մէջ առեալ ասէին. "Ընկալ, Տէր, զկամաւոր պատարագս մեր եւ մի տար զեկեղեցի քո յայպն կատականաց անօրէն իշխանիս։"

Մի ոմն ի նոցին խորհրդակցացն արքայի, քանզի մկրտեալ էր իսկ յաւազանն կենդանի, մեծապէս հոգ տանէր վշտացելոցն։ Իբրեւ ստուգեաց, թէ զոր բազում սպառնացաւ թագաւորն՝ զամենայն չարիսն կամի անցուցանել ընդ աշխարհն Հայոց, ուսոյց զխրատ հնարից, զի առ անգամ մի զանձինս ապրեցուսցեն։ Մինչ գունդ կազմէին, որ գնոսա չկօթակ արասցեն յանդարձ օտարութիւն, գուժկան հասանէր ի կողմանցն Քուշանաց, թէ գունդ թշնամեացն ելին աւերեցին զգաւառս արքունի։ Երկիւղածացն Տեառն զայս տեսեալ աղօթելով ասէին. "Շարժեա՛, Տէ՛ր, զկամակոր խորհուրդս նենգաւորին եւ խափանեցո՛ զկամս ամբարշտութեան նորա եւ դարձո՛ զմեզ խաղաղութեամբ խորհրդոցն ի սուրբ եկեղեցին։"

Ցայնժամ ի մի վայր ժողովեալ Նախարարացն Ղազար. ամենեցուն, որք էին յերեցունց աշխարհացն, խորհուրդ ի մէջ առեալ զսակաւ աւուրս, յայս միտս առ վայր մի հաւանեցան եւ հաստատեցան եթէ "այլ ոչինչ գոյ մեզ հնար զերծանել յորոգայթէս, բայց եթէ առ ժամ մի յանձն առնումք պատճառանօք զհրամայեալս նոցա եւ երթալ իւրաքանչիւր յաշխարհ, այնուհետեւ կամ կեամք ծառայելով ճշմարիտ հաւատոյն Քրիստոսի եւ կամ թողեալ զաշխարհ գնամք իւրաքանչիւր յօտարութիւն կնաւ եւ որդւովք։ Ապա եթէ զանձանց միայն զփրկութիւն եդեալք ի մտի՝ ընդդիմանամք անօրէն հրամանաց իշխանին, անթիւ բազմութեան արանց եւ կանանց, ծերոց եւ տղայոց լինիմք պատճառ յաւիտենից կորստեանն։„

Սակայն ոչ իշխէին յայտնել զօրավարին Հայոց Վարդանայ տեառն Մամիկոնէից զմտածութիւն միաբանութեան իւրեանց՝ ճանաչելով ի միտս իւրեանց թէ նմա ո՛չ է հնար յանձն առնուլ եւ հաւանել այսպիսւոյ խորհրդոյ. բայց չյայտնելն նմա եւ չպատմել զայս ամենայն չկարէին հանդուրժել, քանզի գիտէին, եթէ առանց նորա ամենայն խորհեալքն ի նոցանէ թերիք են եւ անկատարք. զի տեսեալ էր ամենեցուն եւ լուով ի գրոց ճանաչէին, եթէ ամենայն իրք այնպիսի գործոյ ի բնէ յոլով Մամիկոնէիցն ազգաւ եւ նոցա միաբանութեամբ ելեալ էին ի գլուխ։ Ածեալ զայս ամենայն զմտաւ Նախարարացն ամենեցուն եւ սեպհացն՝ միաբան եկին առ տէրն Մամիկոնէից եւ յայտնեալ նմա զխորհուրդսն ասէին." "Հայեա՛ց յառաջիկայ դիպմունս չարաչար աղէտից. յիշեա՛ զհառաչանս մարց. զմտա՛ ած

զտղայոց ողբումն, զծերոց ստիպով եւ զպառաւանց վարելոց յօտարութիւն. եթէ լոկ միայն մարմնոյ աշխատութեամբ եւ մահուամբ էր կրել զայս ամենայն, համայն ծանր էր եւ դառն. թող թէ առ հասարակ առաջի հոգւոյ եւ մարմնոյ գայթակղութիւն եւ կորուստ. եւ ոչ թէ հարեւանցի լինի հասելոյ վտանգիս վախճան, այլ ցանկ մածեալ խաւար ամբարշտութեան թանձրամածութեամբ ունելոց է զսուրբ եկեղեցիս մեր եւ զժողովուրդս, զկանայս եւ զծնունդս մինչեւ յաւիտեան: Եւ եթէ դու միաբանելով մերում խորհրդոյս, կարասցես առ վայր մի հաւանեցուցանել զքոյ միտսդ, գիտեմք, զի ողորմութեանն դիպիմք բազումքս. այլ եւ ոչ ընդհանուր եկեղեցիք երեցունց աշխարհացն մատնին յաւեր եւ ոչ վարին ի գերութիւն բովանդակ աշխարհացն բնակիչք: Զի ոչ շարժի սուրբ հաւատն ի հիմանէ, այլ թէեւ առ վայր մի դղորդ հասանի, կանգնէ հաստատ անդրէն եւ հաստատէ աջ Ամենակալին: Եւ լինի հաստատ այսպէս, եթէ կարասցես վայր մի հիւանդանալ վասն մեր. որպէսզի ողջացուսցէ զմեզ քեւ հանդերձ ամենագթածն բժիշկ Բանն Աստուած:,,

Եւ լուեալ զայս ամենայն Վարդանայ ի նախարարացն Հայոց, Վրաց եւ Աղուանից՝ ամենեւին ոչ առնու յանձն լսել եւ հաւանել այսպիսի բանից եւ կամ բնաւ հաղորդ լինել այսպիսի խորհրդոյ. այլ յոյժ խռովեալ մեծաձայն գոչմամբ ասէր ցամենեսեան թէ “Մի՛ լիցի ինձ ստել Արարչին իմում եւ մի՛ ուրանալ զայն, որ ուրանայ զուրացօղս իւր առաջի Հօր եւ հրեշտակաց սրբոց. քա՛ւ լիցի ինձ յաղագս զմտաւ ածելոյ զկարիս եւ զվիշտս զկնոջ եւ զորդւոց եւ զազգի՝ տալ ի մոռացումն զոր ասէն,

թէ “որ սիրէ զկին եւ զորդիս առաւել քան զիս չէ ինձ արժանի։,, Այլ դուք, որ այժմ յերեցունց աշխարհաց եկեալդ էք տանուտեարք եւ սեպուհք՝ բաւական էք ընդ իւրաքանչիւր անձին տալ պատասխանի եւ որպէս խորհիք կարիցէք առնել։,,

Եւ լուեալ զայս ամենայն խօսս Նախարարացն ի Վարդանայ՝ ոչինչ թոյլ տուեալ լինէին ի բանիցն առաջարկելոյն. եւ ժողովեալք ի մի վայր կոչէին առ ինքեանս զիշխանն Մոկաց զԱրտակ եւ զնա առաւել փութացուցանէին նստել առանձինն եւ խօսել ընդ սպարապետին իւրեանց։ Եւ նա ինքն էր այր համեստ, մտացի եւ քաջ. եւ Վարդան առաւելապէս պատուով սիրէր զԱրտակ, որ եւ հաւանեալ հրամանի Նախարարացն Հայոց՝ յանձն առնոյր ջանալ ընդ նմա՝ յարաժամ աղաչել մերթ առանձինն եւ մերթ հանդերձ աւագանեաւն Հայոց։ Եւ տեսեալ Նախարարացն եւ սեպհացն երեցունց աշխարհացն զկամս սպարապետին Վարդանայ այնպէս անշարժս եւ անհաւանս ի յորդորմունս խօսից նոցա եւ աղաչանաց, բերեալ հարկաւորէին այնուհետեւ մատուցանել նմա ի սուրբ գրոց առակս դիպօղս՝ յիշեցուցանելով նմա որպէս առն ուսելոյ եւ տեղեկի (քանզի յոյժ հմուտ էր եւ ընդել գրոց վարդապետութեան ուսեալ եւ խրատեալ ի սուրբ հայրապետէն ի Սահակայ ի հաւոյն իւրմէ) զգրեալսն սրբոյն Պօղոսի յաղագս Արարչին թէ “որ ոչն գիտէր մեղս, վասն մեր մեղս արար.,, եւ դարձեալ՝ զինքեան իսկ Պօղոսի զիջանելն եթէ “ուխտիւք խնդրէի ես իսկ ինքն նզովեալ լինել ի Քրիստոսէ վասն եղբարց իմոց եւ զաւակաց եւ ազգականաց ըստ մարմնոյ։,, “Եւ յորժամ զայսպիսի բանս եւ

*բազում Թախանձանօք զաղաչանս դնէին առաջի*
*Վարդանայ, բերէին պնուհետեւ եւ զսուրբ Աւե-*
*տարանն. եդեալ ամենեցունց առ հասարակ զձեռս*
*ի վերայ՝ երդնուին ասելով. «եթէ դու եւեթ առ*
*վայր մի կարասցես յանձն առնուլ պատճառանօք*
*զասացեալս Թագաւորին եւ զերծուսցես զմեզ, ա-*
*մենայն ասացելոց ի քէն լուիցուք եւ արասցուք՝*
*դնելով զանձինս մեր ի վերայ ուխտին սրբութեան*
*եւ հեղլով զարիւն մեր ի վերայ ամենայն աշխարհին*
*փրկութեան։ Եւ եթէ դիպեսցի մեզ Թողուլ զաշ-*
*խարհ եւ զամենայն ստացուածս եւ փախչել յօտա-*
*րութիւն, ընտրեսցուք հանդերձ կանամբք եւ որ-*
*դւովք. եւ սիրով յանձն առցուք զաղքատութիւն*
*եւ զմուրողութիւն. միայն ի բարկութենէս եւեթ*
*ապրեսցուք։» Եւ լուեալ զայս ամենայն բանս ի բերա-*
*նոյ երից աշխարհաց ազատանւոյն, տեսեալ եւ զկըն-*
*քեալ ամենեցուն աՀաւորապէս երդմամբ, յարտա-*
*սուս հարեալ՝ յանձն առ (Վարդան) զպատճառանօք*
*վիրաւորիլն վասն երեցունց աշխարհացն եւ բազմու-*
Եղիշէ. *Թեան ի նոսա արանց եւ կանանց։ Զայս ուխտ եդեալ*
*անքակութեամբ ընդ Աստուծոյ, զի հաստատուն կայ-*
*ցեն ըստ առաջին խորհրդոցն, պատգամս ի ներքս*
*յղէին զնոյն խրատտուն իւրեանց Թէ կատարեսցին*
Ղազար. *կամք նորա։ Եւ ի տուն մոխրանոցին կէսքն ի նո-*
*ցանէ ցուցանէին, այլ ոչ ամենեքեան զպատճառա-*
*նօք եւ ոչ ճշմարտութեամբ զխոնարհումն գլխոց*
*իւրեանց սնոտի պաշտամանն։*

Եղիշէ. *Թագաւորն յոյժ բերկրեցաւ. հեզոյր արկանէր*
*առաջի նոցա զպարգեւս երկրաւորս. երեւելի առ-*
*նելով ընդ ամենայն տիեզերական իշխանութիւնն.*
*ազարակս եւ աւանս միում միում նոցա յարքու-*

*նուսա շնորհէր. «զտանուտեարսն եւ զսեպուհսն ի հանդերձս թագաւորականս զարդարէր.» սիրելիս եւ բարեկամս կարգայր զնոսա։ Բազում պյրեւձի գումարէր եւ աւելի քան զեօթն հարիւր վարդապետս յղէր ընդ նոսա եւ զմեծ ոմն իշխան մոգպետ կացուցանէր. այսպէս առաջնորդէր նոցա յերկիրն Հայոց։*

*Մինչչեւ հասեալ էին յերկիրն Հայոց՝ փայտ ընկենուին եւ վիճակս արկանէին թէ ո՛ր լեզու[1] որում դասու հասցէ յաշակերտութիւն։*

*Արքունի հրամանաւ՝ յամենայն տեղիս բարձցին ասէր կարգք եկեղեցւոյ. փակեսցին եւ կնքեսցին դրունք սուրբ տաճարացն. գրով համարով առցին նուիրեալ սպասքն յարքունիս. քահանայք մի՛ իշխեսցեն ի տունս իւրեանց ուսուցանել զժողովուրդըս. այլ եւ կանայք, որ բնակեալ են յիւրաքանչիւր մենանոցս, փոխեսցեն զհանդերձս իւրեանց ըստ աշխարհական կարգաց. կանայք նախարարացն, ուստերք եւ դստերք ազատաց եւ շինականաց կըրթեսցին ի հրապարակս մոգաց. կարճեսցին օրէնք սուրբ ամուսնութեան. փոխանակ կնոջ միոյ բազում կանայս արասցեն, զի աճեալ բազմասցին ազգք Հայոց. դստերք հարանց լինիցին եւ քորք եղբարց, մարք մի ելցեն յորդւոց, այլ եւ թոռունք ելցեն յանկողինս հաւուց. պատրուճակք մի՛ մեռցին անյաղ[2]. հայսք առանց փանդամի մի՛ զանգցին[3]. ձեռք առանց գոմիզոյ մի՛ լուասցին[4]։ «Ցորդորէին ուսանել զուսմունս ծաղ-* Ղազար.
*րելի շնչմանց. պատուէր տային յերեսին աշխարհսն կարգել զխաբէութեան դպրոցս եւ ուսուցանել առ հասարակ զընաւս զարս եւ զկանայս։*

*Զայս ամենայն, որ ասացաք, մինչեւ ի գլուխ* Եղիշէ.
*տարւոյ կատարեսցեն ամենեքեան[5]։*

---

## ԳԼՈՒԽ Է.

### Ուրացութիւն:

"Մարդիկ որ սիրովն Աստուծոյ վառեալ էին, զուրացութիւնն մոլորութիւն վարկանէին։"
ԵՂԻՇԷ։

Ղազար. Իսկ հրաժարեալք այնուհետեւ յամենեցունց երեքեան աշխարհք՝ Հայք, Վիրք եւ Աղուանք, առեալ ընդ ինքեանս զդասս բազմութեան մոգուց դարձան յիւրաքանչիւր աշխարհս՝ հաստատեալ բազում անգամ ի ճանապարհին զնոյն ուխտ երդման Աւետարանին սրբոյ. հրաժարեալք ի միմեանց գնացին յիւրաքանչիւր աշխարհս։ Բայց զըդեշխն Վրաց զԱշուշայ եւ զերկու որդիս իշխանին Սիւնեաց Վասակայ՝ զԲաբիկ եւ զԱտրներսեհ ոչ արձակեաց Յազկերտ։

Եղիշէ. Որ անցք անցին անդէն ի կարաւանին, ասասցուք փոքր ի շատէ։

Ի մեծ բանակին Պարսից՝ յազգաց ազգաց, որք էին հաւատացեալ ի Քրիստոս, իբրեւ տեսին զչար յանձնառութիւնն Հայոց, յոյժ հարան ի միտս իւրեանց. եկին եւ յանդիմանեցին զնախարարեանն եւ զուխտ քահանայութեանն եւ ասէին. "վարդապետք էիք առաքելական քարոզութեանցն, արդ աշակերտք լինիցիք մոլար խաբէութեանն։ Ուսուցիչք էիք ճշմարտութեանն, արդ ուսուցանէք զխաբէութիւնն մոգաց 'եւ' զտարերս աստուածս խոստովանիք։ Ի հուր եւ ի հոգի մկրտեալ էիք, արդ ի մոխիր եւ յաճիւն թաթաւիցիք։ Դուք էիք մեր ամուր պարիսպ ապաստանի. յորժամ աստի վտանգ հասանէր, առ ձեզ յանդորր ելանէաք. ցայժմ վասն ձերոյ

ճշմարիտ հաւատոցն եւ ի մեզ փոքր ի շատէ խնայէին, եւ արդ ի պատճառս ձեր եւ զմեզ անողորմ դատեն։„ Զայս եւ առաւել քան զայն խօսեցան ընդ մեծամեծս աւագանւոյն եւ յաւելին ցաւս ի վերայ ցաւոց։ Ցայտնել եւ ցուցանել նոցա զխորհուրդն ոչ կամէին ՙնախարարքն՚. լռել եւ չառնել պատասխանի անհնար էր։ Ընդ նոսին դառնացեալ լսօղք եւ տեսօղք յանմխիթար սուգ լինէին ամենքեան։ Քահանայքն, որ էին անդէն ի զօրուն, որոշեցան ի նախարարացն եւ յամենայն բազմութենէն եւ մի ոմն դեսպան ձիով առաքեցին փութապէս յաշխարհն Հայոց։

Գոյժ ի բերան առեալ եւ զօձիս պատառեալ՝ հասեալ ի ժողովս[1] եպիսկոպոսացն պատմէր ՙդեսպանն՚ զամենայն անցս չարչարանացն, այլ ոչ յայտնէր նոցա զծածկութիւն խորհրդոցն։

Սփռեցան եպիսկոպոսքն յիւրաքանչիւր իշխանութիւնս եւ առաքեցին զքորեպիսկոպոսս ի գեօղս եւ յագարակս եւ ի բազում ամուրս լեռնային գաւառացն. դրդեցին ժողովեցին զբազմութիւն արանց եւ կանանց. խրատ եդին պնդեցին եւ արարին զամենեսեան զինուորս Քրիստոսի։ "Ձեռն եղբօր հարազատի (ասեն) ի մերձաւոր իւր լիցի, որ անցեալ իցէ ըստ ուխտ պատուիրանին Աստուծոյ։ Օրէնք աստուածային կացցեն թագաւոր ի վերայ ամենայնի եւ ի նմին օրինաց ընկալցին յանցաւորք զպատիժս։„ Իբրեւ այս այսպէս հաստատեցաւ, երեւեցան ամենեքեան զինեալք եւ սաղաւարտեալք։

Իսկ գունդն Հայոց հանդերձ մոգացն բազմութեամբ յամսեանն չորրորդի[2] եկին հասին յաշխարհն Հայոց ի գիւղաքաղաք մի մեծ Անգղ[3]։

# ԳԼՈՒԽ Է.

## *Ուրացութիւն։*

"Մարդիկ որ սիրովն Աստուծոյ վառեալ էին, զուրացութիւնն մեռելութիւն վարկանէին։"
ԵՂԻՇԷ։

Ղազար. *Իսկ հրաժարեալք այնուհետեւ յամենեցունց երեքեան աշխարհք՝ Հայք, Վիրք եւ Աղուանք, առեալ ընդ ինքեանս զդասս բազմութեան մոգուց դարձան յիւրաքանչիւր աշխարհս՝ հաստատեալ բազում անգամ ի ճանապարհին զնոյն ուխտ երդման Աւետարանին սրբոյ. հրաժարեալք ի միմեանց գնացին յիւրաքանչիւր աշխարհս։ Բայց զըդեշխն Վրաց զԱշուշայ եւ զերկու որդիս իշխանին Սիւնեաց Վասակայ՝ զԲաբիկ եւ զԱտրներսեհ ոչ արձակեաց Յազկերտ։*

Եղիշէ. *Որ անցք անցին անդէն ի կարաւանին, ասասցուք փոքր ի շատէ։*

*Ի մեծ բանակին Պարսից՝ յազգաց ազգաց, որք են հաւատացեալ ի Քրիստոս, իբրեւ տեսին զչար յանձնառութիւնն Հայոց, յոյժ հարան ի միտս իւրեանց. եկին եւ յանդիմանեցին զնախարարեանն եւ զուխտ քահանայութեանն եւ ասէին. "վարդապետք էիք առաքելական քարոզութեանցն, արդ աշակերտք լինիցիք մոլար խաբէութեանն։ Ուսուցիչք էիք ճշմարտութեանն, արդ ուսուցանէք զխաբէութիւնն մոգաց 'եւ' զտարերս աստուածս խոստովանիք։ Ի հուր եւ ի հողի մկրտեալ էիք, արդ ի մոխիր եւ յաճիւն թաթաւիցիք։ Դուք էիք մեր ամուր պարիսպ ապաստանի. յորժամ աստի վտանգ հասանէր, առ ձեզ յանդորր ելանէաք. ցայժմ վասն ձերոյ*

ճշմարիտ հաւատոցն եւ ի մեզ փոքր ի շատէ խնայ-
էին, եւ արդ ի պատճառս ձեր եւ զմեզ անողորմ
դատեն։„ Զայս եւ առաւել քան զայն խօսեցան ընդ
մեծամեծս աւագանւոյն եւ յաւելին ցաւս ի վերայ
ցաւոց։ Ցայտնել եւ ցուցանել նոցա զխորհուրդն
ոչ կամէին ՝նախարարքն՝. լռել եւ չառնել պատաս-
խանի անհնար էր։ Ընդ նոսին դառնացեալ լսօղք
եւ տեսօղք յանմխիթար սուգ լինէին ամենեքեան։
Քահանայքն, որ էին անդէն ի զօրուն, որոշեցան ի
նախարարացն եւ յամենայն բազմութենէն եւ մի ոմն
դեսպան ձիով առաքեցին փութապէս յաշխարհն
Հայոց։

Գործ ի բերան առեալ եւ զօձիս պատառեալ՝
հասեալ ի ժողովս[1] եպիսկոպոսացն պատմէր ՝դես-
պանն՝ զամենայն անցս չարչարանացն, այլ ոչ կայա-
նէր նոցա զծածկութիւն խորհրդոցն։

Սփռեցան եպիսկոպոսքն յիւրաքանչիւր իշխա-
նութիւնս եւ առաքեցին զքորեպիսկոպոսս ի գեօղս
եւ յագարակս եւ ի բազում ամուրս լեռնային
գաւառացն. դրդեցին ժողովեցին զբազմութիւն ա-
րանց եւ կանանց. խրատ եդին պնդեցին եւ արարին
զամենեսեան զինուորս Քրիստոսի։ “Չեռն եղբօր
հարազատի (ասեն) ի մերձաւոր իւր լիցի, որ անցեալ
իցէ ըստ ուխտ պատուիրանին Աստուծոյ։ Օրէնք
աստուածային կացցեն թագաւոր ի վերայ ամենայնի
եւ ի նմին օրինաց ընկալցին յանցաւորք զպատիժս։„
Իբրեւ այս այսպէս հաստատեցաւ, երեւեցան ամե-
նեքեան զինեալք եւ սաղաւարտեալք։

Իսկ գունդն Հայոց հանդերձ մոգացն բազմու-
թեամբ յամսեանն չորրորդի[2] եկին հասին յաշ-
խարհն Հայոց ի գիւղաքաղաք մի մեծ Անգղ[3]։

Եւ ելեալ ընդ յառաջ նոցա դասք պաշտօնէիցն Քրիստոսի՝ բերելով ընդ ինքեանս զնշան կենսատու խաչին եւ զնշխարս սրբոյ առաքելանման նահատակին Գրիգորի։

Եւ անդ էր լսել զձայն լալոյ եւ ձայնս գուժի, գոչիւնս ողբոց եւ բարբառ ճչոյ։ Տղայք անձկոտք ի գրկաց հարց իւրեանց՝ պակուցեալք փախչէին, կարծելով այլափոխեալս իմն. եւ ոչ զնոյնս նկատելով կերպարանս՝ զարհուրէին, ստէպ հայելով յերեսս մարցն, զորս տեսանէին կողկողագին միշտ եւ արտօսրաբուղխս. յաղագս որոյ եւ ինքեանք յարտասուս հարեալ, ոչ ոք կարէր լռեցուցանել ի դայեկացն կամ ի դաստիարակացն. ընդ որ հայեցեալ այնոցիկ, որք պատճառանօք եւ ոչ ճշմարտութեամբ ուրացօղքն էին, փութանակի եւ առ ժամայն կամէին յառնել եւ ընդ ինքեանց սուրն ելանել։ Քանզի ոչ ոք հաւանէր ընդ նոսա կամակից լինել սեղանոյ, ոչ կին, ոչ որդի, ոչ ազատ, ոչ ծառայ ոք եւ ոչ սպասաւորք։ Եւ սուգ առեալ կոծէին կանայք աւագ ազատացն. եւ պիրկք ի հրապարակս, մանկամարդ առնականայք, օրիորդք ի սրահս դըռնափակեալս, հարսունք ի սենեակս։ Սուրբ եպիսկոպոսք պատուական քահանայիւք եւ եկեղեցական ուխտիւ, ծերովք եւ տղայովք եւ ամենայն ժողովրդոցն բազմութեամբ կառաչ բարձեալ լային ի տանն Աստուծոյ։ Եւ էր տեսանել ծեփեալ արեանց հոսմամբք զամենայն գէմս ուղղափառ մարդոց։

Իսկ մոգուցն գունդք ստիպով բռնադատէին տանել զկրակս ի տաճար սրբութեանց Տեառն, եւ յայլ ականաւոր եւ գեղեցիկ տեղիս շինել ատրու-

շանս եւ կարգել բեռնակիրս փայտակրաց ի պէտս կիզման չաստուածոցն անյագի։

Եւ տեսեալ զայս ամենայն չարիս տեառն Մամիկոնէից եւ Հայոց սպարապետին Վարդանայ, կոչեալ առ ինքն զամենայն միահամուռ բազմութիւն դրան իւրոյ, սկսաւ խօսել ընդ նոսա եւ ասել. “Ես ոչ ուրացայ զԱրարիչն իմ կամաւ եւ կամ առ երկիւղի. քա՛ւ լիցի. եւ ո՛չ զվարդապետութիւն եւ զհաւատս սրբոյ Աւետարանին, զոր ուսոյց եւ հաստատեաց յիս ճշմարիտ հաւն իմ տէր Սահակ, մերժեցի յինէն. այլ առ վայր մի մինչեւ ի ժամն յայս յաղագս ձեր ամենեցուն գիւտի կորեայ պատճառանօք, զի գտեալ զիս ձեօք հանդերձ՝ ապաշխարեցից եւ կեցից։ Արդ՝ փոխանակ զի թողի զնա պատճառանօք առ վայր մի վասն ձեր՝ կամիմ թողուլ զամենայն իրս կենցաղոյս մինչեւ ի սպառ. եւ որ ոք ի ձէնջ կամակից կարող էք լինել, յանձն առեալ ձեօք հանդերձ վասն անուան Քրիստոսի ընտրեմ գնալ յօտարութիւն։„ Պատասխանի ետ նմա երանելի եղբայրն Համայեակ եւ ասէ. “փութա՛ կատարել զոր խորհիդ եւ մի՛ յապաղեր. Աստուծով թէ կեցցուք, առանց խղճի մտաց վախճանի աւուրն դիպեսցո՛ւք. թէ մուրողութեամբ իցէ եւ թէ օտարութեամբ նովաւ եւեթ կեցցուք, զուրացութեանն եւեթ զանունն ի բաց ընկեսցուք ի մէնջ։„ Եւ այսպէս զամենայն սնոտի մեծութիւն առ ոչինչ համարեցան եւ դէմ եդեալ ի կողմանս իշխանութեանն Յունաց ճեպէին. եւ եկեալ հասանէին ի գիւղ մի, որոյ անուն է Արամանայ[4] ի նահանգին Բագրեւանդայ,[5] մերձակայ սահմանակից Բասենոյ[6] եւ Տուարածատափոյ,[7] սակաւ ինչ աւուրս հանգչել։

Յանկարծակի իրազգած եղեալ այսպիսի խորհրդոյ եւ գնացից յաշխարհէս Հայոց զմեծէ սպարապետէն Վարդանայ՝ հանդերձ եղբարբք իւրովք, դրամբ եւ ամենայն ախիւ՝ իշխանին Սիւնեաց Վասակայ, որ եւ մարզպան էր Հայոց ի ժամանակին, եւ ամենայն տանուտէրանցն Հայոց եւ սեպհացն, խորտակեալ սրտիւ զարհուրէին. քանզի տեղեկացեալ ճանաչէին ամենեքեան թէ առանց առաջնորդութեան այնորիկ (Վարդանայ) եւ ոչ մի ինչ իրք եւ գործք աշխարհիս Հայոց երթեալ էին ի գլուխ: Խորհուրդ ի մէջ առեալ իշխանին Սիւնեաց Վասակայ՝ զմիտս ամենեցուն յիւր կամսն հաւանեցուցանէր ասելով թէ պարտ է փութով քահանայս առաքել ընտիրս եւ արս աւագս ի տանուտեարցս Հայոց եւ աղաչանօք դարձուցանել զնա այսրէն: Եւ արարեալ նամակ իշխանին Սիւնեաց Վասակայ՝ հրամայէր նամականի առնել եւ այլ ամենայն աւագ տանուտեարցն Հայոց. եւ կնքեալ նամակին իւրաքանչիւր ուրուք մատանեաւ, տայր բերել եւ զկընքեալ Աւետարանն ուխտին. եւ ի քահանայից՝ զերանելին Ղեւոնդ երէց եւ զԵրեմիա ի Նոր քաղաքէ եւ զԽորէն ի Մրէնայ. եւ արս աւագս ի տանուտէրացն Հայոց. եւ տուեալ ցնոսա զամենայն նամականին եւ զԱւետարանն երդման, դեսպանս արձակէր զկնի նորա (Վարդանայ): Որք հասեալ գտանէին զնա յառաջագրեալ գեօղն յԱրամանեայ. եւ ազդ արարեալ՝ մտանէին զառաջեաւ. պատմէին երանելւոյն Վարդանայ եւ եղբարց իւրոց Համայեկայ եւ Համազասպայ զպատճառս իւրեանց փութանակի հասանելոյն առ նոսա, յառաջ բերեալ եւ զԱւետարանն երդման. տային ի ձեռս նորա եւ զնամակն

Վասակայ եւ զայլոց զազատացն եւ զեպիսկոպոսացն ՛եւ զսեպհացն եւ ասէին. “որպէս հոգացեալ խնամ տարէք ձեզ, նոյնպէս եւ զայսչափ զբազմութեան ոգիս մի թողուք կորնչել. քանզի եմք աստ բազումք, որք եւ ազգախառն եւ արիւն ձեր եմք, պսակեցարուք եւ ընդ մեզ ի Քրիստոսէ, որպէս ցանկացեալ ջանայք ընդ ձեր միայն պսակիլն:„

Զայս ամենայն լուեալ սպարապետին Հայոց Վարդանայ՝ պատասխանի ետ միաբանութեամբ ամենեցուն եւ ասէ. “Ես եւ եղբարք իմ եւ ընտանիք՝ կարեւոր ընտրելագոյն քան զամենայն ինչ, որ է յաշխարհի, հաստատեալ եմք ընտրել զոգւոցն փրկութեան գիւտ. եւ ոչ զմեր եւեթ զոգւոց խնդրեմք զօգուտն, այլ եւ ընդ այլոցն խնդրեմք ընդ փրկութեան. եւ ոչ որ փախուցեալս եմք յերկիւղէ ոք ինչ սրոյ կարծիցէ զայս զմէնջ, բայց ի նենգաւոր խաբէութենէ ձերմէ, որպէս ցանկ ձեր մղեալ է զմեզ ի նեղ: Բայց սուրբ եւ երկնաւոր հրաւիրակիդ Աւետարանի ո՛չ կացեալ ոք է ընդդէմ ի մեր ազգէս եւ ո՛չ մեք կամք, քա՛ւ լիցի:„

Զայս ասացեալ սրբոյ առն Վարդանայ՝ կամակցութեամբ երանելի եղբարցն իւրոց եւ սիրելեաց՝ դարձան անդրէն առ ընկերսն իւրեանց ի բանակն Հայոց:

Եւ եկեալք ի միաբանութիւն բազմութեանն ո՛չ առնէին դուլ եւ դադար խորհուրդք Վարդանայ՝ լոկ միայն առտնին կատարել քահանայիւք եւ այլ պաշտօնէիւք դրանն իւրոյ զպաշտօն կարգեալ ժամուցն, այլ միաբանութեամբ ամենայն Հայովք երթալ յեկեղեցի ցանկայր: Բայց կամաւ արգելեալ առ վայր մի համբերէր իրացն՝ հոգալով եւ զպէտս

ընկերացն՝ մանաւանդ յազգաց Աշուշայի եւ որդւոցն Վասակայ։[8] Եւ զայս խորհէր սուրբն Վարդան իբրեւ ոչ առ ի պէտս ինչ օգնականութեան իւրում առաջադրեալ գործոյն, այլ հոգայր իբրեւ զբարեսէր, թէ մի՛ գուցէ դժուար ինչ արանցն ի թագաւորէն դիպի եւ վնասիցին։

Բայց իշխանն Ամատունեաց Վահան մերթ ինքեամբ եւ մերթ այլովք ստիպէր փաղփաղակի յայտնել զիւր ապստամբութեան՝ վասն մթերից առաջին ոխութեանն, զոր ունէին առ միմեանս իշխանն Սիւնեաց Վասակ եւ տէրն Ամատունեաց Վահան։ Իսկ տէրն Մամիկոնէից ոչ ի բանս ինչ ուրուք հայէր, այլ զհոգ ընկերաց հոգայր. եւ այնպէս ձգեալ բանի մինչեւ յաւուրս տօթոյն մտելոյ՝ չու արարեալ ամենայն բազմութեանն Հայոց ի տեղիս հովոց՝ գային հասանէին ի գաւառն Ծաղկոտն[9] մերձ ի բերդն ամուր զոր Անգղն անուանեն. զայն տեղեօք արարեալ բանակատեղս արանց՝ դադարէին անդ զաւուրս տօթոյն։

## ԳԼՈՒԽ Ը.

### Միաբանութիւն ուխտին Հայոց:

"Օրէնք աստուածային կացցեն թագաւոր ի վերայ ամենայնի:"

Յետ աւուրց քսան եւ հնգից (զկնի հասանելոյ նախարարաց եւ մոգուց ի Հայս) մոգպետն ինքնին մոգօք հանդերձ հասանէր մեծաւ զօրութեամբ քակել զդրունս եկեղեցւոյն յաւուր միաշաբաթու. զփորձ առնուլ կամէր զառաջարկութեան գործոյն: Ծգ.ժգ.Ժ.

Սուրբն Ղեւոնդ երէց բազում ուխտիւ ի տեղւոջ անդ պատրաստական դիպեցաւ, ոչ ետ թոյլ: Ո՛չ էր տեղեկագոյն մտացն ամենեցուն նախարարացն. եւ բազում ամբոխ աղաղակի զօրացն եւ մոգուցն հասանէր: Քանզի վերգս ի ձեռն առեալ զկառափունս մոգացն եւ մոգպետին ջարդեցին. փախստական յիւրաքանչիւր վանս արկանէին եւ ինքեանք զպաշտօնն բարձրացուցեալ յեկեղեցւոջն՝ զտէրունական կանոնն կատարէին:

Եւ յետ այս տագնապի՝ յամենայն կողմանց յաշխարհէն Հայոց բազմութիւն արանց եւ կանանց ի տեղին հասանէին: Եւ անդ էր տեսանել զմեծ աղէտ տարակուսին. կէսքն խիզախելով եւ ի զէնս ընթանալով զմահ քան զկեանս ընտրէին. ոմանք ի սուրբ ուխտէ եկեղեցւոյն զաւետարանն ի ձեռն առեալ, աղօթիւք առ Աստուած կարդային. եւ այլք ըղձանային զպատառումն երկրին, զի անձանց լիցի գերեզման:

Եւ այսպէս շտապ տագնապի ի վերայ մոգպետին հասուցանէին, (որ) բազում անգամ աղաչէր

զօգնականսն իւր, զի կարասցեն զնա ողջանդամ անդէն յարքունիսն[1] հասուցանել։ Ստիպէր զնոսա եւ ասէր. “Թո՛ղ գրեմ եւ ցուցանեմ մեծ Թագաւորին, զի ի բաց Թողացուցանէ զայսպիսի իրաց առաջարկութիւն. զի եթէ ինքեանք աստուածքն եկեսցեն յօգնութիւն, չէ հնար օրինացս մոգութեան ի Հայս առնուլ զհաստատութիւն, որպէս զփորձ առ ի միաբանութեան ուխտին եկեղեցւոյ։ Զի եթէ էին զօրք աշխարհիս մոգք, ոչինչ խնայէին ոչքա ի նոսա սատակմամբ։ Մարդք, որ ո՛չ ի կապանաց զանգիտեն եւ ո՛չ ի տանջանաց երկնչին եւ ո՛չ ի ստացուածոց պատկառին. եւ որ յետին չար է քան զամենայն չարիս՝ մահ քան զկեանս ընտրեն. ո՞վ է որ կարէ նոցա դիմակաց լինել։„

“Լուեալ իսկ իմ էր, եթէ յաւուրս Շապհոյ[2] իբրեւ սկսաւ ուսումնդ այդ (քրիստոնէութիւն) աճել եւ բազմանալ, վարդապետք օրինաց մերոց յորդորեցին զԹագաւորն, զի լռեալ դադարեսցէ քրիստոնէութիւնն։ Եւ որչափ նա կամեցաւ արգելուլ, եւս քան զեւս աճեցին եւ բազմացան. եւ այնպէս աներկիւղ եւ համարձակք էին յաշխարհի Պարսից՝ մինչեւ յամենայն քաղաքս աշխարհին եկեղեցի շինեցին եւ յամենայն տեղիս յապատս եւ յանապատս միայնանոցս շինէին. աճելով աճէին եւ բազմանալով բազմանային եւ մարմնաւոր մեծութեամբ մեծանային։„

“Զպատճառս հարստութեան մեք ինչ ոչ գիտեմք, բայց այսչափ ինչ ճշմարտիւ իմանայաք, զի տիեզերք ամենայն զկնի ուսմանց նոցա գնային։ Թագաւորն խստութեամբ զբազում կալաւ եւ չարչարեաց ի նոցանէ եւ զեւս բազում մահուամբ

բատակեաց. դառնացաւ եւ ձանձրացաւ յանձն իւր եւ զնոսա ոչ կարաց նուաճեցուցանել ի բազմութենէն։ Փակեաց եւ կնքեաց զդրունս եկեղեցեացն ընդ ամենայն աշխարհն Պարսից. նոքա յամենայն տեղւոջ զիւրեանց օրէնսն կատարէին։ Սուրբ սպանողացն բթացան եւ նոցա պարանոցք ոչ ձանձրացան. աւարառուք ստացուածոց նոցա աշխատեցան եւ աւարն օր քան զօր աճեցեալ բազմացաւ։ Իբրեւ ետես Թագաւորն եթէ գռոհ տուեալ դիմեցին ի մահ իբրեւ խաշինք, արգել եւ կարճեաց ի նոցանէ զհարուածս տանջանացն եւ հրաման ետ մոգպետացն, զի մի՛ ամենեւին ոք խուեսցէ զնոսա։ Զայն ահա՛ ի լսելոյ գիտեմք։ Այս՝ որ ես ինձէն աչօք տեսի, թուի ինձ թէ մեծագոյն եւս լինի քան զառաջինն։ Եթէ անզէն մարդիկ այդպէս բռնացան, եթէ յանկարծ զինուորս եւս ընդ ինքեանս միաբանեցուցանեն, ո՞ կարիցէ կալ առաջի դոցա։„

“Ես անտեղեակ էի անքակութեան ուխտի եկեղեցւոյդ ի միմեանց. այլ է զոր մարդ լսէ՝ եւ այլ է զոր տեսանէ։ Դու (Վասակ), որ ճշմարտեալ գիտէիր զպնդութիւնդ մարդկանդ, ընդէ՞ր հաւաստեաւ յանդիման չասացեր ցԹագաւորն։ Քանզի ամենայն նախարարացն աւագ էիր եւ զբոլոր աշխարհ քեզ յանձն արարեալ էր մարզպանութեամբ. ընդէ՞ր զայս գործ իմաստութեան ոչ գործեցեր։ Ապա թէ ոչ՝ յայտ է, թէ դու ի նոցա բանի ես եւ քոյով խորհրդով անցուցին զայս անցս ընդ իս եւ ընդ զօրս։„. ʼԸնդ որ խռովեալ Վասակայ ʻմարզպանին Ստեփ. եպիսկ.
Հայոցʼ վարանէր ի մեծի տրտմութեան։ Մի՛ զի բոց ծնողութեանն ջեռոյց զփորոտիս նորա վասն որդւոցն, որ կային անդ ʻառ Թագաւորինʼ ի պատանդի։

Մի՛ (զի) երկիւղ թշնամւոյն Վարազվաղանայ, որ կայր առ արքային եւ սպասէր Վասակայ մահուն։ Եւ մի՛ զի զրկումն մեծ եւ երեւելի փառացն եւ հայրենի տէրութեանն։ Ցայց երից անհնարին տարակուսանաց տագնապեալ խուճապէր միշտ եւ ոչ ունէր քուն ի գիշերի եւ կամ հանգիստ ի տուընջեան։ Եւ զի սահման է մարմնոյ ի կենցաղումս հանապազ սխալել եւ գթել, եւ սա սխալեաց յերդումն սուրբ աւետարանին. այս ծնունդ էր չար յուսահատութեան, զորոյ զորպէսն դատաստանին Աստուած միայն գիտէ եւ ոչ այլ ոք։„

Եղիշէ. Եւ ՚ետ պատասխանի մոգպետին՝ "սակաւիկ մի երկայնամիտ լեր առէ եւ զխորհուրդս քո, որոց ես ասեմ՝՝ նոցա յայտնեա, մինչեւ ես ինձ դժ ժողովեցից եւ զուխտ եկեղեցւոյդ թերեւս կարացից երկփեղկել։ Եթէ զայդ այդպէս արարից, գիտեմ ապա թէ զհրամանն արքունի կարող եմ կատարել։„ Եւ անդէն ի Միւնեաց աշխարհէն զիւր գունդն ստուարացոյց ի թիկունս օգնականութեան մոգպետին։ Եւ ապա սկսաւ ասել՝ "աղէ դու անգամ մի հրովարտակ ի Դուռն տուր վասն այրուձիոյն որ յԱղուանսն է, զի ի ձմերոց ի Հայս եկեսցեն եւ յորժամ զնոսա ի ձեռին ունիցիմք, չէք ոք որ եղծանել կարէ զհրամանն արքունի։„

Պատասխանի ետ մոգպետն ցմարզպանն. "այդ խորհուրդ դարձեալ իմոց բանիցս ընդդէմ է. յորժամ բռնութեամբ կռուեցուք, աշխարհս ի բաց քանդի եւ անձանց վնաս եւ արքունի մեծապէս զեան։„

Եւ ոչ կամեցաւ ունկն դնել նմա մարզպանն, զի սրտի մօք կալեալ էր զպարսկական օրէնսն։ Սկսաւ այնուհետեւ պատրել զոմանս կարասւով եւ

զմանս ողոքական բանիւք. զռամիկն ամենայն ահեղ բանիւք սպառնացեալ սրտաթափ առնէր, հանապազորդ առատացոյց զռոճիկսն[3] տաճարին եւ բազում նենգութեամբ զանմեղ մարդիկ հրապուրէր եւ յինքն արկանէր:

Զայս ամենայն իբրեւ տեսին սուրբ եպիսկոպոսքն, եւս քաջ յորդորեցան ի նոյն միաբանութիւն. խորհուրդ արարեալ՝ ի գիշերի միում կոչեցին եւ զսպարապետն զօրաց[4] ի խորհուրդն: Հարցին եւ քննեցին եւ ի վերայ հասին մտացն անշարժութեան. եւ վերստին ընկալան զնա յառաքինութիւն. եւ նովաւ որսացեալ զբազումս, որք եկին եւ ժողովեցան գունդ զօրաց բազմաց:

Վասակ սկսաւ բաշխել մոգս ի տունս նախարարացն եւ մեծամեծ ռոճիկս կարգել եւ բռնաբար կնքաւոր[5] մարդկանն տալ ուտել միս յաղանծոյ եւ երկիր պագանել արեգականն: Իբրեւ սկսաւ բազմանալ ընդ ամենայն աշխարհն այնպիսի պղծագործ խառնակութիւն, յանդգնեցան եւս կանայք փշտիպանացն յաւուր կիւրակէի անցուցանել զճրագունս եկեղեցւոյն եւ պատառել զհանդերձս հաւատաւոր[6] կանանց:

Զայս գոյժ աղմկի իբրեւ տեսին միաբան սուրբ եպիսկոպոսքն, զաւետարանն ի ձեռն առեալ՝ հասին ի վանս[7] սպարապետին, ուր ժողովեալ էին զօրքն Հայոց, եւ ասեն. "Աղաչեմք զձեզ զամենեսին սուրբ աւետարանաւս, եթէ ձերով խորհրդիւ գործէ զայն անօրէնութեան չարիս մարզպանն եւ մոգպետն, նախ զմեր պարանոցս հատէք եւ ապա յեկեղեցին ձեռնարկեցէք: Ապա եթէ առանց ձեր կամաց նոքա զայն չարն գործեն, այսօր խնդրեսցի վրէժ այդ ի նոցանէ:,,

**Ղազար.** Ապա իմացեալ թէ կարի հռչակքն իրք ապստամբութեանն եւ ի կարի հեզգալոյն մեծամեծ գործէքն մնայք, ժողովեալ զպատուական եպիսկոպոսս եւ զականաւոր երիցունս եւ զաւագ տանուտեարսն Հայոց եւ զսեպուհսն առանձինն ասէր յայտնապէս՝ թէ «մինչեւ ցե՞րբ հանդուրժեմք թագուցանել զճշմարտութիւնն եւ կորնչիմք:» Մի ոմն յՈստանեայ տանէն, որում անուն էր Ջանդաղան, լսէր յոմանց զխորհեալն Հայոց, եւ երթեալ վաղվաղակի նմանւոյն իւրում Վասակայ. (որոյ բանից) իրազգած եղեալ աւագ նախարարքն՝ կալեալ զնա ի գեօղն, որ կոչի Արծակ[8], տարեալ կապեցին ի միւսում եւս ի գեօղ՝ յանուանեալ Բերդկունս[9] ի նմին Բագրեւանդ գաւառի. զոր եւ ոչ յետ բազում

**Եղիշէ.** աւուրց քարկոծեալ սատակեցին: Եւ ահ մեծ անկաւ ի վերայ ամենեցուն։ Ամենեքեան ի նախանձ բարկութեան բորբոքեցան. ընթացան վաղվաղակի ի զէնս իւրեանց· վառեցան կազմեցան զգիշերն ամենայն, եւ ընդ ծագել արեգականն զգունդն յերիս մասունս բաժանեալ ի բանակն[10] արկանէին։ Գունդն առաջին յարեւելից կուսէ. եւ գունդն երկրորդ յարեւմտից կողմանէ. եւ գունդն երրորդ ի հիւսիսոյ կողմանէ — շուրջանակի ի մէջ առեալ փակեցին զբազմութիւն բանակին եւ զբազումս կոտորեցին եւ զեւս բազմագոյնս կապեցին զերեւելի մարդիկ եւ արկին ի բերդս ամուրս ընդ իւրեանց իշխանութեամբ։

**Ղազար.** Եւ ապա յայտնապէս ժողովեալ միաբանութեամբ առ տէրն Մամիկոնէից Վարդան, հանդերձ նովաւ մտին թափ զգլոց հրամանին բոլորեքեան առ իշխանն Սիւնեաց Վասակ առ մարզպանն Հայոց

Եւ յայտնեալ նմա միաբան ամենեցուն զխորհուրդն, թէպէտ ջանայր յապաղել նմա՝ մի՛ վասն որդւոցն իւրոց, որք ի դրանն էին, եւ դարձեալ՝ զի եւ կեանքն իւր իսկ ի խնամն չարին մէտ էին հանապազ. սակայն ի հարկէ յանձն առեալ միաբանէր ընդ նոսա։ Բերել դարձեալ հրամայէին նախարարքն Հայոց սուրբ եպիսկոպոսացն եւ երիցանցն զաւետարան ուխտին սրբոյ. եւ երդուեալ ամենայն բազմութիւն զօրացն ազատացն եւ անազատացն հանդերձ իշխանաւն Սիւնեաց Վասակաւ, հաստատէին զերդումն. եւ որոց մատանեաւ չեւ եւս էր կնքեալ զաւետարանն՝ կնքէին. եւ համբարձեալ զձեռս ընդ երկինս ասէին. “Տէր ընկալ զմեզ որպէս զորդիս ուխտոյդ. մեղաք յերկինս եւ առաջի քո. շնորհեա մեզ բարեխօսութեամբ լուսաւորիչ առաքելոցն, վաստակովք եւ սուրբ նահատակին Գրիգորի նոցին նմանոյն եւ գործակցի՝ զթողութիւն մեղաց մերոց. եւ որպէս հեղեր դու զարիւնդ քո սուրբ ի վերայ մեղաւորաց, պարգեւեա եւ մեզ հեղուլ զարիւնս մեր ի վերայ խոստովանութեանս այսորիկ եւ իւրաքանչիւր թողութեան մեղաց։„ Եւ գրեալ զայս ամենայն եւ կնքեալ նախ՝ մատանեաւ իշխանին Սիւնեաց Վասակայ եւ ապա՝ մատանեօք ամենայն տանուտէրացն Հայոց եւ աւագ սեպհացն, եւ եդեալ ի սուրբ աւետարանի երդմանն՝ ետուն ցպատուական եպիսկոպոսունս եւ ցաւագ քահանայութիւնն, որ էին անդ. եւ կատարեալ զայս դիմեցին մեծաւ ցնծութեամբ եւ հոգեւոր երգովք ի տուն Տեառն եւ երկրպագեալ միոյն միայնոյ ճշմարտին Աստուծոյ կատարեցին զաղօթսն։ Եւ զօրացն բազմութիւն դիմեցին ի տուն մոխրանոցին չմեալով ընդ աւագացն

Հրամանի եւ առեալ զկրակարանն վարեցին ի ջուրսն զկրակսն՝ որպէս ի գիրկս եղբօր՝ ըստ ասելոյ սուտ վարդապետացն Պարսից, զմոգուցն բազմութիւն պահել առ օրն հրամայեցին զգուշութեամբ եւ ի վաղիւն ի ծագել արեւուն սպանին ի գիւղն Ջարեհաւան[11]։

Եղիշէ. Եւ կատարեալ զայս ամենայն դադարեցին զաւուրս տօթոյն։ Իսկ որք եկեալ էին յաւարի առնուլ զսուրբ գանձս եկեղեցւոյն, ակամայ եդին զանձինս եւ զաւար իւրեանց առաջի սուրբ եպիսկոպոսացն եւ ամենայն զօրացն եւ եղծեալ ապականեցաւ հրամանն թագաւորին։

Աղաղակէին եւ ասէին արք եւ կանայք եւ ամենայն ռամիկ բազմութիւնն. պատրաստ եմք ի հալածել եւ մեռանել յամենայն նեղութիւնս եւ ի չարչարանս վասն սուրբ եկեղեցեաց։ Ո՛չ երբեւէր այնուհետեւ առաւել տէր քան զծառայ եւ ո՛չ ոք քան զոք նուազեալ ի յարութենէ. առ հասարակ զմի զինուորութիւն զինուորեցան, միով գօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք եւ կանայք։ Այս բարբառ ստէպ ստէպ ընթանայր՝ «քաջութեամբ միայն մեռցուք, զանուն եւ զոգիս եւեթ ժառանգեսցուք։»

Դարձեալ յարձակեցան ի վերայ բերդիցն եւ աւանաց, զոր ունէին պարսիկքն ի տեղիս տեղիս, տապալէին քանդէին զբնակութիւնս նոցա՝ զմեծ Արտաշատ[12] աւանաւք իւրովք, զԳառնի քաղաքն,[13] զԱնին[14], զԱրտագերս[15] եւ զայլս։ Տապալէին քանդէին զշինուածս նոցա եւ այրէին կիզուին զտունս պաշտօնարկի եւ զպաշտաման կրակի. յամենայն տեղիս հեթանոսացն զփրկական խաչն Քրիստոսի կանգնէին եւ յաւուր հաստատեալ խնդայր ամենայն երկիրն առ հասարակ։

# ԳԼՈՒԽ Թ.

## Երթ Հայոց յԱղուանս:

«Դուք որ կարողդ էք՝ զտկարութիւն տկարացն բարձէք:»

Յետ աւուրց ելին եհաս հազարապետն Աղուա- Եղիշէ.
նից սուրբ եպիսկոպոսաւ աշխարհին, մեծաւ տագ-
նապաւ փութացուցանէր զզօրսն ասելով՝ գունդ
Պարսից, որ էր ի կողմանս աշխարհին Հոնաց եկն
եմուտ յաշխարհս մեր եւ այլ այրուձի որ ի դրանէ
եւ այլ երեք հարիւր մոգ վարդապետ ածեալ ընդ
իւրեանս՝ պառակտեցին զաշխարհն եւ կամէին յե-
կեղեցին ձեռն արկանել. եւ հրամանաւ թագաւո-
րին սախպէին եւ ասէին՝ եթէ կամօք յանձն չառ-
նէք, հրաման ունիմք ի գեօղս եւ քաղաքս շինել
ատրուշանս եւ կացուցանել մոգս եւ մոգպետս օ-
րէնսդիր ամենայն աշխարհիդ:

Գունդն Հայոց իբրեւ լուաւ զայս, ոչինչ լքան
ի քաջութենէն եւ միաբան քաջալերս տուեալ
’արձակեցին զնոսա, զի առ ժամանակ մի խաբէու- Մովսէս կաղ.
թեամբ կալցեն զնոսա, զի մի ձեռնարկեսցեն յուխտ
եկեղեցւոյ մինչեւ ելս խնդրեսցեն:

Եւ վաղվաղակի նամականի արարեալ առ կայսրն Ղազար.
եւ առ ամենայն աւագանի դրանն Յունաց. առ
բդեշխն Աղձնեաց եւ առ իշխանն Անգեղ տան, ի
Ծոփս եւ Հաշտեանս եւ յԵկեղեաց եւ առ մեծ
սպարապետն Անտիոքայ.[1] եւ պատրաստեալ զիշ-
խանն Ամատունեաց Վահան որպէս զայր մտացի եւ
խորհրդական, եւ սուրբ սեպուհն զՀմայեակ զեղ-
բայրն Վարդանայ, եւ զերանելին Մեհրուժան զեղ-
բայր սրբոյն Աղանայ[2] ի տոհմէն Արծրունեաց ’եւ Եղիշէ.

զմի ոմն ի մեծ նախարարացն ի տոհմէն Գնունեաց Ատոմ առաքեցին յերկիրն արեւմտից խնդրել օգնութիւն եւ եթէ նա[3] կամեսցի՝ նմա մտանել ի ծառայութիւն:,,

Ղազար. Որք երթեալք յանդիման եղեն Թագաւորին Թէոդոսի, որոյ լուեալ զպատճառ նոցա երթիցն՝ յանձն առնոյր օգնել նոցա գնդիւ. եւ մինչդեռ պատրաստէր զիրս խոստմանն, հասեալ վախճան սորայն՝ վճարէր ի կենցաղոյս, եւ Թագաւորէ փոխանակ նորա Մարկիանոս, որոյ եւ տեղեկացեալ զպէտս խնդրոյն Հայոց, հարցանէր զաւագս դրանն. պատասխանի տուեալ Անատոլեայ, որ ի ժամուն սպարապետ էր Անտիոքայ, եւ Փղորէնտի ուրումն առն ասորի ազգաւ, որ էր աւագ դրանն Թագաւորին եւ ասեն. “մեզ ոչ թուի հաճոյ արհամարհել զուխտ, զոր դրեալ եւ կնքեալ է առաջին Թագաւորացն եւ պատերազմաւ ի բաց հանել զաշխարհ մի ի ծառայութենէ Թագաւորին իւրեանց. այլ եւ զելս անյայտ իրացդ պարտ է ածել զմտաւ, զոր ոչ ոք կարէ գիտել թէ որպէս վճարեսցի: “Այսպէս

Եղիշէ. կասեցուցին զմիտս Թագաւորին, (որ) փութացաւ եմուտ յուխտ հաշտութեան՝ ձեռնթափ լինել ի զօրացն Հայոց ամենայն օգնականութեամբ:

Այսպէս հատաւ օգնականութիւն յուսոյ նոցա (Հայոց) ի մարդկանէ:

Ղազար. Եւ որք երթեալն էին յաշխարհն Յունաց՝ իբրեւ տեսին թէ ոչինչ օգնեցան, փութային գոնեայ ընդ ընկերս իւրեանց ըմպել զմարտիրոսութեան բաժակն. զի յապաղեալ պատասխանւոյն (Յունաց) գործ պատերազմին Հայոց եւ Պարսից կատարէր:

Եպիսկոպոսքն քաջալերել սկսան զանձինս եւ Եղիշէ.
զօրսն Հայոց. Հայէին յիւրեանց սակաւութիւնն եւ
յերկոցունց թագաւորացն միաբանութիւնն, ոչինչ
վատասրտեալ ըստ առաջին ուխտին խիզախէին եւ
ասէին. պատրաստ եմք ի սպանանել եւ ի մեռանել.
դիւրին է Աստուծոյ սակաւուք զբազմաց գործ գոր-
ծել եւ անարգօք զմեծամեծ իրս կատարել:

Թէպէտ եւ ոչ ունէին թագաւոր առաջնորդ
եւ ոչ արտաքուստ օգնական զօր յօտարաց, սակայն
անձանց առաքինութեամբ եւ սուրբ վարդապետաց
միաբանութեամբ համագունդ յիւրաքանչիւր տա-
նէ ի մի վայր գային վաղվաղակի. զամենայն զօրսն
յերիս գունդս բաժանէին. զգունդն առաջին տային
ցՆերշապուհ Ռմբոսեան պահապան աշխարհին մերձ
ի սահմանս Ատրպատական աշխարհին. զգունդն
երկրորդ ի ձեռն Վարդանայ զօրավարին Հայոց՝ ան-
ցանել ընդ սահմանս Վրաց ի վերայ մարզպանին
Ճորայ*, որ եկեալ էր աւերել զեկեղեցիսն Աղուա-
նից. զգունդն երրորդ տային ի ձեռս Վասակայ իշ-
խանին Սիւնեաց, որ ընտրեաց ընդ իւր զիշխանն
Բագրատունեաց, զիշխանն Խորխոռունեաց, զիշխանն
Ապահունեաց, զիշխանն Վահեւունեաց, զիշխանն
Պալունեաց, զիշխանն Գաբեղէնից, զիշխանն Ուրծայ
— զօրօք իւրեանց. եւ զայլ բազում զօրս յարքունի
տանէն արկ յինքն եւ զսեպուհս ոմանս յայլմէ տոհմէ:

Եւ սպարապետն Հայոց Վարդան առեալ ընդ Ղազար.
իւր ի տանուտէրացն Հայոց, եւ այլ սեպուհք եւ
բազումք ի զօրացն Հայոց եւ գունդք ի զօրացն
մարզպետական պրուձիոյ. եւ հրաժարեալ յիշխա-
նէն Սիւնեաց Վասակայ եւ յայլ ծնացելոցն ընդ

* Մով. Կաղանկատուացի. — Չողայ:

նմա աւագանւոյն՝ ողջախորհուրդ մտօք գնային ի գործ պատերազմին: Եւ մտեալ ի սուրբ եկեղեցի երկիրպագանել Տեառն Աստուծոյ ամենակալի. առեալ զսուրբ աւետարանն եւ զնշան կենսատու խաչին ողջունէր՝ դնելով անդ ի վերայ բաց աչացն եւ ճակատու. զայն առնէին ջերմեռանդն սիրով եւ որք ընդ նմայն էին ամենեքեան:

Եւ իշխանն Սիւնեաց Վասակ վաղվաղակի գաղտ-
դեսպանս առնէր առ Միհրներսեհ եւ առ Նիխո-
րական Սեբուխտ* եւ առ այլ աւագս, զորս արա-
Եղիշէ. րեալ էր Միհրներսեհի ի վերայ Հայոց: ՚Ահա քա-
կեցի (ասէ) զմիաբանութիւն ուխտիս Հայոց եւ ընդ
երիս կողմանս զգունդն քակեալ բաժանեցի. եւ
զայլ ամենայն այր կռուոյ ցրուեցի ընդ ամենայն մի-
ջոցս աշխարհի. բայց զգունդն երրորդ արարի յԱ-
ղուանս. եւ համարձակ ընդ առաջ նորա տալ պա-
Ղազար. տերազմ: ՚Դուք, ասէ, անհոգ լերուք յեկելոցդ
ընդ Վարդանայ ի վերայ ձեր, վասն զի շատք այն
են զորս ես աստէն պահեցի առ իս եւ դա յոյժ
Եղիշէ. սակաւուք է եւ ոչ բազմօք: ՚Զայս գրեաց մարզ-
պանին Սեբուխտ. նա ստուգեալ եթէ սակաւաձեռն
գնդաւ գայ սպարապետն Հայոց ի վերայ նորա՝ կու-
տակեաց զամենայն բազմութիւն զօրու իւրոյ եւ
փութանակի անցանէր ընդ մեծ գետն Կուր եւ պա-
տահէր նմա հանդէպ Խաղխաղ[4] քաղաքի:

Քաջն Վարդան եւ ամենայն զօրքն իբրեւ տեսին զբազմութիւն գնդին հեթանոսաց, թէպէտ եւ կարի նուազունք էին. ոչի՛նչ զանգիտեցին, այլ միաբանեցին եւ ասէին. "Տէ՛ր, զինու եւ ասպարաւ քով օգնեա՛ մեզ, զի ծանիցեն ամենեքեան, եթէ ի ձեռս

* Մով. Կաղանկ. — Միհրբուխտ:

քոյ է յաղթութիւն եւ պարտութիւն, եւ մեք պատրաստ եմք ի մեռանել վասն քո սիրոյդ եւ ճշմարտութեանն։,,

Ի ժամ մարտին կարգէր զիւր գունդն ըստ բաւականին այրուձիոյն. երիս յառաջս բաժանեալ՝ տայր ի ձեռս իւրաքանչիւր զօրագլխի. որում աջոյ կողմանն կացուցանէր զօրագլուխ զԱրշաւիր Կամսարականն; որ էր փեսայ զօրավարին Հայոց Վարդանայ, ունելով զդուստր նորա ի կնութեան, եւ նիզակակից տայր նմա զՄուշ զաւագ սեպուհ յազգէն Դիմաքսեանից. եւ զահեակ կողմն տայր ի ձեռն Խորենեայ Խորխոռունւոյ եւ զօրաւիգն ընդ նմա կացուցանէր զՀմայեակ Դիմաքսեան. եւ ինքն սուրբ զօրավարն Վարդան պատրաստէր զինքն միջոյ տեղւոյն յարձակմանն։ Եւ այսպէս յօրինեալ զճակատն եւ յԱստուծոյ խնամս ապաւինեալք յարձակեցան ի վերայ թշնամեացն, եւ զաջ թեւն բեկեալ զձախոյ կողմամբն արկեալ ընդ երեսս դաշտին փախստական առնէին. ամենեքեան առհասարակ այր զախոյեան իւր յերկիր կործանէր։ Յորս նախագոյն յառաջեալ ի տեղի մարտին Կամսարականն Արշաւիր եւ Մուշ, որք յանդիմանութենէ տեղեացն դիպեցան թանձրախոր սաստիկ մօրից եւ ի յառաւելապէս դիմեցմանէ երիվարացն անկեալք ի տիղմն հանդերձ երիվարօքն իւրէին. անդ կատարեալ պսակէր երանելի սեպուհն Դիմաքսեանից Մուշն ի խորականայ. իսկ Կամսարականն իջեալ յերիվարէն ի հետիոտս սպանանէր զՎուրկն՝ զեղբայր Լփնաց թագաւորին. եւ ի բաց ձգեալ զերիվարն ի սաստիկ խոր տղմոյն, ուր եւ մոյկ մի զերծեալ յոտանէն՝ թաղեալ մնայր անդէն ի մօրին. եւ ինքն Կամսարականն միամոյկ

տղմաթաթաւ հանդերձ ամենայն զինուն հանել զերիվարն ի ցամաք անվեհեր քաջաբար յերիվարն հեծանէր եւ զթեւ իւրոյ կողման թշնամեացն փախըստական առնէր։ Եւ տեսանէր զերանելի սպարապետն Հայոց հանդերձ ամենայն Հայոց գնդաւն զի ածէին[5] առաջի իւրեանց զբազմութիւն զօրացն Պարսից. յորոց զկէսն սրովք իւրեանց դիաթաւալս յերկիր կործանէին եւ զկէսն գետավէժս արարեալ հեղձամղձուկ առնէին եւ զայլսն ի Նոցանէ դաշտացն
Մովսէս Խոր. եւ անտառախիտ մայրեացն 'առ խորագոյն դարիւք Լուբնաս[6] գետոյ, ցրուեալս վտանէին. Իսկ ոմանք յաւագորերոյ Պարսիցն ելեալք ի Նաւս յայնկոյս գետոյն մեծի փախստեայք լինել ճեպէին. որ եւ ըզկամսարականն Արշաւիր զիշխանն Արշարունեաց տեսեալ փութացուցանէր զօրավարն Հայոց զկնի փախստէից Նաւացն Նետաձիգ լինել՝ ի հաստատաձգութիւն եւ յանվրէպ դիտողութիւն առնն վըստահեալ։

Իսկ կամսարականն Արշաւիր խոցեալ զնաւավարսն եւ զայլս բազումս ի Նաւսն կարեվէրս առնէր, եւ բազումք ի Նաւավարացն եւ գլխաւորացն Պար-
Եղիշէ. սից գետասոյզ եղեալ կորնչէին. 'Եւ ոչ գտանէր ոք ամենեւին ի Նոցանէ ապրեալ եւ թագուցեալ յանտառախիտ մայրիս դաշտացն։ Բայց մի ոմն ի զօրականէ թշնամեացն մազապուր պրծեալ ի պատերազմէն գոյժ տանէր ի միացեալ բուն բանակն։ Զօրքն Հայոց ժողովէին զբազում աւար բանակին՝ բազում արծաթ եւ ոսկի եւ զզէնս եւ զզարդս զարդ արանց եւ զքաջ երիվարաց։ Յարձակէին ի վերայ բերդիցն եւ քաղաքացն, զոր ունէին Պարսիկքն յԱշխարհին Աղուանից եւ զերամս մոգացն

դնէին գէշ թռչնոց եւ գազանաց, ազատէին զեկե-
ղեցիսն յանհնարին նեղութենէն։ ’Եւ այսպէս շնոր- Ղազար.
հեալ նոցա զյաղթութիւն վերին օգնականութեանն՝
դառնային ի բանակս իւրեանց. եւ դադարեալք ան-
գէն ի տեղւոջն զօրն զայն՝ ի վաղիւն չուեալք ան-
ցանէին ընդ գետն Կուր։

Բազումք ի նախարարացն Աղուանից եւ յամե- Եղիշէ.
նայն շինականացն ’որք ցրուեալ էին յամուրս լե- Մովսէս Կաղ.
րանց Կապիկու[7] ’իբրեւ տեսին զյաջողութիւն գոր-
ծոյն, գային խառնէին ի զօրս նոցա. գնային ի վերայ
պահակին Հոնաց[8] ’որ է ընդ մէջ իշխանութեանն Ղազար.
Աղուանից եւ Հոնաց, քանդէին զպահակն եւ կո-
տորէին զզօրսն որ ի ներքս բնակեալ էին, եւ ըզ-
դուռնն տային ի ձեռս Վահանայ,* որ յազգէ Թա-
գաւորացն Աղուանից. դեսպանս արձակեցին յաշ-
խարհն Հոնաց ընդ նոսա ուխտ հաստատել՝ անքա-
կութեամբ ունել զմիաբանութիւնն. ’իսկ նոքա (Մովս.) Կաղան.
(Հոնք) իսկոյն հասին ի տեղին եւ ականատեսք լինէին
յաջողմանն. յանձն առին զերդումն քրիստոնէու-
թեան պահել ընդ նոսա հաստատուն միաբանու-
թիւն։

* Մովսէս Կաղանկատուացին ասում է. "Վարդանայ ու-
մեմն յազգէ Թագաւորացն Աղուանից։,,

# ԳԼՈՒԽ Ժ.

## *Նենգութիւն Վասակայ:*

«Ամենայն թագաւորութիւն բաժանեալ
յանձն՝ աւերի։» ՂՈՒԿ.

ագաթ. Այլ մինչդեռ այս ամենայն կատարէր ըստ կա-
մաց նոցա, յանկարծակի դեսպան հասանէր առ
Վարդան ասելով թէ «արդ՝ առեալ անօրէնն Վա-
սակ ուխտին Աստուծոյ. նոյնպէս եւ մնացեալքն
անդէն առ նմա աւագանին Հայոց յետս կացեալ
ընդ նմա ապստամբեցին, դեսպան արձակեցին ի
Պարս եւ նամակօք ուխտադրեցին ընդ նոսա եւ
զԲերդեան[1] ամրոցացն Հայոց ի բաց կալան եւ
զիւրեանցն բերդակալս արարեալ զգուշացուցին.
եւ զորդիս տոհմին Մամիկոնէից եւ Կամսարականաց
եւ զայլոց տանուտէրացն ժողովեալ յիւրաքանչիւր
տեփ. փիւն. դղեակաց նենգաւորն Վասակ 'ետ ածել* առ ինքն
եւ ամրացոյց յանառիկ ամուրս աշխարհին Սիւ-
գիրք. նեաց.» 'աւերեալ զձմերոցս[2] արքունի, որ կայանք
զօրացն էին, եւ զնահանգն Արտաշատու՝ զԱրտա-
շատն ինքնին գլխովին եւ հրձիգ արարեալ եւ զա-
մենեցուն ձեր ընտանիս մերժեալ յիւրաքանչիւր
բնակութենէ. ձեռնարկեալ եւ ի սուրբ եկեղե-
ցիսն. գերի վարեալ զընտանիս քահանայից եւ զնո-
սին կապեալ եւ եդեալ ի բանդի. գունդն, որ ի
կողմանս Ատրպատականի, ոչ ժամանեաց ձեռն տալ
եւ դեռ պահեն ընդ ձեզ զուխտ միաբանութեան.
բայց այն որ ընդ նմայն էին, բազումք զհետ մոլո-
ագաթ. րեցան նորա ամբարշտութեանն։» 'Եւ լուեալ զայս

* Ղազարն ասում է. «տայ տանել առ թագաւորն Պար-
սից։»

ամենայն սպարապետին Հայոց Վարդանայ հանդերձ
նախարարօքն եւ զօրուն որ ընդ նմայն էին չտրտմել
ոչ կարէին. եւ զանձինս եւ զգերեալ տղայսն ի
պահպանութիւն Ամենահնար Աջոյն յանձն արար-
եալ չուեցին միաբան ամենեքեան յաշխարհէն Ա-
ղուանից ՛եւ հասանէին՛ յերկիրն Հայոց ի գաւառն
Այրարատոյ 'յաւուրս երեսուն,, եւ անդ զաւուրս Մովսէս կաղ.
ձմեռայնոյն դադարեալք՝ փութային զաւուրս գար-
նային ամսոյն տեսանել եւ յօր իւրեանց նահատա-
կութեան հասանել*. քանզի ոչ եւս ինչ այլ բնաւ
ածէր զմտաւ ոք զյաղթութիւն կամ զպարտութիւն.
*եւ յետ ամսօրեայ աւուրց եղեւ խմբումն մեծ պա- Ստեփ. եպիսկ.
տերազմին։

Ազդ եղեւ ուրացելոյն Վասակայ եւ իշխանացն Եղիշէ.
քաջութիւն գնդին Վարդանայ եւ միաբանութիւնն
Հոնաց. զգիշեր մի օգնական գտեալ նորա՝ փախըս-
տեայ անկանէր յամուրս իւրոյ աշխարհին. եւ այն-
պէս տագնապաւ մերժեցաւ, ՛զի՛ զգերի եւ զաւարն,
զոր առեալ էր յԱյրարատ գաւառէ ՛եւ՛ զիւրն
եւս եթող եւ փախաւ։ Քանզի ժամանակ ձմերայնոյ
էր եւ զռոճիկս թշնամեաց գնդին հարեալ էր, ոչ
կարէր ՛Վարդան՛ զմիով տեղեաւ համագունդ ըզ-
զօրսն գարմանել. այլ սփռէր ընդ գաւառս գաւառս
աշխարհին, պատուէր տայր պատրաստական լինել
կազմութեամբ առ ժամանակ գարնայնոյն. եւ զսա-
կաւս յաւագ նախարարացն գործակից իւր թողեալ,

* Ստեփանոս եպիսկոպոս Սիւնեցին ասում է. «Մեծաւ յաղթութեամբ եկեալ ի պատերազմէն որ ընդ Աղուանս այլովք ազատօք խորհէին ի միասին զաւուրս ձմերայն հնարս ինչ։ Եւ մինչ թափեցան յամենայն յուսոյ՝ զմահ ընտրեցին լաւ քան զկեանս. եւ անցեալ յԱյրարատ գաւառ. յետ ամսօրեայ աւուրց եղեւ խմբումն մեծ պատերազմին, յորում պսակեցաւ սուրբն Վարդան։

ի վերայ ունելով զԹագաւորանիստ տեղիսն, գունդս գունդս արձակէր յաշխարհն Սիւնեաց. առնոյր եւ աւերէր զբազում գաւառս եւ այնպէս ի նեղ արկանէր զնա 'զՎասակ' եւ զամենայն զօրսն, որ ընդ նմա, զի զէշս եւ զձիս մեռելոտիս առ սովոյն անխտիր ուտէին: Եւ բազում հարուած հասուցանէին ի վերայ ուրացելոյն, մինչեւ ժողով սուրբ եպիսկոպոսացն եւ ամենայն ուխտ քահանայութեանն դառնապէս արտասուս իջուցանէին ի վերայ չարաչար վշտացելոյն:

Ամենայն եպիսկոպոսքն եւ երիցունք պատուէր հրամանի տուեալ աշխարհին զողջոյն ամիսն քաղոց[3] պահօք եւ աղօթիւք առնել խնդրուածս առ Աստուած. եւ զամն յառաջին կապելոց Պարսկաց ածեալ զառաջեաւ նախարարացն, խօսէին ընդ նմա եւ ցուցանէին զամենայն վնասն՝ աշխարհաց աւերելն, զօրացն արքունի հարկանելն. ցուցանէին նմա զխաբէութիւն ապստամբին Վասակայ, որ Հայոց բանիւ[4] խաբեաց զԹագաւորն յանձն առնուլ զմոգութիւն: Արձակեցին զնա հրեշտակութեամբ ի հնարս հայթայթանաց (Թերեւս կարասցեն զեղբարս իւրեանց ի նեղութենէն գողանալ):

Երթեալ այրն պատմեաց զայս ամենայն յականջս Թագաւորին: Հայեցաւ եռեւս 'Թագաւորն' զինքն լի տկարութեամբ: Գիտաց՝ եթէ զամենայն, զոր կամի առնել ոչ կարէ կատարել. սկսաւ քաղցր եւ աղերս բանիւք խօսել ընդ ամենեսեան եւ ասել՝ "զի՞նչ ինչ վնաս գործեալ է իմ. ո՞ երբէ՛ք նեղեաց, պնդեաց դարձուցանել ի մի օրէնս մոգութեան. մանաւանդ վնասն օրինաց քրիստոնէութեանն, 'զոր' զոյգ եւ հաւասար համարիմ դենիս

մազդեզանց. տեսէ՛ք, զի ետուք գործել ինձ զոր ինչ ոչ կամէի։„ Զայս ամենայն խօսէր եւ զմնաս յանցանացն արկանէր զմոգպետաւն եւ զմոգօքն. սակաւք ի Նոցանէ ասէին. "Այո՛, արքա՛յ քաջ, այդ այդպէս է որպէս ասացերդ, եւ արդ կարես զամենայն ուղղութեամբ նուաճել. զի տուեալ է քեզ աստուածոցն, զի զամենայն, զոր եւ կամիս, կարես առնել։ Երկայնամիտ լեր եւ համբերութեամբ թողացո՛ մարդկանդ անդրէն զքրիստոնէութիւն, եւ դոքօք զապստամբսն ածցես ի հաւանութիւն։„ Հաճոյ թուեցան բանքն առաջի թագաւորին։ Այն օր հրամայէր կալ յօրէնս քրիստոնէութեանն. հրովարտակս առաքէր վասն քրիստոնէից. "Եթէ ի կապանս ոք կայցէ, 'ասէ', արքունի հրամանաւ արձակեալ լիցի, եւ եթէ ինչք ուրուք յափշտակեալ իցեն, դարձցին անդրէն. այնպէս եւ երկիրք, թէ հայրենիք, թէ պարգեւականք եւ եթէ քսակագինք, եւ հանեալ ուրուք իցէ, հրամայեցաք, զի դարձցին։„ Խնդրէր ի Նոցանէ վկայութիւն հաւատարմութեան եւ երդմամբ յուխտ մտանէր, եթէ "Ոչինչ յիշեցից զքէն վրիժուցն. որպէս ունէիք յառաջ ճշմարտութեամբ զօրէնս ձեր, այսուհետեւ առաւել կալարուք, բայց միայն ի ծառայութենէ մերմէ մի՛ ելանէք։„ Իբրեւ ստուգեաց, եթէ Հոռոմք ի բաց կացին ձեռնտու լինել քրիստոնէութեանն, դարձեալ յառաջին կարծիս մոլորութեանն շրջեցաւ։

Իսկ Հայք զարմացեալ ընդ թերի խորհուրդսն ասէին. "Քանի՛ լիրբ է խորամանկ խաբէութիւն նորա. զի երկիցս եւ կերիցս զփորձ առեալ մերոյ անքակ միաբանութեանս, տակաւին կամի զմեզ լքու-

ցանել. զո՞ր բարեգործութիւն տեսաք առ ամենայն եկեղեցիս, որ են յաշխարհին Պարսից։ Զի որ ինքն իւր չար է, այլում բարի ո՛չ կարէ լինել, զի չի՛ք յանիրաւութենէ արդարութիւն, ի ստութենէ ճշմարտութիւն։ Ո՛չ պատրիմք իբրեւ զտղայ եւ ո՛չ մոլորիմք իբրեւ զանտեղեակս եւ ո՛չ խաբիմք իբրեւ զտգէտս, այլ պատրաստ եմք ամենայն փորձութեանց, զի յորում սկսաք ի նմին եւ կատարեսցուք քաջութեամբ եւ ոչ վատութեամբ. ի վերայ պարգեւաց եւ բարիս առնելոյ մեզ՝ զճշմարիտ կեանս կամիք հանել ի մէնջ, որում չի՛ք հնար եւ այլ մի՛ եղիցի։„

“Որ հայհոյէրն զՔրիստոս եւ ուրացուցանէր ի նմանէ զհաւատացեալս, եւ որ երդնոյր ի սնոտի պաշտամունս իւրոյ մոլորութեանն, անցուցանել զամենայն չարչարանս ընդ պաշտօնեայս եկեղեցւոյ, արդ եկեալ գողանալով գոհութիւն մատուցանէ եւ այնու կամի զամենայն չարութիւն իւր ի մեզ հեղուլ։ Ո՛չ այդմ հաւատամք եւ ո՛չ զսուտ հրամանդ յանձն առնումք։„

Նա ՙՅազկերտ՚ քակեաց յինքենէ զծերն լի դառնութեամբ. գունդս գումարէր եւ բազում երամակս փղաց յղէր ընդ նմա. հասեալ մերձ ի սահմանս Հայոց, մտանէր ՙծերն՚ Միհրներսեհ ի քաղաքն ի Փայտակարան առ պատրաստութեան իւրոց չարահնար խորհրդոց։ Սա էր իշխան եւ հրամանատար ամենայն տէրութեանն Պարսից, որում անունն էր Միհրներսեհ։

Միհրներսեհ՝ քանզի գիտէր զամբարշտութիւնն Վասակայ, յղէր եւ կոչէր զնա առ ինքն. եւ ստուգէր զիւր հաւատարմութիւնն եւ զՀայոց ան-

իրաւ ապստամբութիւնն. նա թէպէտ եւ յոյժ դարովէր զնա, այլ արտաքին դիմօք մեծարեաց եւ հայեցոյց զնա ի կարծիս մնոտիս՝ իբրթէ անկ իցէ նմա հասանել մինչ ի թագաւորական վիճակն,[5] բայց միայն հնարս իրացն խնդրեսցէ եւ թագաւորին կամք կատարեսցին յաշխարհին։ Իբրեւ յանձն էառ ՛Վասակ՛ երթալ զկնի կամաց նորա՝ գողաբար սողեցաւ եւ եմուտ իբրեւ զօձ ի մէջ ամբացելոցն. էառ եւ եհան յայտնութեամբ զբազումս յազատաց եւ զբազմագոյնս իշխանաց եւ զայլ ոմանս յանուանեալ քահանայից։ Եւ բովանդակ զիւր աշխարհն ապստամբեցոյց յուրացութիւն։

Նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ ոչ երբէք Դաւաճ.
դադարէր գրել նամականի առ իշխանս եւ շինականս եւ քահանայս աշխարհիս Հայոց. ցուցանէր իմն բերեալս ի դրանէ ուխտս սուտս եւ վկայութիւնս ընդունայնս թէ արքայից արքայ զքրիստոնէութիւն շնորհեաց աշխարհի եւ զմեաս կատարածի մոգուց չխնդրէ. եւ զապստամբութենէն ասէ թէ բնաւ եւ յիշեմ իսկ ոչ, միայն թէ ի բաց դառնայք ի խրատուէ եւ ի բանից Վարդանայ եւ մի կորնչիք ընդ նմա. եւ զինքենէ գրէր ուխտանենգն Վասակ թէ ես լինիմ միջնորդ այսմ ամենայնի եւ անմեաս պահեմ զաշխարհս Հայոց. եւ տուեալ ի ձեռս սուտ քահանայից, տայր շրջեցուցանել ընդ աշխարհն Հայոց։„

Երէց մի Ջանգակ անուն, երէց մի Պետրոս ա- Երէցք.
նուն, սարկաւագ մի Սահակ անուն* սուրբ աւետարանաւն երդնուին եւ ասէին՝ եթէ "Ի թագաւորէն

* Ըստ Ղազարու՝ երեք երէց էին՝ Ջանգակ, Սահակ ձայնող, Պետրոս երկաթի։ Սահակն եւ Պետրոս ի Սիւնեաց գաւառէ։

շնորհեսցի ամենեցուն քրիստոնէութիւնդ„ եւ խորամանկութեամբ զբազումս ի սուրբ միաբանութենէն ածէին խառնէին ի գունդս ուրացողացն։

Գրեաց ՙՎասակ՚ եւ եցոյց մեծ հազարապետին մեծապէս պարծելով՝ որպէս աշակերտեաց ի մոլորութիւն խաբէութեան. եւ բաժանեալ եւ երկցեղս երեւեցոյց զզօրսն Հայոց։ Քակեաց եւ զմիաբանութիւն աշխարհին Վրաց ի Հայոց եւ Աղուանից եւ Աղձնեացն։ Ըստ մեծի չարութեան նորա՝ առաւել եւս ժամանակն եբեր նմա զյաջողութիւն իրացն. զի ամենեւին արտաքուստ օգնական ոչ ոք գտաւ գնդին Հայոց, բայց ի Հոնաց. սակայն՝ եւ վասն նոցա կուտեաց զբազում պրուձին Արեաց,[6] արգել եւ փակեաց զդրունս ելին նոցա։ Զայս ամենայն գրէր եւ ցուցանէր մեծ հազարապետին Պարսից, որ կոչէր առ ինքն զՎասակ եւ որք ընդ նմա իշխանքն ամենքեան. բազում պարգեւս բաշխէր նոցա յարքունուստ եւ զօրացն, որ ի նորա բանի էին։ Եւ զուրացեալ երիցունսն ցուցանէր ՙՎասակ՚, հաստատէր եւ յայտ առնէր, եթէ սոքօք որսացայց զնոսա քակտել ի միաբան ուխտէն։ Հազարապետն իբրեւ զայն լսէր, յոյժ շնորհակալ լինէր եւ յոյս առաջի դնէր նոցա. “եթէ լիցի մեր յաղթութիւն, զայլոց քահանայից կեանս[7] դոցա շնորհեցից եւ ընդ մեծ վաստակ դոցա ցուցից թագաւորին։„

Այսպէս շարժեաց ՙՎասակ՚ եւ շփոթեաց զաշխարհն Հայոց մինչեւ զբազում հարազատս քակեաց ի միմեանց։ Զոր ինչ ոչ գիտէին անօրէն հեթանոսքն՝ իմացուցանէր նոցա։

Զայս ամենայն չարիս իբրեւ ետես ի նմա Միհրներսեհ, քան յանձն իւր՝ առաւել ի նա էր յու-

սացեալ։ Լուաւ ի նմանէ զթիւ համարոյ բազմութեանն. առաւել եւս փութացաւ ուսանել թէ քանի՞ք իցեն պարագլուխք քաջ նահատակացն, զի երիս ընդ միոյ պատրաստեսցէ. զայս ամենայն տեղեկացեալ ի նմանէ, կոչէր զամենայն զօրագլխեանն,[8] պատուէր հրամանի տայր ամենեցուն յանդիման նորա, զի խրատու նորա լուիցեն ամենեքեան. եւ զամենայն զօրսն զօրագլխօքն հանդերձ. յանձն առնէր առն միում յաւագացն, որում անուն էր Մուշկան Նիւսալաւուրտ։ Եւ ինքն դնայր յերկիրն արեւելից, եւ յանդիման եղեալ մեծի թագաւորին, պատմէր զամենայն անցս իրացն՝ զիւր հնարաւոր իմաստութիւնն եւ զվասակայ խաբեբայ պատրանսն, զի քակեալ երկպառակեաց զգունդն Հայոց։

Դառնացաւ ծերն ՝Յազկերտ.՝ յանձն իւր, եւ ասէ անսուտ երդմամբ. “եթէ ապրեսցի անօրէնն այն ի մեծ պատերազմէն, մեծաւ անարգանօք տամ ըմպել նմա զբաժակն դառնութեան մահու։,,

# ԳԼՈՒԽ ԺԱ.

## *Ճակատն Աւարայրի:*

«Մահ ոչ իմացեալ՝ մահ է. մահ իմացեալ՝ անմահութիւն է։» ԵՂԻՇԷ։

*Ղազար.* Իբրեւ հասեալ ի տօն մեծ զատկին՝ բովանդակ
ուխտապահքն եղեն ընդ միմեանս աւետաւոր յարու-
թեամբ կենարարին. եւ յետ սակաւ ինչ աւուրց
լուան եթէ զօր եհաս բազում ի Հէր եւ ի Զարեւանդ
*Եղիշէ.* գաւառ։[1] Մեծն Վարդան ոչինչ թերահաւատու-
թեամբ զանգիտեաց. քաջալերեցաւ յանձն իւր եւ
*Ղազար.* քաջալերեաց զզօրսն։ Ազդ առնէր ուխտապահացն
(որք յաղագս տօնի աւուրց երթեալք էին առ ըն-
տանիս իւրեանց) եթէ «գունդ բազում հասեալ
գայ՝ բերելով աստուածասիրացն պսակս երկնաւորս.
որդ՝ որ ոք ցանկայ առնուլ՝ աճապարեցէք. եւ
եթէ ոք խորհի պլազգ ինչ, որպէս եւ պլքն, գա-
դարեալ հանգիցէ՝ ուր եւ թուեսցի հաճոյ ումեք.
քանզի ո՛չ ոք պսակի ընդ ընկերաց իւրոց, թէ ո՛չ
տանջի։» Եւ զայս լուեալ ճշմարտասիրացն եւ զան-
մահութիւն սիրողացն ճեպեալ ընթանային զհետ
*Եղիշէ.* Վարդանայ սպարապետին Հայոց։ Եւ հրաման տըւ-
եալ ժողովիլ յԱրտաշատ,[2] զի դեռ եւս ինքն ու-
նէր զամենայն աշխարհն։

*Ղազար.* Առաքէր Վարդան միաբանութեամբ աւա-
գանւոյն սեպուհ մի յազգէն Ամատունեաց, որում
անուն էր Առանձար, իբրեւ երեք հարիւր հեծե-
լով երթալ լրտեսել զբազմութիւն զօրացն Պարսից։
Առանձար եւ գունդն որ ընդ նմա՝ տեսին զբա-
նակն Պարսից եւ զհզօր վերջապահ թեւով միով

անկեալ՝ զբազում հանէին ընդ սուր եւ զայլս
փախստականս արարեալ արկանէին ի զօրն Պարսից.
եւ ինքեանք դարձեալ՝ ողջանդամք հասանէին ու-
րախութեամբ ի գունդն Հայոց եւ պատմէին զԱս-
տուծոյ զօրութիւնն, եւ վասն զօրագլխացն՝ թէ
Մուշկան Նիւսալաւուրտ եւ Դողըվձն են. տային
գիտել եւ զայն եւս՝ սթափութեամբ հասանել ի
միջոյ կողման աշխարհիս։ Զոր լուեալ սպարապե-
տին՝ ճեպէին երթալ ընդդէմ նոցա. ասէին "թե-
րեւս անդէն ի տեղւոջն ի Հեր եւ ի Զարեւանդ
գաւառին՝ վճարին ելք գործոյն պատերազմին։ Սա-
կայն եւս առաւել ստիպով եկեալ հասանէին
գունդն Պարսից ի գաւառն Արտազ [3] հուպ ի գեօղն
Աւարայր ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտին. ի միջի
նորա ածեալ զակիշ բանակէին. յաւուր ուրբաթու
մեծի տօնին Պենտէկոստէին դիմեալ հասանէին մերձ
ի նոյն տեղիս զօրքն Հայոց. 'լինէր հանդէս համա- Եղիշէ.
րուն վաթսուն եւ վեց հազար այր հեծեալ եւ հե-
տեւակ. եկին ընդ նոսա սուրբքն Յովսէփ եւ
Ղեւոնդ երէց եւ այլ քահանայք։ 'Գտեալ ան- Ղազար.
պատրաստագոյն զզօրսն Պարսից՝ թէ կամեցեալ էին,
կարող էին մասնաւորապէս վնասել. բայց թոյլ
տուեալ դադարեցին յայնմ աւուր. մօտ առ զօրսն
Պարսից բանակին ի ժամ երեկոյին զկանոն պաշտա-
ման ժամու աղօթիցն ըստ սովորութեանն լցեալ՝
զուարճանային չափաւոր ուրախութեամբ կերա-
կրովքն. եւ կատարեալ զամենայն, առնուին հրաման
ի սուրբ քահանայիցն արթուն խնդրուածովք կա-
տարել զգիշերն յաղօթս։

Սուրբ երէցն Յովսէփ, որ զկաթուղիկոսու-
թեանն ունէր զաթոռ, հրաման տայր առն Աստու-

ծոյ Ղեւոնդի խրատել զժողովուրդն եւ քաջալերել.
եւ սուրբ երէցն Ղեւոնդ զամենայն զգիշերն ան-
ձանձրոյթ ուսուցանէր զամենեսեան առակաց մեկ-
նութեամբք. յիշեցուցանէր ամենեցուն նախ զան-
պատումն համբերութիւն սրբոյն Գրիգորի, ապա
զայլոցն ամենեցուն. ասէ «ոմանք տանջանօք եւ մա-
հուամբ, ոմանք պահօք եւ գետնատարած անկող-
նօք. այլք աղքատասիրութեամբք եւ կէսք աշխար-
հաշինութեամբք եւ արդար դատողութեամբ ե-
րեւեալ ընտիր գտան Աստուծոյ. քանզի ոչ բոլորե-
ցուն դիպի մարդասիրութեան վիճակն, այլ ըստ
ժամանակի որպէս եւ բաշխէ վերին տեսչութիւնն.
եւ պարտին առողքն արդար վաճառականութեամբ
Եղիշէ. գնել ընդ անցաւորիս զանանցն: Եթէ մահուամբ
մահ մեռանի, մի՛ երկիցուք մահակիցք լինել Քրիս-
տոսի, զի ընդ որում մեք մեռանիմք, ընդ նմին եւ
կենդանանամք: Այլքն ամենայն, որ ըստ հաւատոց
քաջութիւնս կատարեցին ի դարս իւրաքանչիւր,
գովեցան ի մարդկանէ եւ արդարացան յԱստուծոյ:
Ապաքէն նոյն Տէր է ի սկզբանէ եւ մինչեւ ցայսօր
եւ առ յապա. մեր յոյսն մեզ կրկին երեւի. եթէ
մեռանիմք՝ կեամք, եւ եթէ մեռուցանեմք՝ մեզ նոյն
Ղազար. կեանք առաջի կան:„ Բազում եւ այլ բանիւք քա-
ջալերէր զիւրաքանչիւր ոք ի մեծամեծ աւագանւոյն
հանդերձ երանելեաւն Յովսէփաւ: Որոց վարդա-
պետութեան մտադիւրութեամբ լուեալ երանելւոյն
Եղիշէ. Վարդանայ՝ սկսաւ խօսել ընդ զօրսն եւ ասէ. Ի
բազում պատերազմունս մտեալ է իմ եւ ձեր ընդ
իս. է՛ ուրեք զի քաջապէս յաղթեցաք թշնամեացն
եւ է՛ ուրեք զի նոքա մեզ յաղթեցին. անարգ եւ
անօգուտ զքաջութիւնսն համարիմ եւ առ ոչինչ

զպարգեւսն զբազումս, վասն զի ամենեքեան խափանելոց են։ Մի՛ երկուցեալ զանգիտեսցուք ի բազմութենէ հեթանոսացն. եթէ հասեալ իցէ ժամանակ կենաց մերոց, սուրբ մահուամբ պատերազմիս՝ ընկալցուք խնդութեամբ սրտիւ, բայց միայն յարութիւնս քաջութեան վատութիւն մի՛ խառնեսցուք։ Անմոռաց է ինձ՝ զանօրէն իշխանն խաբեցաք. ի վերին երեսս զկամս ամբարշտութեանն կատարեցաք. վասն սիրելեաց, որ ի մեծի նեղութեան էին, հնարս խնդրէաք յանդորր հանելոյ. եւ իբրեւ նոցա ոչինչ կարացաք օգնել, անհնար լիցի այս՝ եթէ վասն մարմնաւոր սիրոյ զԱստուած ընդ մարդկան փոխանակիցեմք. յերիս կռիւս Տէր ինքնին մեծաւ զօրութեամբ օգնեաց մեզ. զանուն քաջութեան ժառանգեցաք. եւ զզօրսն արքունի չարաչար հարաք. եւ զմոգսն անողորմ սատակեցաք. եւ ըզպղծութիւն կռապաշտութեան ի տեղեաց տեղեաց սրբեցաք. եթէ զայլս կոտորելով ի վերայ աստուածային օրինացն պարծանս անձանց ժառանգեցաք, որչափ եւս առաւել եթէ մեք մեռանիցիմք ի վերայ մեծի վկայութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որում եւ երկնաւորքն են ցանկացեալ, եթէ գոյր հնար։ Ո՛ր օր լուան զմէնջ մարդիկ ի գործ ամբարշտութեանն, արտասուս բազում հեղան ի սուրբ եկեղեցւոջն եւ ի մէջ սիրելեացն մերոց. եւ ընկերք մեր սպառնային մեզ մահ դառնութեան ի վերայ հասուցանել, եւ ծառայքն մեր սարտուցեալ փախչէին ի մէնջ. եւ որ մեծն քան զամենայն ասացից՝ ոչ միայն մարդիկ յերկրի՝ այլ եւ հրեշտակք յերկինս զերեսս իւրեանց դարձուցին ի մէնջ, զի մի՛ տխուր դիմօք հայեսցին ի մեզ։,,

"Եւ ահա եկն եհաս ժամանակ, զի զամենայն
զկեղտ անուն ի մէնջ ի բաց բարձցուք. երկիւղ՝
թերահաւատութեան է նշանակ. զթերահաւատու-
թիւն մեք ի մէնջ վաղ մերժեցաք. ընդ նմին եւ
երկիւղն փախիցէ ի մտաց եւ ի խորհրդոց մերոց:,,

Առաքինի զօրավարն դարձեալ եւ զմի մի ի
նոցանէ քաջալերէր ի ծածուկ եւ զամենայն պակա-
սութիւն աղքատութեան ինքն յանձնէ եւ յընկե-
րաց, որոյ զէն չէր, զէն պատրաստէր. եւ որում հան-
դերձ պիտոյ էր, հանդերձ զգեցուցանէր. եւ որում
երիվար, երիվար տայր: Առատ ռոճկօք ուրախ առ-
նէր զամենեսեան. զքաջ արանց յիշատակարանս
հանապազ երկրորդէր առաջի նոցա. ի ձեռն առեալ
զքաջ նկարագիրն Մակաբայեցւոցն ընթեռնոյր ի
լսելիս ամենեցուն. յուշ առնէր զօրականին՝ որպէս
ազգատոհմն Մատաթեայ քակտեալ բաժանեցաւ ի
միութենէ. շինեցին մեհեանս, խոտորեցան յԱստու-
ծոյ եւ ընկալան զպատիժս պատուհասի մահուան
ի սուրբ միաբանելոցն:

Ղազար. Եւ այսպէս խօսեցեալ սրբոյ զօրավարին ի ժամ
հաւուն ասելոյ՝ հրաման տային սուրբն Յովսէփ եւ
Ղեւոնդ հանդերձ ամենայն քահանայիւք զպաշտօն
Եղիշէ. կանոնին կատարել: ՚Սեղան ուղղեալ զամենասուրբ
խորհուրդն կատարեցին. ուղղեցին եւ աւազան, եւ
եթէ գոյր ոք երեխայ ի բազմութեան զօրուն, ըղ-
գիշերն ամենայն մկրտեցին եւ ընդ առաւօտս սուրբ
օրինացն հաղորդեցան: Աղաղակեաց ամենայն բազ-
մութիւն զօրացն՝ "հաւասարեսցէ մահ մեր ընդ
մահու արդարոցն եւ մի՛ տացէ զեկեղեցի իւր ի
ձեռս հեթանոսաց:,,

Ղազար. Եւ ի գործ առաջիկայ իրացն փութանային, վասն

զի մերձեալ էր ժամ ելից արեգական եւ գունդն Պարսից ճակատել ի պատերազմի պատրաստէին։

Իբրեւ ետես զօրավար գնդին Պարսից, եթէ Եղիշ.
բարձաւ յոյս ակնկալութեան իւրոյ ցրուել զնոսա ՙզհայս՚ յանքակ միաբանութենէն, յայնմ ժամանակի յառաջ կոչէր զանօրէնն Վասակ եւ զամենայն ուրացեալ իշխանսն Հայոց եւ ուսանէր ի նոցանէ զհնարագիտութիւն յաղթութեան. հրամայէր ածել զառաջեաւ զերամակս փղացն եւ առ մի փիղ երեք հազար սպառազէնք. խօսէր ընդ մեծամեծսն արքունի հրամանաւ եւ ասէր. "յիշեցէ՛ք այր իւրաքանչիւր զպատուէր մեծ թագաւորին. ընտրեցէ՛ք զմահ քան զկեանս վատութեամբ. դուք ինքնին գիտէ՛ք զքաջութիւն աշխարհին Հայոց եւ զառն առն իւրաքանչիւր նահատակութիւն արութեան.„ նաեւ յուշ առնէր նոցա զբազում ընկերակիցս, որք թէպէտ եւ ի պատերազմէն ապրեցան, սրով ընկալան զվճիռ մահուն իւրեանց, ուստերք եւ դստերք եւ ամենայն ընտանիք իւրեանց յանաշխարհիկս գրեցան եւ ամենայն հայրենի գաւառք հատան ի նոցանէ։ Կարգէր կազմէր զզօրսն ամենայն եւ զճակատն յերկայնութիւն դաշտին մեծի. հրաման պատուիրանի տայր ընդ աջմէ կողմանէ գնդին պատրաստ լինել ընդդէմ Հայոց զօրավարին։

Իսկ արին Վարդան միաբան ամենեցուն խրատու զզօրագլուխսն կարգէր, կազմէր զճակատն ընդ ամենայն երեսս դաշտին դէմ յանդիման Արեաց գնդին առ ափն Տղմուտ գետոյն.* զգունդն առաջին տայր

* Ըստ Ղազարու՝ "Միջոցի գնդին կարգէր գլխաւոր զտէրն Արծրունեաց եւ զմարդպետն Միհրշապուհ հանդերձ իշխանաւն Արշարունեաց Արշաւրաւ եւ Արտակաւ իշխանաւն Մոկաց եւ այլ աւագ նախարարօքն. եւ կողմանն

*ի ձեռն իշխանին Արծրունեաց (Ներշապուհ) եւ նի-
զակակից նմա զմեծ իշխանն Մոկաց. զգունդն եր-
կրորդ տայր ի ձեռն Խորենայ Խորխոռունեաց եւ
նիզակակից նմա զընձայինն եւ զՆերսեհ Քաջբե-
րունի. զգունդն երրորդ մատուցանէր ի ձեռն
Թաթլոյ Վանանդեցւոյ եւ նիզակակից նմա հրա-
մայէր զՏաճատն Գնթունի. յանձն իւր առնոյր զգ-
գունդն չորրորդ եւ նիզակակից իւր զԱրշաւիր եւ
զեղբայր իւր զՀամազասպեան։ Իբրեւ այս այսպէս
Ղազար. պատրաստեցան ՝օրհնեալք ի սուրբ քահանայից,
Եղիշէ. օրհնաբանելով զԱստուած ՝երկոքեան կողմանքն
գազանացեալ զօրութեամբ յիրեարս արձակէին։
Ամբոխ աղաղակին ճայթմունս գործէր եւ հնչումն
ձայնից զքարանձաւս լերանց շարժէր. կոփիւնք
վահանաւորացն եւ ճայթմունք լարից աղեղանցն
զլսելիս ամենեցուն առ հասարակ խլացուցանէին.
խումբ արարեալ ամենայն բազմութեանն՝ զգետն ի
մէջ փակէին. եւ զանգիտեալ գունդն Պարսից ի
գժուարութենէ գետոյն, զտեղեաւն զեռալ սկսան.
սաստկապէս բախեալք ընդ միմեանս, յերկոցունց
կողմանց բազում վիրաւորք յերկիր անկեալ դիա-
թաւալ խաղային։ Քաջն Վարդան զաջ թեւն Պարսից
գնդին բեկեալ՝ արկանէր զգազանօքն, մինչեւ գուն-
դըն մատեան քակեալ բաժանեցան ի մեծամուր
Ղազար. պատրաստութենէն. ՝եւ զզօրս Պարսից ի փախուստ*

աջոյ կարգէր աւագ զերանելին Մաղխազ Խորէն Հանդերձ
Թաթլաւ տեառն Վանանդայ եւ Ներսեհիւ Քաջբերունե-
ւոյ եւ այլ աւագ նախարարօքն. եւ ընդ ահեկէն կող-
մանէ պատրաստէր զինքն իւրով գնդովն եւ իշխանաւ
Առաւեղենից Փափագաւ եւ այլ իշխան նախարարօքն
Հայոց, քանզի յայն (ահեակ) կողմանէ առաւելապէս
երեւէր կատիչ գնդին Միւհի զօրուն եւ այլ զօրաւոր
արանց նշանք գրօշիցն. եւ զՀամազասպեան զիւր եղ-
բայրն Թողոյր վերջապահ։„

դարձուցանէին զառաջինսն. իսկ այլ բազմութիւն
զօրացն Հայոց, որք ոչ կամաւ երկնից բարութեանց
ցանկացեալք էին, անդէն ի փախուստ դարձեալ
կործանէին։ [3]Մուշկան Նիւսալաւուրտ քակեալ զո- Եղիշէ.
մանս տեսանէր ի գնդէն Հայոց եւ զկնի մնացեալ ի
հովիտս լերանց, վասն որոյ քաջալերէր շուրջ զիւ-
րեաւ զզօրս Արեաց, որք զտեղի առեալ կային ընդ-
դէմ գնդին Վարդանայ. անդէն ի տեղւոջն երկո-
քին կողմանքն զպարտութիւն խոստովանէին. կորո-
վին Վարդան իւրովք քաջ նիզակակցօքն ոչ սակաւ
նախճիրս ի տեղւոջն գործեաց եւ ինքն իսկ արժանի
եղեւ առնուլ զկատարեալ նահատակութիւնն։

Յերկարեալ գործոյ պատերազմին օրն տարա-
ժամէր եւ մօտ առ երեկս կարճատէր. բազմաց
օրահասք մահու հասանէին եւ սաստիկ խուճապ
տագնապի էր կողմանցն երկոցունց անկելոց։ Որք
մնացեալքն էին՝ ցրուեալք լինէին ի լեռնադաշտս
ամուր ձորոցն եւ յորժամ պատահէին միմեանց,
դարձեալ միւսանգամ զմիմեանս սատակէին. եւ
մինչեւ ի մուտս արեգականն անդադար լինէր գործ
դառնութեանն։ Քանզի գարնանային էր ժամանակն,
ծաղկալից դաշտքն դառնային յորդահոսանս ա-
րեանց. յորժամ տեսանէր ոք զբազմակոյտ դիա-
կանցն անկելոց, սիրտն բեկանէր եւ աղիքն գալա-
րէին. ոչ եթէ՝ կողմ էր, որ յաղթեաց եւ կողմ
էր, որ պարտեցաւ, այլք քաջք ընդ քաջս ելեալ՝
երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան։

Քանզի անկեալ էր զօրավարն Հայոց ի մեծ
պատերազմին, ոչ ոք գոյր այնուհետեւ ի մէջ գլը-
խաւոր, յոր ժողովէին գունդն մնացելոցն. բազում
այն էր, որ ապրեցան քան թէ որ մեռանն. եւ ան-

*կանէին յամուրս աշխարհին, բռնանային ի վերայ*
*բազում բերդից, զոր եւ ոչ առնուլ իսկ ոք կա-*
Ղազար. *րէր: Որք ի ժամուն ընդ սրբոյն Վարդանայ նահա-*
*տակեցան՝ են այսոքիկ. յազգէն Խորխոռունեաց*
*Խորէն, յազգէն Պալունեաց Արտակ, յազգէն Գըն-*
*դունեաց Տաճատ, յազգէն Դիմաքսենից Հմայեակ,*
*յազգէն Քաջբերունեաց Ներսէհ, յազգէն Գնու-*
*նեաց Վահան, յազգէն Ընծայնւոյ Արսէն, յազգէն*
*Սրուանձտայ Գարեգին: Եւ որպէս շատ խուզիւ*
*հարցեալ ուսաք զնահատակելոցն թիւս, ի տեղւոջ*
*պատերազմի պսակեցան ընդ աւագ նախարարսն եր-*
*կերիւր եօթանասուն եւ վեց այր. եւ զորս յամրո-*
*ցացն իջուցեալ սպանին, եօթն հարիւր եւ յիսուն*
*այր. որք լինին միահամուռ հազար երեսուն եւ վեց*
*այր: Իսկ ի զօրացն Պարսից, որք անկան ի պատե-*
*րազմին յաւուրն յայնմիկ, (զոր ստուգիւ պատմե-*
*ցին մեզ տեղեկացեալք ի զօրագլխացն Պարսից,)*
*երեք հազար հինգ հարիւր քառասուն չորս այր:*
Եղիշէ. (3544 *այր:*) (*Իսկ ի կողմանէ ուրացելոցն անկանէր*
*երեք հազար հինգ հարիւր քառասուն եւ չորք*
*այր: Մուշկան Նիւսալաւուրտ իբրեւ ետես զան-*
*հնարին հարուածսն եօթնպատիկ իւրոյ գնդին քան*
*զՀայոց, ոչ հանդարտէր:*)

# ԳԼՈՒԽ ԺԹ.

## *Մաքառումն:*

«Մի՛ ծառայեցուցանէք զոգիս ձեր երկիւղի մարդկան։»

Մուշկան Նիւսալաւուրտ իբրեւ ետես զանհնարին հարուածսն եօթնպատիկ իւրոյ գնդին քան զՀայոցն, ոչ հանդարտէր կալ ի վերայ խորհրդոց մտացն. քանզի ո՛չ որպէս կարծէր զպատերազմն կատարեցաւ։ Արդարութեամբ զիրսն գրել եւ ցուցանել՝ ի Թագաւորէն երկնչէր, թագուցանել եւս ոչ կարէր։ Ուրացեալն Վասակ մխիթար մատուցանէր մտացն լքելոց. ուսուցանէր նմա հնարս, թէ ո՛րպէս կարասցէ մարտնչել ընդ ամուրսն խաբէութեամբ. խաբեբայ երիցամբքն, որ ընդ նմայն էին, պատգամաւոր առնէր եւ երեւեցուցանէր զթողութիւն ապստամբութեանն շնորհել եւ զամենայն կարգս անդրէն յարմարել ըստ առաջին սովորութեանն։ Թէպէտ հրաման Թագաւորին հաստատութեամբ էր տուեալ, սակայն զօրքն Հայոց վասն նենգութեանն Վասակայ՝ հրամանի Թագաւորին վաղվաղակի ո՛չ կարէին հաւատալ։ Ե գլխ.

Դարձեալ դրդեաց (Վասակ) զՄուշկան Նիւսալաւուրտ եւ զամենայն աւագանին Արեաց. առեալ զզօրսն՝ հասանէր ի վերայ ամրոցին, յոր անկեալ էին գունդ մի ի զօրացն Հայոց հանդերձ սուրբ քահանայիւքն. իբրեւ ոչ կարացին ազդել՝ յերդմունս ապաստան եղեալ՝ երկիցս եւ երիցս ետուն տանել զաւետարանն։ Բազումք ի զօրականացն ո՛չ կարէին հաւատալ սուտ ուխտին Վասակայ. ոմն ի

*քաջ զօրականէն՝ Բակ անուն՝ ելեալ ի պարիսպն
յիշեցուցանէր առաջի Պարսից զօրագլխին զամենայն
չարիսն, զոր անցուցեալ էր նորա (Վասակայ) ընդ
աշխարհն Հայոց։ Այն այրս այս ի նմին գիշերի եօթն
հարիւր արամբք ել գնաց ի բերդէ անտի եւ ոչ
կարացին ձեռն արկանել ի նա։ Իսկ որ ի ներքս
յամրին մնացին, ոչ ունէին համբար ի ներքս. եւ
իբրեւ ոչ կամաւ իջեալ՝ կային առաջի, հրամայեաց
սպանանել ի նոցանէ երկերիւր եւ երեքտասան այր.
սուրբ քահանայքն որ անդ դիպեցան, Յովսէփ եւ
Ղեւոնդ բազում ընկերակցօքն մատուցին զպարանոցս
իւրեանց սրոյ. քանզի ոչ եթէ ակնկալութիւն ինչ էր
երանելեացն ըստ մարմնաւոր կենացն, այլ իմաստու-
թեամբ հնարս խնդրէին ամենայն աշխարհին շինու-
թեան. վասն որոյ եւ բողոք ի դուռն կարդային եւ
զամենայն ամբաստանութիւն արկանէին զանօրէնն
զՎասակաւ։ Զայս իբրեւ լուաւ Մուշկան Նիւսա-
լաւուրտ ոչ իշխեաց ի նոսա ձեռն արկանել մա-
հուամբ. այլ զՅովսէփ եւ զՂեւոնդ գան հարեալ
հրամայեցին պահել զգուշութեամբ, իսկ զայլ քա-
հանայսն արձակեցին յիւրաքանչիւր տեղիս՝ հրա-
ման տուեալ վասն շինութեան եւ խաղաղութեան
աշխարհին։*

*Այլ մարդիկն Հայոց ոչինչ հաւատային սուտ
թողութեանն՝ այլ ասէին. “Զի՞ պիտոյ է մեզ բնաւ
կեանք անցաւոր աշխարհիս եւ կամ ընդէ՞ր տեսա-
նեմք զարեւ յետ մերոց սիրելեացն. ոչ անսամք
խաբեբայ հրամանացդ եւ անկանիմք ի ձեռս անօ-
րէն իշխանացդ,,։ Թողին այնուհետեւ իւրաքանչիւր
զգեօղս եւ զաւանս եւ զագարակս. ելին հարսունք
յառագաստից եւ փեսայք ի սենեկաց. երթային*

*երիտասարդք եւ կուսանք եւ ամենայն բազմութիւն
արանց եւ կանանց, ունէին զամուրս անապատին եւ
զանխաբ տեղիս բազում լերանց. լա՛ւ համարէին
զգազանաբար բնակութիւնն աստուածպաշտու-
թեամբ ի քարանձաւս կեալ՝ քան ուրացութեամբ
փափկանալ յիւրաքանչիւր շինուածս. ո՛չ ոք ի նո-
ցանէ ողբայր յուսահատութեամբ զանկեալսն ի
սրոյ եւ ո՛չ ոք հառաչէր ի վերայ մերձաւոր սիրե-
լեաց իւրոց, բազումք յազգէ մեծ նախարարացն էին
հանդերձ ամենայն սիրելեօքն իւրեանց. ոմանք յան-
լոյս երկիրն Խաղտեաց[1] եւ այլ բազումք ի կող-
մանս հարաւոյ յանմատոյց ամուրսն Տմորեաց[2], կէսքն
ի թանձրախիտ մայրիսն Արձախոյ[3] եւ այլ ոսանք ի
միջոց աշխարհին բռնացան ի վերայ բազում ամ-
րոցացն. ամենեքին մեծաւ համբերութեամբ տա-
նէին զբազում նեղութիւնն եւ խնդրէին յԱստու-
ծոյ մի՛ տեսանել նոցա զաւեր սուրբ եկեղեցեացն:„*

*Հրամանաւ արքունի հասեալ բազում պրուձի
յաւելոյր ի թիւ անկելոցն, եւ լինէր դունդ բազ-
մութեան իբրեւ զառաջինն. եւ կռուէին ընդ մեծ
ամուրս Կապոյտ լերինն[4]: Որ ի ներքս էին քաջու-
թեամբ մարտուցեալ հարկանէին զբազումս ի գնդէն
Պարսից եւ զմնացեալսն փախստական ի բանակն
արկանէին. ո՛չ ոք հաւատաց իջանել առ նոսա, սա-
կայն վասն երդմանցն հարկ եղեւ քահանայի մի
իջանել առ նոսա, որում անուն էր Արշէն. արկա-
նէր դութ առաջի ուրացելոյն Վասակայ եւ յիշե-
ցուցանէր նմա զառաջին կարգ քրիստոնէութեան,
զի թերեւս սակաւիկ մի քաղցրասցի. այլ նա ո՛չինչ
լուաւ բանից նորա, կապեաց եւ խաղացոյց զերա-
նելին եւ որք ընդ նմա իջեալ էին: Իբրեւ ետես*

‘Վասակ’ եթէ երթայ զօրավարն զհետ խրատու նորա, սկսաւ արձակել զասպատակաւորն եւ հրձիգ առնէին զբազում տեղիս։

Որք գտանէին յամուրս Տմորեաց, յարձակեցան օգնականութեամբ ամրականացն եւ հասեալ ի մօտաւոր աշխարհն Պարսից՝ նախճիրս արեան գործէին եւ զմնացեալսն գերի առեալ տանէին յամուրսն եւ զշինուածսն աշխարհին հրոյ ճարակ տային։

Որք էին ի լերինս Խաղտեաց յարձակեցան ի ձորագաւառն Տայոց[5] եւ գտին անդ գունդ բազում ի զօրացն արքունի, որ գերի առնուլ կամէին զամրականս աշխարհին եւ կարծէին եւս եթէ գանձք նախարարացն անդ իցեն. յարձակեցան, հարան ի դիմի միմեանց եւ բեկեալ զզօրութիւն գնդին Պարսից զմնացեալսն փախստական հանէին յաշխարհէն։

Որ յԱրձախոյ մայրիսն անկեալ էին փախստականք, յորդորէին զգունդն Հոնաց եւ յիշեցուցանէին նոցա զուխտն ընդ Հայս անսուտ երդմամբ հաստատեալ։ Գունդ բազում գումարէին եւ յարձակեալ ի սահմանս տէրութեանն Պարսից զբազում գաւառս հարեալ՝ յայտնի ցուցանէին թագաւորին զմիաբանութիւն ընդ գնդին Հայոց։

Ղազար. Յետ վճարելոյ գործոյ պատերազմին հրովարտակ առնէր Մուշկան Նիւսալաւուրտ առ թագաւորն Յազկերտ եւ զելս պատերազմին գիտել տայր՝ գրեալ զյաղթութեան աւետիսն եւ յանուանէ զհամար անկելոցն յերկոցունց կողմանցն։ Լուեալ Յազկերտի զկատարումն լաւ արանց ի գնդէն Պարսից եւ զմահ առն Վարդանայ՝ յահաւոր սուգ ընկղմեալ խռովէր, յիշելով զքաջութիւն

առնն եւ զլաւութիւնն, զոր արարեալ էր ընդ
Թշնամիս բազում անգամ ի վերայ աշխարհին
Արեաց։

Զօրավարն Պարսից չու արարեալ գրէր եւ Եղիշ.
ցուցանէր յարքունիս զամենայն ստուգութեամբ
եւ զվնաս գործոյն արկանէր զուրացելովն։ Թա-
գաւորն կամէր տեսանել ասելով. "ո՞ որ իցէ, որ
զիս ճշմարտութեամբ ի վերայ իրացդ հասուսցէ.,,
Միհրներսէհ ասէ ցԹագաւորն. "որք գլխաւորք
քրիստոնէից են ի Հայս՝ տո՛ւր կոչել եւ գան յօժա-
րութեամբ եւ ասեն քեզ զամենայն արդարու-
Թեամբ։,, Զմի ոմն յաւագ նախարարացն Ատրոր-
միզդ (Արշական յաշխարհէն Հայոց.*) գրէր եւ
յանձն առնէր նմա զաշխարհն Հայոց մարզպանու-
Թեամբ. զՄուշկան Նիւսալաւուրտ ** հանդերձ ա-
մենայն մնացեալ զօրուն գումարէր յաշխարհն
Աղուանից եւ յամենայն ամրականն, զորս աւերեալ
էր գնդին Հոնաց վասն ուխտին Հայոց. յոյժ տրտ-
մեալ էր Թագաւորն առաւել ընդ աւերել պահա-
կին, զոր ի բազում ժամանակաց հազիւ ուրեմն
կարացին շինել, որ եւ յայնմ ժամանակի դիւրեաւ
առաւել քանդեցաւ եւ չէր իսկ ակնկալութիւն
շինութեան։ Զվասակ հանդերձ գլխաւոր քրիստո-
նէիւքն ի դուռն հրամայեաց կոչել։ ՚(Եւ Ատրոր- Ղազար.
մըզդայ) յանձն առնէր զմարդիկքն Հայոց չընդոստու-
ցանել, այլ սիրով նուաճել. եւ զպաշտօն քրիստո-
նէութեանն համարձակապէս առնել ամենեցուն։

---

* Այսպէս ըստ Ղազարու։
** Ըստ Ղազարու "զՄուշկ-Նիւսալաւուրտ ի դուռն կոչէր։,,

# ԳԼՈՒԽ ԺԳ.

## Ազատութիւն:

«Ոչ ոք պսակի ընդ ընկերաց իւրոց, թէ ոչ տանջի։»
Ղ. ՓԱՐՊ.

Զաւար. Ատրորմիզդ մարզպան բազում թուղթս խաղաղութեան առնէր ի տեղիս տեղիս Հայոց աշխարհին, յորս գրէր եւ կնքէր աւետաւոր բանս՝ շնորհել ամենեցուն զկարգ քրիստոնէութեան. որք ի համբաւն խնդութեամբ ի Պարսից եւ ի Սիւնեաց ժողովեցան ամենքեան։ Սա (Ատրորմիզդ.) եւ ի վերայ ժողովելոցն առ երանելին Հմայեակ յամուրսն Տայոց գունդ կազմէր ի Պարսից եւ ի Սիւնեաց. յերկուս բաժանեալ զգունդն՝ կարգէր նոցա զօրագլուխս զԱրտէն Գաբեղեան եւ զՎարազշապուհ Պալունի։ Քանզի բազմութիւն փախստէիցն Հայոց՝ նախարարք եւ սեպուհք, ոստանիկք եւ ռամիկք դիմեալ յերկիրն Տայոց՝ ժողովէին առ Հմայեակ եղբայր սրբոյ զօրավարին Վարդանայ, որ էր յամեալ յաշխարհին Յունաց եւ ոչ ժամանեալ ի գործ պատերազմին, առ լերամբն Պարխար[1] մերձ առ սահմանակցութիւնն Խաղտեաց դադարեցին։ Եկեալ անկանէին ի վերայ նորին ընկերաց ի գիւղն Որջնհաղ ի գաւառին Տայոց, արք փախստէիցն ճեպով յիւրաքանչիւր երիվարս հասանէին. ոմանք մերկանդամք եւ ոմանք զինեալք հարկանէին ի զօրացն Պարսից եւ փախստականս առնէին. զբազումս անդէն ի շինամիջին եւ զայլս ի մէջ այգեստանւոյն յերկիր կործանէին. անդ զկատարելութեան պսակն ընդունէր սեպուհն Հմայեակ, իսկ զօրն ուխտապահացն իբրեւ տեսանէին զիրսն՝ ի սուգ մեծ մտեալ ի վայր կոր-

ծանէին. եւ անդէն ի վեր ի լեառն դառնային ի Պարխար։

Եւ լուեալ Ատրորմզդին զայնչափ լաւ արանց զծախս ի գնդէն Պարսից եւ Սիւնեաց՝ թէպէտ եւ խռովէր, այլ յորժամ լսէր զվախճան Հմայեկի, ուրախանայր մեծապէս՝ ճանաչելով զբարձումն սպառսպուռ քաջ զօրավարացն։ Խորհուրդ ի մէջ առեալ թէ որպէս հնարեսցին որսալ զարսն փախստական առանց Արեաց կռուոյ եւ ի հարկատրութեան կացուցանել զաշխարհս Հայոց, յայս միտս հաստատեալ կային թէ բայց 'միայն սուտ երդմամբ եւ սնոտի խոստմամբ։

Առաքէր առ Նոսա ի բանէն Յազկերտի թէ "ոչ զոք սպանանեմք ի ձէնջ եւ ոչ զտէրութիւնդ եւ զպատիւ հանեմք յումեքէ.„ եւ այսպէս Նենգով Նուաճեալ զմարդիկն կալաւ զամենեսեան եւ տայր խաղացուցանել ի դուռն Արեացն։ 'Հրամանաւ արքունի կոչեաց առ ինքն զՍահակ եպիսկոպոսն Ռշտունեաց ուսանել ի Նմանէ զիրացն ամբաստանութիւնն. Նորա աւերեալ էր ատրուշան մի եւ հարեալ էր զպաշտօնեայս կրակին։ Ի տանէն Արծրունեաց երէց մի Մուշէ անուն, որ առաջնորդէր աշխարհին Արծրունեաց, աւերեալ էր զկրակատուն մի եւ բազում չարչարանս անցուցեալ ընդ մոգսն։ Երկու եւս այլ քահանայք Սամուէլ եւ Աբրահամ քանդեալ զատրուշանս յԱրտաշատ՝ ըմբռնեալ էին ի կապանս յուրացեալն Վասակայ. ժողովեցին եւս զմեծն Յովսէփ եւ զՂեւոնդ եւ զՔաջաջ եւ զԱրշէն։ Իբրեւ ուսաւ եւ տեղեկացաւ յամենեցունց մարզպանն՝ գրեաց յարքունիս ճշմարտութեամբ զիարդ լուաւ ի բերանոյ Նոցա։„

Եղիշէ.

Ղազար. Կամեցեալ չու առնել գնալ ի դուռն եւ ինքն նենգաւոր իշխանն Սիւնեաց Վասակ՝ տալ խաղացուցանել յառաջագոյն քան զինքն ի սուրբ քահանայիցն Հայոց, զորս կալեալ էր նախագոյն եւ եդեալ ի տեղիս տեղիս յամուրս բերդիցն Սիւնեաց, զսուրբ երէցն Ցովսէփ, որ զկաթուղիկոսութեան ունէր զաթոռ ի ժամուն, եւ զտէր Ղեւոնդն, եւ զքահանայսն Արածայ՝ զտէր Սամուէլ եւ զտէր Աբրահամ, ընդ որս եւ զսուրբ եպիսկոպոսն Ռշտունեաց զտէր Սահակ, եւ զդրան երէցն իշխանին Արծրունեաց Ներշապհոյ՝ զտէր Մուշէ եւ զսուրբ երէցն Արշէն եւ զսուրբ սարկաւագն զՔաջաջ: Տայր խաղացուցանել եւ զողայսն, զոր կալեալ էր ի տոհմէն Մամիկոնէից եւ Կամսարականաց եւ այլ իշխանացն Հայոց: Խաղացուցեալ զնոսա զամենեսեան առաջի իւր՝ նենգաւորն Վասակ յերեքտասաներորդում[2] ամի Ցազկերտի չու արարեալ սաստիկ կազմութեամբ եւ ուժգին ախիւք առ թագաւորն Պարսից՝ կարծեցեալ առնուլ վարձս զթագաւորութիւնն Հայոց: Եւ ելեալ զմիջոցաւ ճանապարհին, ուր զսուրբ քահանայսն տանէին կապեալս նստուցեալս ի վերայ ջորոց, բազմութիւնք Վասակայ հասին նահատակացն Քրիստոսի. սուրբն Ցովսէփ հարցանէր ցայրն Աստուծոյ Ղեւոնդ՝ թէ «գիտեմ, Վասակ լրբի գալ առ մեզ յողջոյն, եւ քո զմտաւ ածեալ որպէս պարտ է առնել մեզ, հրամայեա եւ այնպէս առնեմք:» Սրբոյն Ղեւոնդի պատասխանի տուեալ ասէ. «զվարդապետութիւն Փրկչին մերոյ մի խնդրեր ուսանել ի մարդոյ. յոր քաղաք կամ գեօղ մտանիցէք, ողջոյն ասացէք:» Եկեալ հասանէր առ նոսա նենգաւորն Վասակ եւ փաղփաղա-

կի իջանէր յերիվարէն եւ ողջունէր զսուրբսն,
որոց ոչինչ բնաւ կարծեցեալ Թշնամութիւն ընդ
նմա, յոյժ խնդալից սիրով տեսանէին զնա, եւ մա-
նաւանդ սուրբն Ղեւոնդ անտրտում եւ զուարթե-
րես ախորժակ բանիւ լրջմտութեամբ խօսէր եր-
կարս ընդ Վասակայ, որ իբրեւ լսէր զքաղցրաբա-
նութիւնն, կարծեաց թէ "սոքա ո՛չ գիտեն իսկ
զիմ արարեալ ի սոսա զչարիս.„ յաղագս որոյ եւ
առաւելագոյն մխիթարեալ երթայր ընդ նոսա եր-
կարագոյնս. եւ Սիւնեաց տէրն յաւուրն յայնմիկ
աղաչեաց զսուրբսն ճաշել ընդ նմա յօթեւանին.
եւ յառաջեալ սակաւ մի Վասակայ ի նոցանէ,
ձայն զկնի եդեալ սրբոյն Ղեւոնդի՝ կոչէր զնա
պատուոյն անուամբ մեծաձայն "Սիւնեա՛ց տէր, Սիւ-
նեա՛ց տէր.„ եւ նորա յօժարապէս պատասխանի
արարեալ՝ "տեարք զի՞նչ ասէք„. եւ սրբոյն ասա-
ցեալ "զառաւել օգտակարսն մոռացաք հարցանել՝
թէ ո՞ւր երթաս.„ եւ նենգաւորին Վասակայ լու-
եալ զայս ասէր զարմացմամբ. "առ տէրն իմ եր-
թամ գտանել ի նմանէ զհատուցումն մեծ:„ Եւ
սրբոյն Ղեւոնդի պատասխանի տուեալ ասէ. "կար-
ծեցուցանէ դեւդ, որ սադրեաց զքեզ նենգել սուրբ
աւետարանին, թէ արդ միայն թագաւորութեամբ
աշխարհին Հայոց կարեն Արիք տալ քեզ զհատու-
ցումն. այլ ո՛չ մի ինչ է, որ կարեն տալ քեզ փո-
խարէնս. բայց եթէ արդ՛րեւ դու կենդանու-
թեամբ զգլուխդ ի վերայ ուսոցդ ի Հայս տանիս,
ապա ընդ իս Տեառն Աստուծոյ չէ՛ խօսեցեալ[3]:„
Զայս լուեալ նենգաւոր իշխանին՝ խզեցաւ ամենայն
անոտի յոյսն իւր: Վասակ յառաջագոյն հասեալ Եղիշէ.
էր ի դուռնն. եւ տեսեալ նախ զաւագանի Ղազար.

դրանն՝ մտանէր եւ առաջի Թագաւորին Յազկերտի ընդունէին զնա առ վայր մի մեծարանօք եւ շքեղու-
Եղիշէ. թեամբ. ՚պատմէր զամենայն ստութեամբ, սակայն ի միտս Թագաւորին ոչ կարէր զանձն արդարացուցա-
Ղազար. Եղիշէ. նել: ՚Մինչեւ ածեալ հասուցանէին ՚ի ձմերոցն[4] ար-
Ղազար. քունի ՚զսուրբ քահանայսն եւ զտղայ մանկունսն
Եղիշէ. ապստամբացն, յետ երկուց ամսոց եւ քսան աւուր:

Հրաման տայր ՚Թագաւորն՚ ըստ առաջին սովորութեանն պաշտել յայտնութեամբ եւ թողուլ զհարկս աշխարհին, եւ որ մեծն է քան զամենայն, որ ոք ակամայ կալեալ էր զմոգութիւնն՝ հրովարտակս առաքէր յարքունուստ անդրէն ունել զքրիստոնէութիւնն:

Նախարարքն որ էին յամուրս աշխարհին՝ իբրեւ տեսին զեկեղեցւոյն հաստատութիւն, քաջալերեցան համարձակեցան յանդիման լինել արքային: Զայս լուեալ Թագաւորին հրամայեաց առ ինքն կոչել ի ձմերոցն արքունի. ատեան հարցափորձի հրամայէր լինել[5]:

# ԳԼՈՒԽ ԺԴ.

## Հ ա ր ց ա փ ո ր ձ:

"Որ գիտէ զմահ՝ ոչ երկնչի ի մահուանէ:,,

Իսկ անօրէն հազարապետն Արեաց հրամայէր Ղազար. նախ զքահանայսն ածել զառաջեաւ. եւ հարցանէր զսուրբ երէցն Արածայ զՍամուէլ եւ զսուրբ սարկաւագն զԱբրահամ, որոյ զկրակն անցուցեալ էր զԱրտաշատու՝ "ո՞ր հրամանաւ իշխեցէք այնպիսի մեծ կրակի ձգել զձեռս ձեր, զի թէ մարդոյ եղեալ էր այնպիսի յանդգնութիւն, համայն արժանի մահու էր գործն, թող թէ յաստուածսն:,, Ետուն պատասխանի՝ էր որ ստուգախօսութեամբ եւ էր որ եպերանօք՝ եւ ասեն. "երկնչել զերկիւղ զարժանն եւ զարդար ի թագաւորաց եւ իշխանաց՝ նոյն օրէնքն մեր հրամայեն, բայց զԱստուծոյ երկիւղն փոխանակել ընդ երկիւղի մարդոյ ոչ առնումք յանձն. իսկ յաղագս կրակիդ, որ ասէք ցմեզ թէ սպանէք, մեք ոչ նմա վնասեցաք ինչ, այլ հայեցեալ ի սպասաւորաց վատթարութիւնս, որք առ ոչինչ համարեալ զերկիւղ աստուածոյն իւրեանց, թողին զնա եւ գնացին, եւ մեր տեսեալ զկրակն առանց մարդոյ մոխրեալ ի բազում աւուրս, առաք, զմոխիրն հեղաք ի բաց, զի զայն ի նորին սպասաւորացն տեսանէաք՝ կրելով ցանկ զմոխիր եւ հեղլով յերկիր: Բայց՝ որպէս չարախօսացն մերոց իմացուցեալ է ձեզ զմէնջ, թէ "առեալ կրակն ի ջուր վարեցին,,, յայդմ չէ արժան արդարադատութեանդ ցասնուլ մեզ, այլ գովութեան եւ պատուի առնել արժանի, զի թէ արդարեւ ըստ ձեր բանիցդ՝ եղբայր է ջուր կրակի, արժանի մահու են այնոքիկ, որ թողին զկրակն եւ գնացին եւ ոչ մեք, որ առաք եւ յեղ-

բայր նորին տուաք, զի պահեսցէ սիրելապէս եւ ի ժամու տացէ ի բաց։„ Ըստ նմին օրինակի հարցանէին եւ զայլ սուրբ քահանայսն՝ թէ “որպիսի համարձակութեամբ աւերեցէք զատրուշանսն, սպանեցէք զայնպիսի ճոխ կրականի, (որ ի վատ եւ վնասակար իրաց աննման պահեալ էր զմեզ,) սպանէք զմոգեանն, կորուսէք ձերով կախարդութեամբ զայնպիսի քաջ այր զՎարդան, զի օգտակարութիւն էր Արեաց տեառն։„ Յառաջ կացեալ այրն Աստուծոյ Ղեւոնդ՝ ետ պատասխանի եւ ասէ. “Սոքա ամենեքեան որ կանս ի հարցման առաջի իշխանութեանդ ձերոյ, ընդ որս եւ դուք զբանս երկարեալ խօսիք, ըստ կարգադրութեան եկեղեցւոյ որոշութիւն ունին.„ եւ ցուցանէր նոցա զիւրաքանչիւր ոք թէ ո՞ ոք է. զսրբոյն Յովսէփայ ասէր. “զսա՝ զոր տեսանէքս թէպէտ եւ մանկագոյն քան զիս տիօք, այլ պատուով կարգեալ է արժանաւորապէս գլուխ ամենայն Հայոց քահանայութեանց.„ եւ զսուրբն Սահակ ցուցեալ ասէր. “սա զկարգ օծման ըստ ձեռնադրութեան մերոյ օրինաց զկատարեալն ունի, իսկ այլքս եւ ես միապէս եմք ըստ կարգի քահանայութեանն, որք եւ ոչ իբրեւ զանգէտս գործեցաք անխորհուրդ զայնպիսի մեծ եւ ահաւոր գործ եւ զղջացեալ եմք եւ կամ այժմ կարծիցիմք յոմանց երկիւղիւ եւ ոչ ուրախութեամբ կալ առաջի ահաւորութեանդ ձերոյ, այլ ի վերայ գործելեացն ուրախ եմք եւ ցնծամք. պատահեալ եմք ազգի ազգի վշտաց, եւ մահու եւս փափագելով սպասեմք զի արժանի լիցուք. իսկ յաղագս ատրուշանացն աւերելոյ, որ ասէքդ, եւ կամ կրակին սպանանելոյ՝ ասէ ի մեր գրի. “Աստուածք որ զերկինս եւ զերկիր ոչ

տարրին, կորիցեն ի ներքոյ երկրի. կրակ ի բազում նիւթոց լինի. է զի յորոց նիւթոց լինի՝ ի նոցունց եւ շիջանի. եւ է՛, յորմէ լինի, ի նոցունց աճեալ բորբոքի. արդ՝ ծնանի հուր յերկաթոյ եւ ի քարէ եւ ի ջրոյ եւ ի փայտէ. է՛ եւ ուլն սպիտակ, որ ի նմանէ լինի հուր. լինի ի կաւարծաթոյ հուր, յորժամ ընդդէմ արեգական ոք շողացուցեալ դիցէ: Եւ ծնեալ յերկաթոյ հուրն, թէ կուտեսցես ի վերայ նորա երկաթ, կորնչի. եւ եղեալն ի քարէ՝ եթէ ծածկեսցես զնա քարամբք՝ անցանէ. իսկ ելեալն ի փայտէ հուր՝ ի փայտէ վառեալ զօրանայ. արդ՝ ո՛չ հուրն, այլ փայտն արժանի է անուանել աստուած, որ եւ ծնանի եւ կենագործէ: Ո՛չ պակասէ յամենայն նիւթս հուր, ապա ուրեմն ամենայն նիւթք երկրի աստուածք. ընդէ՞ր զկէս մասն անուանէք աստուածք եւ զկէսն յաղտեղի գործ ծախեալ թշնամանէք. յաղխուսոց եւ ի քարանց զկէսս ապարանս շինէք եւ զկէսս տունս գաշտանաց ու աղտեղութեան. յարծաթոյ զկէսս ըմպելիս կազմէք եւ զկէսս անօթս աղտեղութեան. Հրով աստուածոցն զարջառս եւ զոչխարս խորովէք եւ եփէք. ջրով զդաշտանս եւ զթարախս եւ զաղբս լուանայք եւ զկէսն առանձին կամ խառնեալ ընդ գինի ըմպէք եւ ո՛չ զարհուրիք: Մի եւս միրստմիջէ հարկաւորիցիմք թուել զանզգայութիւնդ ձեր: Քաջ նահատակն Վարդան եւ նմանիքն բողոքէին ձեզ հանապազօր թէ սուտ են պաշտամունքդ ձեր եւ անմտաց վարդապետութիւնք. եւ չլսէիք, զի բռնութիւնք զիրաւունս ո՛չ տան ճանաչել. յաղագս որոյ ո՛չ հանդուրժեալք ետուն զանձինս իւրեանց ի մահ եւ պսակեցան. եւ մեք քաջա-

լերինչք էաք եւ արդարեւ ճշմարիտ վարդապետք նոցա։,, Եւ ասացեալ զայս ամենայն սրբոյ առն Աստուծոյ Ղեւոնդի, որպէս ընդ մի բերան գովեցին սուրբ քահանայքն եւ ուրախ եղեն յոյժ։ Եւ զբերկրումն երեսաց նոցա տեսեալ Միհրներսէհի եւ այլ աւագանւոյն՝ ի ցասումն բարկութեան եղեալ ասէ. "ո՛չ հրամայեն օրէնքն մեր ցասնուլ ումեք, մինչչեւ ինչ լուեալ ի բերանոյ նորա. արդ գիտել տուք մեզ թէ եւ ձեր նո՞յն բանք են, զոր մահապարտդ այդ իշխեաց աներկիւղ խօսել առաջի մեր։,, Եւ սուրբն Յովսէփ եւ սուրբն Սահակ ետուն պատասխանի եւ ասեն. "զամենայն բանսդ՝ զոր խօսեցաւ ընդ ձեզ տէրդ Ղեւոնդ՝ ի յերկար ժամանակաց բազում անգամ խորհեալ էր մեր եւ խօսեալ. ի դոյն միտս ամենեքեան եւ ի դոյն կամս եմք. եւ խնդրեմք զի արժանի լիցուք վճարիլ ի դմին։,,

Զայրագնեալ ի վերայ սրբոցն անօրէն իշխանն հրաման ետ դահճացն հարկանել խստապէս շղթայիւք զբերանսն երանելեացն, մինչեւ լցեալ բերանք նոցա արեամբ՝ հոսէր արտաքս։

Եւ արձակեաց զատեանն։ Զայլս ի կապելոց որք էին ի նմին ատենի, հրամայէր դահճացն տանել եւ խիստ կապանօք պահել, մինչեւ ինքնին թագաւորն, ասէ, առաջի իւր հարցցէ եւ լուիցէ, զոր ինչ խօսին։

Եւ մտեալ վաղիւն առաջի թագաւորին տալ նմա գիտել զամենայն հարցուածս իւր եւ զպատասխանիս քահանայիցն Հայոց. եւ սրտմտեալ թագաւորն հրամայեաց ի վաղիւն ատեան մեծ լինել առաջի իւր. բայց զողայսն ի տոհմէն Մամիկոնէից եւ Կամսարականացն հրամայէր անօրինին Միհրներսէհի տալ ի բաց ո՛ւմ եւ կամեսցի։

# ԳԼՈՒԽ ԺԵ.

## Անկումն Վասակայ:

"Չիք յանիրաւութենէ արդարութիւն,
ի ստութենէ ճշմարտութիւն:„ ԵՂԻՇԷ:

Ամենայն զինուորքն, որ ոք ունէր զպատիւ թա- Ղազար.
գաւորին, վաղ անդր հասանէին յատեանն. իսկ
ուխտանենգ իշխանն Սիւնեաց[1] արկեալ զիւրեաւ
զամենայն պատիւս՝ գայր մտանէր ի խորանսն ար-
քունի մեծաւ շքեղութեամբ. ՚արկանէր զպատուա- Եղիշէ.
կան հանդերձսն զոր ունէր ի թագաւորէն. կա-
պէր զպատուավուրսն, զխոյրն ոսկեղէն դնէր ի
վերայ. զկռանակուռ ձոյլ ոսկի կամարն ընդելու-
զեալ մարգարտով եւ ակամբք պատուականօք ընդ
մէջ իւր ածէր. զգինդսն յականջսն եւ զգումար-
տակն ի պարանոցին. զսամոյրսն զթիկամբն եւ զա-
մենայն օրէնս պատուոյն զանձամբ արկեալ երթայր
յարքունիս: ՚Բաց ի պատուոյ թագաւորացն որ նուա- Ղազար.
զէր նմա, այլ ոչինչ ի պատուոյ արքունի պիտոյ
էր զոր ո՛չ ունէր. եւ կարծէր այնուհետեւ առնուլ
զթագաւորութիւնն մեծի աշխարհին Հայոց: ՚Իսկ Եղիշէ
նախարարքն, որք կամօք ի Հայոց չոգան եւ սուրբքն,
որ յառաջագոյն հասեալ էին, կապանօք ունէին
զամենեսեան առ դրանն արքունի. տեսին զնա
(Վասակ) շքեղացեալ եւ բազմամբոխ գնդաւ գայր
յարքունիս, ի միտս իւրեանց սկսան այպանել զնա
եւ ասել, "ո՜վ անմիտ վաճառական, զանմահ եւ
զանանց պատիւ ետուր եւ զանցաւորդ գնեցեր:„
Եհաս եւ նստաւ (Վասակ) ի ներքոյ ի դահլիճսն,
որ էր հրապարակ մեծամեծաց: (՚Եւ լինէր ատեան Ղազար.

մեծ։) Եւ հրաման տայր Թագաւորն զապստամբսն Հայոց կապանօք ածել զառաջեաւ. եւ հարցեալ ասէ ցնոսա. “Ո՞րպիսի համարձակութեամբ կամ զի՞նչ ույժ օգնականութեան տեսեալ՝ դիմեցէք յայնպիսի ահաւոր գործ, յորում տեսանէիք զկորուստ անձանց ձերոց եւ զաշխարհին, որպէս եղեւ իսկ եւ տեսէք։„

Լուեալ զայս ամենայն նախարարացն Հայոց՝ լուռ եղեն առ վայր մի. եւ երկրորդեալ Թագաւորին ըստ առաջին հարցմանն՝ խնդրէր ստիպով պատասխանի. եւ նոցա տուեալ պատասխանի ասեն. “շնորհեսցէ մեզ բարերարութիւնդ ձեր զայր մի ոք, զոր մեք ի մէնջ ցուցանեմք, լսել ի նմանէ զամենայն ի բնէ զմերոց իրաց աճումն, զխորհեալն եւ զառնելն. վասն զի ոչ է պարտ ամենեցուն մեզ անկարգ ամբոխիւ խօսել առաջի քո։„ Եւ Թագաւորին եւ ամենայն աւագանւոյն յօժարութեամբ յանձն առեալ հրամայեաց, եւ նոցա յառաջ մատուցեալ զկամսարականն Արշաւիր՝ ասացին լսել նմանէ բովանդակապէս զամենայն։

Կամսարականն Արշաւիր յառաջ մատուցեալ աներկիւղաբար՝ սկսաւ խօսել եւ ասէ. “Ի սկզբան իսկ յորժամ զիրացդ բուռն հարէք եւ օրէնս իմն հարկաւորէիք ունել մեզ, զոր ոչ մեք եւ ոչ նախնիք նախնեաց մերոց գիտեն, բազում անգամ բողոքեցաք թէ անհնար է մեզ ծառայել օրինաց, որոց նախնիքն մեր ոչ ծառայեցին, որ եւ մտաց մերոց ծանր թուի եւ արհամարհանք. եւ իբրեւ ոչ կամեցաք լսել՝ ըստ բռնաւոր կամացդ ձերոց եւ հարկաւորութեամբ յանձն ետուք առնուլ զպաշտօնն, զոր շրթամբք առ երկիւղի մեծարեցաք սուտ՝

եւ սրտիւք գարշելի համարեցաք զգործն եւ ատեցաք, եդեալ ի մտի զերծանել հնարիւք եւ երթալ յաշխարհն մեր, եւ թողուլ զաշխարհն մեր եւ գնալ կնաւ եւ որդւովք յօտար երկիր. զոր նախ քան զամենեսեան ծառայն ձեր Վարդան արար. (եւ վկայեն բանից իմոց արք պարսիկք յաւագ տոհմաց, որ այժմ ողջ են եւ աստ են առ ձեզ.) առեալ լոկ զիւր կին եւ զընտանիս՝ գնաց փախըստեայ ի ձերոյ երկրէդ յերկիրն Յունաց. եւ զգացուցեալ զայս տեառնդ Սիւնեաց Վասակայ՝ փութով զհետ դեսպանս արար զաւագ տանուտեարսն եւ զսուրբ քահանայսն. եւ զսուրբ գիրս օրինաց մերոց կնքեալ իւրով մատանով, որով եւ երդուան իսկ, ետ տանել առ նա. ընդ որ յղեաց եւ զիս եւ գրեաց ի նամակին առ նա այսպէս. "զի՞ ես փախուցեալ եւ կամ զի՞նչ է երկիւղդ քո. թէ յԱրեաց տեառնէն եւ ի նորին ուժոյ զարհուրեալ ես, մի՛ երկնչիր, դարձի՛ր եւ նամակ առնեմք առ կայսր եւ նա հաւատայ՝ թէ զայսպիսի մեծ աշխարհ նմա մեր կամաւ ի ծառայութիւն տամք, խնդութեամբ յանձն առնու եւ զօր տայ մեզ. եւ մեք միաբանեալք՝ միշտ աշխատ առնեմք զտէրն Արեաց եւ զԱրիս. ապա թէ կայսրն այլազգագոյնս ինչ խորհի, ես մինչ Վրաց մարզպանն էի եւ դուռն Աղուանից յիմում ձեռին էր, բազում զօրագլուխք Հոնաց (Յունաց) ընդ իս բարեկամացան ուխտիւ եւ երդմամբ եւ այսօր նովին երդմամբ երթեւեկեն առ իս. եւ հարկս ամենայն աշխարհիս Հայոց առ իս են եւ գործակալք ամենայն յիմում ձեռին են, եւ այլ եւս բազում կարասի զոր ի պարսիկ գործակալացն հանի, յիմում գանձի կայ, յորմէ թէ զմի

մասն (Ցունաց) Հոնաց տամ տանել, անտի այնչափ սաստիկ հանեմ (Ցոյնս) Հոնս, որչափ զի հողն Պարսից չբաւիցէ նոցա յաւարի։„ Եւ դարձոյց բանի զՎարդան, որ էր մօտեալ օտար իշխանաց, որք ոչ են հնազանդեալ ձերում իշխանութեանդ։ Նամակն, զոր գրեաց առ Վարդան ողջ է եւ կնիք աստ առ մեզ։ Եւ յաղագս որդւոցն իւրոց ասէր, “եթէ որ ի Հայս Պարսիկ է, զամենեսեան կապանօք յամուր բերդս դնեմ, մինչեւ արքայն զիմ որդիսն ի բաց արձակիցէ.„ արս սակաւս ի Պարսկաց առ վայր մի կապեաց եւ յորժամ ինքն նենգաւորութեամբ զմերոյ կորստեան խորհուրդ տարաւ ի գլուխ, ապա զնոսա ի բաց արձակեաց։ Նամականի արարեալ՝ զՎահան Ամատունի եւ զայլս ի նախարարացն յիւրաքանչիւր տոհմէ ի Հոռոմս արձակեաց եւ զՎարդան եւ զմեզ գնդաւ յԱղուանս գումարեաց. եւ ինքն յանզգայս զմեզ նենգեալ յայս չար մղեաց, եւ զայնպիսի պիտանի զձեր ծառայ սպան. եւ այնչափ բազմութեան Պարսից եւ Հայոց կոտորածի եղեւ պատճառ։ Արդ՝ դուք զնամականին զամենայն, զոր գրեալ եւ կնքեալ է, տեսանել հրամայեցէք, եւ որպէս ձեզ Արեաց կամ է, կատարեցէք ի վերայ մեր. զի ուր գրեալք եւ կնքեալք ի միջի են, աւելորդ բանից եւ շատխօսութեան պէտք անդ ոչ են։„

Եւ արքային Պարսից եւ ամենայն աւագանւոյն տեսեալ զնամականին, զոր գրեալ էր Վասակայ, եւ ի վերայ հասեալ՝ մեծապէս զարմացան։

Եղիշէ. Եւ պարտաւորեցաւ կողմ ուրացելոցն. զի ցուցանէին զթուղթսն Վասակայ զի միաբանք իցեն ընդ նմա յուխտ ապստամբութեան ի Վրաց եւ

յԱղուանից. Հրովարտակ մի առ թագաւորն Յունաց եւ թուղթ մի առ մեծ սպարապետն Անտիոքոս. ի բոլորեսին յայսոսիկ թուղթսն վաւերականի մատանի Վասակայ եդեալ էր: Խառն էր նա եւ ի մահ մոգուցն ի Ջարեհաւանի: Նաեւ ի մէջ բերէր զամբաստանութիւն (նորա) Մուշկան Նիւսալաւուրտ եւ գող եւս գտանէր հարկի աշխարհին: Բազումք ի մոգացն եւ ի փշտիպանացն ասեն. "բազում հարուածք, որ եղեն ի զօրքն արքունի, եւ աւեր աշխարհին Հայոց եւ կորուստ հարկացն արքունի, սկիզբն եւ առաջնորդ չարեաց այրդ այդ (Վասակ) եղեւ:„ Յուցին եւ յայտ արարին ազգականքն զխարդախութիւնն առ ընկերս եւ առ թագաւորն, զի ոչ ըստ կարգի ունէր նա զտէրութիւնն Սիւնեաց, այլ նենգութեամբ եւ սպանանել զհօրեղբայր իւր զՎաղինակ: Ածին զՍահակ եպիսկոպոս Ռշտունեաց եւ զսուրբն Յովսէփ եւ զՂեւոնդ երէց: Սահակ եպիսկոպոսն ասէ. "որ յայտնի ուրացեալ են ի ճշմարիտ Աստուծոյ, են դարանք սատանայի, որպէս Վասակ, զի մինչ ունէր զանուն քրիստոնէութեան, վերինն երեսօք կարծէր թագուցանել զամենայն չարութիւն իւր առաջի ձերոյ տէրութեանդ եւ զամենայն նենգութիւնն իւր քրիստոնէութեամբն ծածկէր. պատուեցէք զդա առաւել քան զարժանն իւր, հաւատացէք դմա զաշխարհն Վրաց. հարցէք եթէ գո՞հ իցեն զդմանէ. ետուք դմա զտէրութիւնն Սիւնեաց. լուարուք յազգականաց այտի դորա, զի՞նչ պատմեն զդմանէ. արարէք զդա մարզպան Հայոց, դա ի միում ամի կորոյս զերկիրն ամենայն. սուտ յուսով դա զձեզ խնդացոյց, ոչ դուք եւ ոչ դա եւ ոչ որ զկնի ձեր գալոցն է՝ զայն ի մեզ ոչ կարէ

տեսանել. արդ արարէք զդա որպէս եւ կամիք,
Ղազար. ցմեզ զի՞ հարցանէք։„ Յայնժամ յառաջ կոչեցեալ
Թագաւորին զիշխանն Սիւնեաց Վասակ՝ սկսաւ խօ–
սել ընդ նմա եւ ասել. "աղէ ասա՛ զի՞նչ խորհելով
իշխեցեր քաջալերել բանիւ զմարդիկն, զոր ի նա–
մականս գրելոց ի քէն ստուգութեամբ տեղեկա–
ցաք. երդմնեցուցեալ զքաջն Վարդան եւ զընկե–
րակիցս նորա խաբեցեր նամականիւ. գումարեալ
զնա զօրու յԱղուանս՝ ի վերայ Պարսկաց գումար–
տակին[2] համարձակեցեր երթալ. եւ կոտորածի
այնչափ իմոց ծառայից՝ Արեաց եւ Անարեաց եղեր
պատճառ. զի զայնպիսի ծառայ մի զմեր, որպէս
զՎարդան, եւ կայսր եւ Հոնաց արքայ բնու–
թեամբ յինէն հանել կամէին, ամենայն Արեաց
ուժովս կռուէի եւ չտայի, եւ արդ՝ դու ընդ քո
ձեռն զայնպիսի ծառայն սպաներ եւ զմեծ եւ զպի–
տանի աշխարհ մի կորուսեր։ Եւ դու իշխեցեր
լրբաբար առ մեզ իբրեւ անգէտս քո նենգաւոր
գործոյդ գալ եւ զմեզ տեսանել։ Բայց զայս գի–
տեա՛, զի յայսմ հետէ Սիւնեաց տէր չես. եւ
զհարկեր զիմոյ աշխարհին Հայոց եւ կամ զՊարս–
կացն զոր սպաներն, եւ զկարասին այնչափ զոր
հաներ, հրամայեցաք խնդրել ի տանէ քումմէ եւ
յորդւոց քոց մինչեւ վճարեսցի ամենայնն։„

Ողորմելի ուխտադրուժն Վասակ կամէր խօսել
ինչ եւ տալ պատասխանի, զի կայր ինչ վաստակս
առնն առ Պարսիկս, եւ ջանայր ցուցանել ի ժամուն.
Եւ այն ոչ ինչ էր օգուտ այլ առաւել եւս ի դա–
Եղիշէ. տախազութիւն։ (Այնպէս զի) "պապանձեցաւ ամե–
նեւին. չգտաւ բան ճշմարիտ ի բերան նորա. հա–
տաւ վճիռ մահու ի վերայ նորա։ Եկն ել դահճա–

պետն. առաջի ամենայն մեծամեծացն մերկեաց ի նմանէ զպատիւն, զոր ունէր յարքունուստ եւ զգեցոյց նմա հանդերձ մահապարտի. կապեցին զոտս եւ զձեռս եւ կանանցաբար նստուցին ի ձի մատակ. տարան եւ եդին յայնմ զնդանն, ուր կային մահապարտք ամենայն:,,

Եւ ի նմին աւուր զԹշնամին նորա՝ զուրացօղն Ղազար.
զՎարազվաղան՝ տէր ի վերայ Սիւնեաց կացուցանէին, որոյ բազում մոխրանոցս շինեալ յաշխարհին Սիւնեաց ի գայթակղութիւն տանն իւրոյ՝ բազմաժամանակեայ տանջեալ ի դիւից ըստ յառաջագրելոցն՝ դառն մահուամբ սատակեցաւ չարաչար:

Նախարարքն Հայոց եւ սուրբ եպիսկոպոսքն Եղիշէ.
հանդերձ երիցամբքն զարմացեալ էին ընդ մեծ յայտնութիւնն. մխիթարէին զմիմեանս եւ ասէին. "գլուխ ամենայն առաքինութեան համբերութիւն է, եւ իմաստութիւն երկնաւոր՝ կատարեալ աստուածպաշտութիւն. չարչարանքն յորժամ ընդերկարանայ, յայնժամ բազմանայ վարձ հատուցմանց պարգեւին. բարի է յուսալ ի Տէր քան յուսալ ի մարդիկ, բարի է յուսալ ի Տէր քան յուսալ յիշխանս:,,

Ուրացեալն Վասակ հայէր ի միաբանութիւն սուրբ կապելոցն եւ կարօտէր. եւ ոչ ոք խառնեաց զնա ընդ նոսա: Եւ այպանէին եւ տեսիլ ամենայն կարաւանին զնա առնէին. այնպէս ձաղեցին աղքատութեամբ, մինչ հաց մուրանային եւ բերէին նմա ծառայքն. զհարց եւ զհաւուց եւ զիւր արարս եւ զզարդս կանանց ետ եւ տուժեցաւ եւ ոչ կարաց հատուցանել զպարտսն արքունի: Իբրեւ այսպէս յամենայն կողմանց հարեալ վատթարացաւ, անկաւ

յախտս դժնդակս անդէն ի կապանսն. բխեաց ի նմանէ հոտ մահու եւ փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա։

Ղազար. Եւ նենգաւորն Վասակ կացեալ ի դրանն ամս ինչ կարի վշտագին, զամենայն օր եւ զժամ սփռեալ զթաթս ձեռաց իւրոց ի՛նքնին զիւրոյին ծեծէր զդէմսն ասելով. “ահա՛ ընկալ զայս ձաղսս, զոր ետ բերել քեզ ուխտանենգութիւն սրբոյ աւետարանին եւ արիւն նահատակութեան սրբոյն Վարդանայ Մամիկոնէի եւ այլոցն, որոց ժառանգեալ զյաւիտենից կեանսն՝ ընկալան զանուն բարի յերկրի եւ անանց յազգաց յազգս իւրեանց. իսկ դու, մեղաւո՛ր անձն իմ, կեաս խղճիւ եւ ցաւօք մնաց զսակաւաթիւ աւուրս կենցաղոյս եւ պատրաստեալ պահիս մշտնջենաւոր եւ անանց գեհեննին։„ Զայնպիսի բանս հառաչանաց նորա եւ լալոյ մինչեւ յօր մահուան իւրոյ՝ խօսէին ընդ մեզ արդարադատումն սպասաւորք նորին. եւ վախճան իւր անդէն յերկիրն Պարսից վճարէր։

Եղիշէ. Եւ այն որ կամէրն թագաւոր լինել մեղօք՝ Հայոց աշխարհին, ո՛չ երեւեցաւ տեղի գերեզմանի նորա. քանզի իբրեւ զշուն մեռաւ եւ իբրեւ զդէշ քարշեցաւ։ Ո՛չ յիշեցաւ անուն նորա ի մէջ սրբոց եւ ո՛չ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն։ Ոչինչ եթող չարիս զոր ոչ գործեաց ի կեանս իւր, եւ ո՛չ մնաց ի մեծամեծ չարեաց որ ո՛չ անցին ընդ նա ի մահուան նորա։

Գրեցաւ յիշատակարանս ի կշտամբումն մեղաց նորա, զի ամենայն որ զայս գիտասցէ՝ մի՛ լիցի ցանկացող գործոց նորա։„

## ԳԼՈՒԽ ԺԶ·

### *Քահանայքն եւ նախարարք:*

«Ամենայն մարդ յանձն իւր եկեղեցի էր,
նոյն ինքն քահանայ:»

Իսկ զսուրբ քահանայսն եւ երեսուն եւ մի այր ի Նախարարացն Հայոց հրաման տայր Թագաւորն Ցազկերտ կապանօք պահել անդէն ի Վրկանի[1]. եւ յամի վեշտասաներորդի Թագաւորութեանն իւրոյ ամենայն բազմութեամբ իւրով խաղայր ի պատերազմ ի վերայ Քուշանաց. հրամայէր եւ զկապեալսն Հայոց՝ զքահանայսն եւ զնախարարսն խաղացուցանել ընդ իւր ի Վրկանէ. եւ ելեալ յԱպար աշխարհ ի շահաստանն[2] Նիւշապուհ՝ հրամայէր պահել անդ զկապեալսն Հայոց ի դղեակ շահաստանին: Բայց զերկու քահանայսն՝ զտէր Սամուէլ եւ զԱբրահամ հրամայէր ընդ իւր խաղացուցանել, զոր չարաչար կապանօք եւ գանիւ տայր նեղել հանապազօր՝ ահ եւ երկիւղ արկանել ի վերայ քրիստոնէիցն, որք ընդ նմա ի կարաւանին էին: Հոն մի յազգէ Թագաւորին Խայլնդուրաց՝ Բէլ անուն՝ ի ծածուկ խոնարհէր առ քրիստոնեայսն եւ սիրով յօժարութեամբ ուսանէր ի նոցանէ զճշմարտութիւնն. կամօք նուաճեալ էր ընդ իշխանութեամբ Թագաւորին, եւ կարի յոյժ դառնանայր, յորժամ տեսանէր չարչարեալ զսուրբսն. իբրեւ այլ ոչինչ էր ձեռնհաս, փախստական անկանէր առ արքայն Քուշանաց եւ պատմէր նմա զամենայն անցս չարչարանացն ընդ աշխարհն Հայոց. ցուցանէր եւ զերկպառակութիւն զօրացն եւ զտրտունջ Արեաց աշխարհին:

Ղազար. Եղիշէ.

Թագաւորն Քուշանաց իբրեւ ստուգեաց ի Բէլայն, եթէ գայ ‘Յազկերտ’ ի վերայ Քուշանաց, վաղվաղակի զօր ժողովէր, բազում հարուածս հասուցանէր ի վերայ զօրացն արքունի, ասպատակաւ զհետ մտեալ աւերէր զբազում գաւառս, եւ ինքն ողջանդամ յերկիրն իւր դառնայր։

Ղազար. Ամենայնիւ նկուն եղեալ ‘Յազկերտ’ դառնայր ամօթալից, քանզի ոչ դէմ յանդիման ճակատեալ թշնամեացն պատերազմէին ընդ զօրսն Պարսից, այլ յեղակարծումն անկեալք ի վերայ միոյ միոյ թեւի՝ հանէին ընդ սուր զբազումս եւ ինքեանք դարձեալ անվնասք աներեւոյթք լինէին. եւ այսպէս ի բազում աւուրս արարեալ վատնէին սաստիկ հարուածովք զզօրսն Պարսից։ Եւ թագաւորին Յազկերտի տեսեալ զայնպիսի թեթեւութիւն ծանականաց իւրոց՝ մտայոյզ եղեալ խնդրէր գիտել թէ վասն որո՞յ պատճառանաց եղեւ դիպեալ նմա այնպիսի ծանր թեթեւութիւն. եւ կացեալ ի տարակուսի՝ ձգէր զպատճառսն մերթ յանմիաբանութիւն գնդին իւրոյ եւ մերթ ի մոգուցն ծուլութիւն՝ թէ ուրեմն ոչ կարացին ընծայիւք եւ արժանաւորապէս զոհիւք
Եղիշէ. հաճել զմիտս աստուածոցն։ Իսկ մեծ հազարապետն յոյժ էր յերկիւղի, քանզի ինքն էր պատճառք ամենայն չարեացն։ Սկսաւ բանս ի բերան դնել մոգպետին եւ մոգացն, որք առէին ցթագաւորն. "Արքայ քաջ, մեք ի դենէս իսկ գիտեմք, զի ոչ ոք ի մարդկանէ կարէ կալ առաջի քոյդ
Ղազար. մեծի զօրութեանդ. մի յածեսցին միտք քո յայլ խորհուրդ վասն վատ պատահմանց որ դիպեցաւ ի ցասմանէ աստուածոցն յաղագս աստուածապան քահանայիցն Հայոց. զի եթէ լոկ մարդասպանք իսկ

էին, կարի ծանր էր եւ արժան մեղադրութեան գործն, թող թէ յԱստուած իշխեցին ձգել զձեռս, եւ նորա կեան եւ զարեւ տեսանեն. յիրաւի պատժեալք մեք յաստուածոցն գանիմք անխնայ:„

Թագաւորն կարծեցեալ ստոյգ զսուտ պատճառս նոցա՝ վաղվաղակի հրաման տայր՝ որ ընդ իւր քահանայքն էին՝ զսուրբ երէցն՝ Սամուէլ եւ զսուրբ սարկաւագն Աբրահամ յաներեւոյթ տեղի ինչ տանել շատ ի կարաւանէն հեռի եւ անդ գլխատել՝ յաղագս չգտանելոյ ուրուք ի քրիստոնէից եւ պատուելոյ զոսկերս նոցա: Բայց յառաջ քան զսպանանելն զնոսա հրաման տայր զաջ ձեռն կտրել զսրբոյն Սամուէլի եւ դնել ի ձեռին Աբրահամու, նոյնպէս եւ սրբոյն Աբրահամու կտրել զաջ ձեռնն եւ դնել ի ձեռին Սամուէլի, փոխանակ, ասէ, զի իշխեցին ձգել զձեռս իւրեանց ի պատուական կրակն եւ սպանանել. եւ ապա սրով կտրել զգլուխս նոցա:

Եւ այսպէս վկայեցան սուրբքն յամսեանն Հրոտից, որ օր եօթն էր ամսոյն, ի գաւառին Վարդգէս:

Յետ այսորիկ դեսպանս հրամայէր առնել վաղվաղակի յաղագս երանելւոյ եպիսկոպոսին Բասենոյ Թաթկայ, որ կայր ի կապանս յԱսորեստանի, եւ հրամայէր սպանանել անդէն եւ անհետ առնել զմարմին սրբոյն յաղագս չգտանելոյ ուրուք ի քրիստոնէից: Կատարեալ մոգուցն զհրամանն խնդութեամբ՝ քերեցին նախ զաւուրս բազումս զմարմին սրբոյն յոսկերացն եւ ապա հատեալ սուսերաւ զգլուխն, սպանին:

Եւ վասն այլ քահանայիցն տայր հրաման

Վեհդենշապհոյ ամբարապետի առնուլ ընդ իւր զՋնիկան մոյպետն եւ զՄովան անդերձապետ՝ երթալ եւ հանել զսուրբ քահանայսն ի բանդէն եւ տանել զնոսա հեռի ի քաղաքէն յանկոխ եւ յանապատ տեղի, եւ անդ որպէս եւ կամեսցի բարձցէ զնոսա ի կենացս. բայց յոյժ պատուիրանաւ զգուշացուցանէր Թագաւորն ոչ տալ ումեք գիտել ոչ զառնուլ եւ զգնալ զնոսա ի քաղաքէն եւ ոչ զճանապարհն ընդ որ տանիցին եւ ոչ զտեղի մահուան, ուր սպանանիցեն զնոսա: “Քանզի լուեալ է, ասէ, մեր ստուգութեամբ թէ՝ որք ի մոլար աղանդն են քրիստոնէից՝ ասեն. ոսկերք այնոցիկ, որք յաղագս Աստուծոյն իւրեանց մեռանին, որ ոք յիւրում տանն ունիցի, վատ ինչ եւ խորամանկ ի նա ոչ մերձենայ եւ ի բանս ատենի յաջողութիւնս տան եւ իմաստս եւ քաջութիւնս. այլ եւ ի հաւատարիմ մարդկանէ, որք ի մոլար աղանդին նոցա են եղեալ, ապա զմեր լուսաւոր եւ զարդար օրէնս ունին, տեղեկացեալ եմք՝ թէ կանայք նոցա, ուստերք եւ դստերք զզարդս ոսկւոյ եւ արծաթոյ ճիտակս կամ զտակս ինչ մարգարտոյ կարի մեծագնոյ չհամարին ինչ հանել յանձանց եւ տալ եւ գնել փխրանս ինչ յոսկերաց այնպիսեացն:„

## ԳԼՈՒԽ ԺԷ.

### Մ ո գ պ ե տ:

"Որպէս մեծ է հոգի քան զմարմին՝ այնպէս մեծ է աստուածութիւն մտաց քան զմարմնոյ։" ԵՂԻՇԷ։

Իշխան դենպետ[1] Այր աշխարհին քան զբազում գիտունան տեղեակ էր զրադեշտական օրինացն եւ զոր մեծ պարծս համարէին՝ համակդեն անուն էր. գիտէր զամպարտքաշն եւ զբոզբայիտն եւ զպահլաւիկն եւ զպարսկադենն. քանզի այս հինգ կեշտք են, որ գրաւեալ ունին զամենայն օրէնս մոգութեանն. բայց է միւս եւս այլ վեցերորդ զոր մոգպետն կոչեն[2]։ Որոշեաց ի նախարարացն զքահանայսն, արկ զնոսա ի ներքնատուն մի գէճ խաւարչտին եւ հրամայէր վեց առն երկու քաշկէնս ժամէ ի ժամ եւ դորակ եւ կէս ջուր. աւուրս քառասունս այսու նեղէր զնոսա եւ ոչ լուաւ ի նոցանէ բան թուլութեան. ած զմտաւ՝ եթէ ոք ի ծածուկ տացէ նոցա կերակուր. ինքն երթեալ կնքէր զերդ եւ զդուռն բանտին եւ զկարգեալ ռոճիկն տայր յիւր հաւատարիմն տանել նոցա. արար զայս աւուրս հնգետասան, երանելիքն համբերութեամբ տանէին զճգնութիւնն. պահապանքն զարմացեալ ընդ առողջութիւն նոցա՝ պատմեցին մոգպետին եւ ասեն. "ոչ են արքն այն լոկ առանց մեծի զօրութեան. զի ոչ յիշեմք՝ եթէ ի կապելոց ոք ամսօրեայ ժամանակ կեցեալ է ի տանդ. արդ ասեմք քեզ, եթէ առեր հրաման մահու նոցա եւ սպանանես, դու գիտես. ապա թէ ոչ, պահել յանձն արարաւ քեզ եւ ոչ դատել զնոսա"։ Մոգպետն ինքնին երթայր Եղիշէ.

ի մէջ գիշերին յերդ բանտին. հայեցեալ տեսանէր զանձն իւրաքանչիւր կապելոցն, զի իբրեւ զկանթեղ անշիջանելի վառեալ բորբոքէր. եւ սուրբքն յիւրաքանչիւր խշտեկացն կանգնեցան կացին ի սովորական պաշտամանն. զահի հարաւ (Մոգպետն) եւ ասէ. "ո՞ւմ ի կապելոցն եղեւ այսպիսի յայտնութիւն, ես եւ ո՛չ զմի ոք գիտեմ.„ եւ կիսամեռ լինէր ի վերայ տանեացն մինչեւ յառաւօտն. կոչեաց զպահապանսն եւ ասէ "հանէք զկապեալսն ի վերնատունն մի ցամաքագոյն, որպէս եւ ասացէքն։„ Մոգպետն յարուցեալ երթայր առ նոսա միայնիկ լռիկ. եւ իբրեւ հայէր ընդ ծակ մի ի ներքս՝ տեսանէր ըստ առաջին տեսլեանն. եմուտ ի մէջ սրբոցն եւ պատմեաց զերկիցս երեւումն։

Ղեւոնդ երէցն ասէ. "Աստուած լոյս ծագեաց այսօր ի խաւարեալ միտս քո եւ բացան աչք կուրացեալ ոգւոյդ.„ եւ յոտն կացին ամենեքեան ասելով. "Գոհանամք զքէն զի այսօր յայտնի եղեւ զօրութիւն քո մեծ ի մէջ խաւարազգեստ ազգիս։„ Սկսաւ եւ նա առանձինն ասել. "Տէր մի հայիր ի բազմամեայ ամբարշտութիւնս իմ. սատանայ որ ինեւ խրոխտացեալ պարծէր, ինեւ կորացեալ ամաչեսցէ ի մէջ իւրոց աշակերտացն։„ Եւ խաղաղացեալ կացին ի քուն ամենեքեան. իսկ նորա յոտն կացեալ՝ կայր յաղօթս եւ մինչդեռ ընդ երդ պշուցեալ հայէր յերկինս, յանկարծակի երեւեցան նմա սանդուղք լուսեղէնք, որ կանգնեալ էր յերկրէ ի յերկինս եւ գունդք գունդք զօրաց եղանէին ի վեր, եւ էր ամենեցուն տեսիլն ահաւոր եւ սքանչելի իբրեւ զտեսիլ հրեշտակի։ Տեսանէր զՎարդան, զԱրտակ եւ զԽորէն, եւ ունէին ինն պսակ ի ձեռին, խօսէին

ընդ միմեանս եւ ասէին. "Ահա եկն եհաս ժամ, զի սոքա խառնեսցին ի գունդս մեր, եւ մեք սոցա իսկ միայաք. եւ որում ո՛չ եւս միայաք եկն եւ խառնեցաւ իբրեւ զմի ի զինուորաց Քրիստոսի:" Այս երիցս անգամ երեւեցաւ. զարթոյց զսուրբսն ի քնոյ անտի եւ պատմեաց նոցա զամենայն. քանզի ինքն մոգպետն իշխան էր աշխարհին, համարձակութեամբ ընդ առաւօտն հանեալ ʻզսուրբսն՚ տանէր յապարանսն իւր. լուանայր եւ սրբէր զնոսա. ուղղէր ի տան իւրում աւազան եւ ընդունէր ի նոցանէ զսուրբ մկրտութիւնն, հաղորդէր ի կենարար մարմինն եւ արիւն Քրիստոսի. դնէր եւ ըստ մարմնոյ առաջի նոցա սեղան կերակրոյ. ի ծածուկ կոչէր ի գիշերի եւ զնախարարսն, որ ի նմին քաղաքի էին ի կապանս եւ առնէր ծախս մեծամեծս. ի ժամ բազմականացն իբրեւ հաղորդեցան ամենեքեան ի կերակուրն, յոտն եկաց սուրբ Յովսէփ եւ սկսաւ ասել. "Ուրախ լերուք ամենեքեան ի Քրիստոս, քանզի վաղիւ այս ժամ իցէ, ահա մոռացեալ իցէ մեզ զամենայն նեղութիւնս եւ զչարչարանս, զոր կրեցաք:" Զայս իբրեւ ասաց, յոտն կացին ի բազմականացն, գոհանային: Ի նմին ժամու եղեւ խորհուրդ մեծ ի մէջ նոցա թէ զի՞նչ օրինակաւ կարասցեն ապրեցուցանել զմոգպետն:

Ի ժամ առաւօտուն հասին դահիճքն ի դուռն բանտին եւ տեսին, զի որ մոգպետն էր՝ նստէր ի մէջ նոցա եւ լսէր ի նոցանէ եւ քաջալերէր եւս զնոսա չերկնչել ի մահուանէ: Չոգան եւ պատմեցին Դենշապհոյ, որում յանձն արարեալ էր զչարչարանս սրբոց: Հրամայեաց (Դենշ.) հանել ի բանտէ զամենեսեան կապանօքն, եւ հեռացուցանէր ի քաղաքէ

անտի. եւ ի ծածուկ խօսէր ընդ մոգպետին եթէ զի՞նչ պատճառք իցեն կապանաց նորա: Եւ պատասխանի այրն եւ ասէ ցնա. "Մի՛ խօսիր ընդ իս ի ծածուկ. հա՛րց ցիս յանդիման եւ պատմեմ քեզ, զի տեսի զմեծամեծն Աստուծոյ:„ Իբրեւ լուաւ ի նմանէ զամենայն եւ ստուգեաց (Դենշ.) վասն իւրոյ միաբանութեանն, փութացաւ պատմէր թագաւորին ի ծածուկ զամենայն: Եւ պատասխանի թագաւորն եւ ասէ ցԴենշապուհ. "մի՛ ոք լուիցէ զայդ ի քէն, մանաւանդ վասն տեսլեանն մեծի. զի ոչ դուզնաքեայ ոք խոտորեցաւ ի նոցա օրէնսն, այլ այր մի համակդեն երեւելի ընդ ամենայն վերին աշխարհս. Նախ՝ զդառնացեալ ծերն կոչեա առաջի քո. եթէ հաւանեսցի սիրով, մեծարեսջի՛ր զնա. թէ ոչ կամեսցի անսալ բանից իմոց, յարուսջի՛ր ի վերայ նորա բազում ամբաստանս յաշխարհէ անտի, զի վնասակար գտցի յիրս արքունի եւ չկօթա՛կ արասջիր յայնկոյս քան զԿուրան եւ Մակուրան. եւ անդ ընկեցեալ զնա ի վիրապ մի եւ ընկալցի զմահ: Եւ զայլադենսն փութանակի կարճեա ի կենաց աշխարհիս, զի եթէ զճարտար մոգպետն այնպէս արագ աշակերտեցին, տգէտ մարդիկ զի՞արդ կարասցեն կալ առաջի նոցա:„

Դենշապուհ կատարեաց ի վերայ նորա ըստ խրատուն արքունի, եւ ընկեցաւ ՝մոգպետն՝ ի հեռաւոր օտարութիւն:

# ԳԼՈՒԽ ԺԸ.

*Հրաժարական քահանայից:*

> «Ոչ եթէ ակնկալութիւն ինչ էր ըստ մարմնաւոր կենացն, այլ հնարս խնդրէին ամենայն աշխարհին շինութեան։»

Վեհդենշապհոյ մտեալ ի դղեկ Նիւշապհոյ քաղաք. խօսէր բանս սուտս եւ տայր աւետիս նենգութեամբ թէ «արքայից արքայ հրաման ետ ինձ զհայ երիցունսդ, որ աստ ի կապանս են, արձակել յաշխարհն իւրեանց. եւ վասն այլ ազատանւոյն Հայոց պայման արար (արքայ) թէ ես յորժամ գամ՝ արձակեմ ի կապանաց։» Եւ լուեալ զայս բազմութեանն որ ի շահաստանին՝ կարծէին գոլ արդար. բայց սուրբ քահանայքն իբրեւ լուան, իսկոյն գիտացին զհասեալ բարի ժամ նահատակութեան իւրեանց. սկսան խօսել ընդ նախարարս Հայոց, ընդ որ կապեալն էին եւ ասեն. «Թէպէտ եւ կամէր Վեհդենշապուհ թագուցանել զճշմարտութեան բանն, ոչ կարաց, քանզի երկոքեան մեր իրք այդպէս կատարելոց են. դուք իբրեւ ողորմութեամբն Քրիստոսի արձակելոց էք ի կապանացդ եւ մեք զօրութեամբ սուրբ Հոգւոյն գնալոց եմք ի բնիկ աշխարհն մեր եւ յԱրարիչն ամենեցուն։» Եւ մի ոմն ի դահճացն, որ սիրելապէս ընդունելութիւնս ունէր ընդ կապեալ նախարարս Հայոց, լուեալ ճշգրտապէս յերանելի Խուժկէն՝ եկեալ յայտնէր թէ որպէս տուեալ է հրաման թագաւորին յաղագս սպանման քահանայիցն, զոր ստուգեալ նախարարացն՝ լային դառնապէս. իսկ սրբոցն զօրացեալք զուարճանային եւ եւ տուեալ փառս Աստուծոյ իսկոյն երեկոյին պաշ-

տամանն պատրաստէին։ Քանզի եկք ամբարակապետին ի շահաստանն ոչինչ էին վաղ, վասն որոյ կալ զգիշերն անդէն հարկաւորեցաւ ի շահաստանին։ Եւ սրբոցն կատարեալ զկանոն երեկոյին պաշտամանն՝ վայելէին սուղ ինչ եւ դոյզն ուճկոմն. եւ յարուցեալ յընթրեացն կատարէին զաղօթսն. Հրաման տային աղօթից եւ տքնութեան պարապելոյ ըստ կարգի իւրաքանչիւր ուրուք զգիշերն զայն՝ ասելով ցամենեսեան այսպէս. “զի եթէ զոք ի ձէնջ այսօր յուղարկեալք ի Հայս՝ ո՞չ ապաքէն առ իւրաքանչիւր սիրելիս թուղթս ողջոյնացոյցս եւ պատգամս ուրախալիցս յղէիք. Նաեւ խնդրէիք յԱստուծոյ ողջամբ հասանել առ իւրաքանչիւր ընտանիս եւ զեդեալ ձեզ Ծմա զքանն կատարել. եւ արդ՝ աւասիկ յուղարկիմք մեք ի ձէնջ առ Աստուած. խնդրեցաք ամենեքեանս ի փրկչէն Քրիստոսէ եւ ի սուրբ Հոգւոյն լինել ամենեցուն մեզ արժանի երկնաթռիչ ուղւոյն։ Գութ բազումողորմ Արարչին արձակեսցէ զձեզ յերեւելի կապանացդ, յորում էքդ եւ ամաչեցուցանէ զնախանձորդս ձեր եւ զթշնամիս. տացէ՛ ձեզ տեսանել զաշխարհն Հայոց եւ զընտանիս ձեր. եւ զոսկերս իւրաքանչիւր ուրուք զձեր առ ոսկերս հարց ձերոց ժողովեսցէ եւ զոգիս ձեր պահեսցէ անվնաս։„

Լուեալ զայնպիսի հրաման ի սուրբ քահանայիցն ամենայն նախարարացն՝ ետուն պատասխանի եւ ասեն. “ո՞ արդեօք ախտացեալ տրտմեսցի յանանց բարութեանն, ուստի մերժեալ են ցաւք եւ տրտմութիւնք. բայց որ արտասուեմքս փղձկալով թէ ընդէ՞ր իսկ անմահ եւ անախտ ստեղծուածս յԱրարչէն՝ գերեալ ի խաբէութենէ թշնամւոյն՝ դար-

ձեալ ի հող անկաւ ընդ ախտիւ եւ մահուամբ:„ Եւ այսպիսի բանս լուեալ սուրբ քահանայիցն սկսան ամենեքեան տարածել զձեռս յերկինս եւ ասել. "Գոհանամք զքէն, Աստուած, որ ի շնորհէ քարոզութեան սրբոց առաքելոցն բազում ծնար առաքեալս եւ անթիւս ծնար նահատակս, որպէս տէրն Գրիգորիոս՝ արարողն ուղիղ գործոց եւ ուսուցիչն յստակ եւ անհերձ վարդապետութեան՝ նախանձեցուցեալ զամենեսեան ի բարի նախանձս՝ ծնաւ վարդապետս եւ անթիւ նահատակս, յոլով միանձունս, անչափ դասս կուսանաց: Գոհանամք զքէն, Փրկիչ, որ ի հօտէն սրբոյն Գրիգորիսի զոչխարսն առաւել քան զհովիւս՝ բանաւորս արարեր եւ զաշակերտս ի ժողովրդենէն առաւել քան զվարդապետս յօրինեցեր գիտունս: Ահա եւ մեք այժմ զօրացեալք քաջալերեցաք ի բանից շնորհալից հոգեւոր ծննդոցս մեր. հարք յորդւոց, վարդապետք յաշակերտաց, քահանայք ի ժողովրդոց: Եւ արդ՝ յուղարկիմք ի սոցանէ ուրախութեամբ առ քեզ. եւ ինքեանք մնալով ի մարմնի՝ ընդ քեզ են եւ առ քեզ եւ քեւ զօրանան. պահեա զսոսա ամենազօր աջովդ քո. մխիթարեա զսոսա ուրախութեամբ բանի քո, զխաղաղութիւն քո տուր սոցա:„ Եւ այսպէս օրհնեալք զերանելի կապեալսն ասեն. "դուք մի՛ տրտմիք, այլ ուրախութեամբ ուրախ լերուք: Որ ասացն թէ ո՛չ թողից զձեզ որբս, արձակէ զձեզ ի կապանացդ, տայ ասել ձեզ համարձակաձայն պարծանօք թէ վասն քոյ մեռանիմք զօրհանապազ. համարեցաք որպէս զոչխար ի սպանդ: Եւ Ամենատէրն խորտակէ զսատանայ ի ներքոյ ոտից ձերոց. երեւելիս եւ պայծառս ցուցցէ զձեզ ի մէջ ազգիս ամ-

բարշտի. դարձուսցէ զձեզ յերկիր ձեր. պահեսցէ զտունս ձեր. ժառանգեցուսցէ զաւակի ձերում զվիճակ հարց իւրեանց։„ Եւ եղեւ ամենայն անձն երանելի նախարարացն քաջալերեալք եւ տպաւինեալք ի յոյսն երկնաւոր։

Եւ գային հասանէին բազմութիւնք դահճաց յամբարապետէն ջահիւք լուցելովք՝ ունելով ընդ իւրեանս բազմութիւն գարբնաց գործւովք արուեստաւորութեան իւրեանց՝ սալիւք եւ ուռամբք, կռանօք եւ խարտոցովք՝ խարտել եւ կտրել եւ ի բաց հանել զերկաթսն ի ձեռաց եւ յոտից եւ ի պարանոցէ սրբոցն. եւ զոր ոչն կարասցեն կտրել խարտոցօքն՝ ուռամբք ջարդեալ զբեւեռ երկաթոյն ի վերայ սալիցն՝ հանցեն ի բաց, քանզի ստուարք էին եւ ծանունք քան զբնութիւն ամենայն երկաթոյ, որովք զայլ մահապարտսն կապէին, զոր ի նոցա իսկ անուն տուեալ էր առնել մոգուցն, որպէս յանուն արանց վատախրատից եւ աշխարհակորուսաց եւ աստուածասպանաց. եւ մանաւանդ շղթայս սրբոյ կաթուղիկոսին Յովսէփայ ստուարագոյնս առնէին եւ անհեդեգս։ Տեսեալ սուրբ քահանայիցն զբազմութիւն դարբնացն՝ խռովէին առհասարակ, քանզի՝ զորօրինակ՝ արք եւ կանայք ոսկւովք եւ պատուական ականբք եւ մարգարտովք կապեն զիւրոյին անձանց զձեռս եւ զոտս եւ զպարանոց, թէ ոք ի թշնամեաց կամ ի բռնաւոր իշխանաց կապէր առ վտանգի եւ նովիմբ տայր կալ եւ չհանել ի բաց, առատանային փղձկալով եւ չունէին ժոյժ եւ առ վայր մի. արդ՝ ինքեանք զինքեանս կապեն եւ չհամարին ծանր եւ ոչ զգան, բայց եւ ոչ երեւին այնպէս գեղեցիկք եւ շքեղք եւ ամենայն տեսողաց

*պատուականք, որպէս երեւէին հայրանման որդիք նահատակին Գրիգորի ցանկալի շղթայիւքն երջանիկք եւ հրեշտականմանք։*

*Մատուցեալ դարբինքն եւ ի բազում ժամս ջանացեալ ո՛չ կարացին կտրել զստուարութիւն բեւեռացն. յետոյ ապա՝ եդեալ ի վերայ սալիցն եւ ուռամբք ջարդեալ հազիւ զերծուցեալ հանէին զերկաթսն ի մարմնոյ սրբոցն, չարաչար վիրաւորելով զմարմինս նոցա։*

*Եւ հրաման տայր Վեհդենշապուհ եւ որք ընդ նմա օգնականք՝ կոչել ի ծածուկ ի գիշերի զականաւոր արս շահաստանին եւ զերեւելիս ի մոգուցն եւ հրամանաւ արքունի ասէ. "յիշեցէք զերկիւղ թագաւորաց, որք նման աստուծոց իշխեն սպանանել եւ կեցուցանել պատուել եւ անարգել. եւ մի՛ զոք յօրէս յայսմանէ մինչեւ ցբովանդակել ամենայն կարաւանին արքունի եւ ի Վրկան հասանել՝ զհայ այր ուստի՛ եւ իցէ կամ ի մանկտւոյ կապելոց նախարարացն Հայոց, որ ի շահաստանիս են եւ կամ ի մանկանց կապելոցս երիցանցս, զորս մեք այսօր ի բաց տանեմք եւ կամ բնաւ Հայ զոք, որ յանկարծ թէ եւ պլուստ ուստեք եկեալ իցէ այսր, թողուլ արտաքս քան զդուռն շահաստանիս. եւ գտանիցիք առանց ամենայն թողութեան ազգաւ հարեալք եւ դառն մահու մեռանիցիք ի թագաւորէն։„*

*Եւ խաղացուցանել այնուհետեւ զսուրբսն փութայրն. եւ տեսեալ զայն նախարարացն Հայոց, որք ի դղեկի մնալոցն էին, աներկիւղ համարձակութեամբ առաջի ամենայն օտարացն անկեալք յոտս սուրբ քահանայիցն խնդալից եւ ուրախա-*

սիրտք համբուրէին յերկար ողջունիւ ասելով թէ՝ "յիշեսջիք զմեզ անմոռաց յուրախութեանն ձերում:„ Նոյնպէս եւ սուրբ քահանայքն զուարթալից երեսօք ընկալեալք զամենեսեան ի գիրկս իւրեանց ասէին. "Աստուած զօրութեանց օրհնեսցէ զձեզ եւ տացէ ձեզ տեւողութիւն եւ զօրացուսցէ զձեզ առաջի ազգացս հեթանոսականաց եւ արձակեալ յերեւելի կապանացդ առաջնորդեսցէ ձեզ յաշխարհն ծննդեան ձերոյ:„

Տեսեալ անօրինացն այնպիսի ուրախալից հրաժեշտ ի միմեանց սուրբ քահանայիցն եւ Նախարարացն Հայոց՝ հաշուէին զնոսա լինել անգէտս հրամանի թագաւորին:

Եւ սուրբ քահանայիցն յուղարկեալք գնային: կազմէին ճեպով եւ մանկունք, որք եկեալ էին ինքնակամ յաշխարհէն Հայոց արբանեկել նոցա ի կապանսն. մանաւանդ Խորէն երէց ի գաւառէն Այրարատու ի գեղջէն Որկովի եւ Աբրահամ երէց ի Տայոց ի գեղջէն Ջենակս. Վեհդենշապհոյ հարցեալ թէ "դուք յո՞ կազմիք„ եւ լուեալ ի նոցանէ՝ թէ "ուր զտեարսդ մեր եւ զվարդապետս տանիք, ընդ դոսա պատրաստ եմք երթալ ի կեանս կամ ի մահ,„ հրաման տայր ունել զնոսա եւ պահել անդէն ի շահաստանին: Չուէր այնուհետեւ Վեհդենշապուհ հանդերձ քահանայիւքն ի Նիւշապհոյ ի վեցերորդ ժամու աւուրն ընդ ճանապարհն որ ելանէ ի Վրկանն:

# ԳԼՈՒԽ ԺԹ.

## Խ ո ռ ժ ի կ:

«Հաւասարեսցէ մահու մեր ընդ մահ քաջ նահատակացն։»

Առն[1] միոյ վաճառականի, որ էր ազգաւ Խուժիկ եւ զլեզու Հայերէն խօսից քաջ տեղեկաբար գիտէր եւ էր որդի քրիստոսասէր եւ հաւատացեալ ծնողաց եւ զերանելի քահանայսն եւ զնախարարսն Հայոց յոյժ ընտանութեամբ գիտէր եւ բազում ծախս յընչից եւ սպասաւորութիւն արարեալ էր, մինչ ի Վրկանին էին, լուեալ զհրաման թագաւորին եւ անյապաղ առեալ ի գրաստուց իւրոց գրաստս տոկունս եւ ուժեղս եւ նմանեալ առն կարաւանի՝ ճանապարհորդէր ընդ Վեհդենշապհոյ՝ ցուցանելով նմա զճանապարհայնն բազում արթնութեամբ շուտութիւնս. եւ հաճոյ եղեալ Վեհդենշապհոյ ամենայն գործ հպատակութեան Խուժկին՝ սիրէր զնա յոյժ. հարցանէր յաղագս գեղջն նորա եւ ծնողացն. եւ Խուժիկն խօսէր ընդ նմա պլաբանութիւնս։ Վեհդենշապուհ տեսանելով զայրն յամենայնի յաջողակ չտայր թոյլ եւ ոչ ժամ մի հեռանալ յիւրմէ. այլ եւ հաւատայր նմա զխորհուրդ թագաւորին։ Ապա՝ պատճառէր Խուժիկն պէտս ինչ զիւր տեսանել այլուր եւ խնդրէր աղաչելով հրաժեշտ ի Վեհդենշապհոյ. որով առաւել հաւատարմագոյն ցուցանէր նմա զինքն. իսկ Վեհդենշապուհ եւ բնաւ իսկ ոչ առնոյր յանձն լսել բանից Խուժկին։ Եւ երթային այն օր ի գեօղ մի, որում անուն էր Բեւան, եւ դադարէին անդ Ղազար.

մինչեւ ցառաւօտուն պահն. յարուցեալ փութով
գաղտ միայն երանելի Խուժկաւն եւ անօրէն դահ-
ճօքն գնացին ի դեղջէն լռելեայն. եւ ընդ ծագել
առաւօտուն հասանէին ի տեղի մի քարուտ առա-
պարաձոր աւազուտ, յոր ոչ հասանէր արօտական
եւ ոչ բնաւ անցանէր ընդ նա ուղեւոր. եւ արկեալ
Եղիշ. աթոռս երեցունց իշխանացն նստէին: Եւ հրամայե-
ցին դահճացն կապել զոտս եւ զձեռս նոցա (քա-
հանայից). եւ արկին պարանս երկայնս յոտս նոցա
եւ երկու երկու լծեցան եւ առին ի քարշ, այնպէս
զի ամենեւին խայծ ոչ մնաց ի մարմինս երանելեացն.
Ղազար. ապա լուծին եւ ածին ի տեղի մի: Եւ կացուցեալ
զսուրբ նահատակսն յատենի ասէ ցնոսա Վեհ-
դենշապուհ. „անհամար չարիս գործեալ է ձեր եւ
բազում Արեացն կոտորածի պարտաւոր էք, զի թէ
լոկ երկուց կամ երից անձանց մահու պատճառ էիք,
չէիք արժանի կելոյ. թող թէ այնպիսւոյ աշխարհի
մեծի, որպէս Հայքն են. ձեր խրատու գործեցաւ
ամենայն գործն այն. եւ արքայից արքայ առ ձեզ
կարի բարերարութիւն արար, զի մեզ հրաման ետ
եւ ասէ՝ թէ հաւանին արեգական եւ կրակի եր-
կիրպագանել՝ նոցա զմահապարտութիւնն թողում,
զազատորեարսն, որ կապեալ է, արձակեմ ի Հայս
եւ զիւրաքանչիւր ուրուք զտանուտէրութիւնն տամ:
Արդ՝ յիշեցէք զձեր անձինսդ եւ զայնչափ կապելոց
զոգիս, եւ լերուք պատճառք բազմաց կենդանու-
թեան. ապա թէ ոչ՝ մեռանիք եւ ամենայն ա-
Եղիշ. րիւնքն ի ձեր յոգւոց խնդրին: Ահա դուք ձե-
րային աչօքդ տեսէք այսօր, եթէ այր տոհմիկ,
վասնզի անարգեաց զդենի մազդէզն եւ պատրեցաւ
ի ձեր տխմար գիտութիւնդ, իբրեւ զգերի մի զան-

աշխարհիկ շկօթակ արարի զնա։ Արդ՝ չէք ինչ ձեզ այլ հնար կենաց, բայց եթէ երկիր պագանիցէք արեգական եւ կատարիցէք զկամս թագաւորին։„

Եւ հրաման տային երանելոյն Սահակայ եպիսկոպոսին թարգմանել սրբոյն Յովսէփայ եւ սրբոյն Ղեւոնդի եւ ընկերակցացն, քանզի պարսկերէն այլ ոք ի սրբոցն ոչ գիտէր։ Պատասխանի արարեալ եպիսկոպոսին Սահակայ ասէ ցԴենշապուհ. “մի տայք ինչ ասել ցդոսա բանս. վասն զի խօսք, որ ինչ ատելի թուին, զի՞ եւս ասեմ ցնոսա. արարէք զի՛նչ եւ կամիք։„ Եւ սրտմտեալ Դենշապհոյ եւ այլոցն ասեն ցսուրբն. “դու հարկաւորութեամբ ասա ցդոսա, թո՛ղ գիտասցուք եւ զդոցա խօսս„. Եւ սրբոյ եպիսկոպոսին կարճառօտիւ զբանսն ասացեալ ցսուրբ ընկերակիցսն իւր՝ մեծաձայն ծաղու անդօսնեցին զբանիւքն։ Սակայն պատասխանի տուեալ սրբոյ կաթուղիկոսին Յովսէփայ ասէ. “եղեւ հարցումնդ այդ ատենաւ առաջի հազարապետին Արեաց. եւ զբանս մեր եւ զկամս թագաւորին գիտել ետ. նոյն են մեր ամենեցուն կամք եւ ո՛չ փոփոխիմք. մեզ մի՛ լիցի ուրանալ զճշմարտութիւն եւ ծառայել սուտ աստուծոց. եւ մերով ուրացութեամբ ումեք ի հաւատացեալ կապելոցն մի՛ լիցի արձակումն եւ ի յաւիտենից անլոյծ կապանսն անկանել։„ Ղազար.

Հրամայէին եւս ասել ցերանելի Ղեւոնդ թէ “մեր լուեալ է վասն քո՝ թէ օրինաց քրիստոնէից իբրեւ զքեզ ոք տեղեակ չէ. եւ ի քո խրատուէ աւելի եւս կորեաւ աշխարհն Հայոց. արդ՝ լեր այժմ խրատատու եւ թո՛ղ կեան դոքա եւ այլ բազում անթիւ անձինք. եւ այնպիսի պատիւս գտանես ի

թագաւորէն, որովք անուանի լինիս ի քում աշխարհին եւ յամենայն ազգս։»

Եւ սուրբ եպիսկոպոսն Սահակ երկայնմտութեամբ թարգմանէր առ վայր մի։ Եւ սրբոյ Ղեւոնդի սկսեալ խօսել՝ ասէ. «մեզ դոցա պատասխանի այնքան պարտ է առնել, որչափ արար Փրկիչն Պիղատոսի յատենին. ասա ցդոսա՝ «դու՛ք ասացէք» թէ օրինացն մերոց տեղեակ եմ եւ բազմութեան ժողովրդոց եղեալ եմ ուսուցիչ, ցուցանէ ձեզ տիոյ իմոյ մերձաւորութիւն ի կատարումն. արդ՝ ընտրողութիւն լաւ գիտութեան իմոյ յաղագս երկիւղի մարդոյ մոռացեալ փոխանակիցեմ, քաւ լիցի, եւ յանդիմանիցիմ բանիւն թէ որում ուսուցեր *Եղիշ.* զբազումս, զանձն քո ո՛չ ուսուցեր։ ՚Մի՛ խօսիր ընդ մեզ իբրեւ ընդ տղայս, զի հասակաւ կատարեալ եմք եւ գիտութեան ո՛չ եմք անտեղեակ. մեր օրէնքն ուսուցանեն պատուել զերկրաւոր թագաւորս եւ սիրել զնոսա յամենայն զօրութենէ. ո՛չ միայն զարբանեկութիւն հպատակութեան պարտիմք հատուցանել նոցա, այլ եւ մահու չափ զանձինս ի վերայ դնել թագաւորին։ Եւ որպէս յերկրի ո՛չ ունիմք իշխանութիւն փոխանակել զնա ընդ այլում, նոյնպէս եւ յերկինս չունիմք իշխանութիւն փոխանակել զճշմարիտ Աստուածն մեր ընդ այլում։ Ո՞յ իմաստուն վաճառականաց զպատուական մարգարիտն փոխանակիցէ ընդ անարգ թրուշայի, բայց եթէ յիմարեալ իցէ տգիտութեամբ որպէս *Ղազար.* ձեր մոլորութեան առաջնորդքն։ ՚Վասն պատուի եւ փառաց, զոր խոստանայք, մի՛ լիցի առնուլ զպատիւ, զոր ցեց եւ ուտիճ ապականէ եւ գող ականհատանէ եւ տանի. մի ինչ պակաս է ի մեր փա-

ռաւորութենէս, բաժակ մահուգ, որում իբրեւ զպապքեալ ծարաւիս փութամք ըմպել. արբուցէք վաղվաղակի եւ մի՛ եւս յերկարեալ ձգտէք զանմիտ զվնասակար բանս բանդագուշեալ թագաւորին ձերոյ։,, Աղաչեցին զսուրբ եպիսկոպոսն Սահակ՝ Մուշէ, Արշէն եւ Քաջաջ ասել ցանօրէն իշխանն եւ նոցա բանիւ թէ "զոր ինչ ասացին սուրբ վարդապետքն մեր՝ դոյն են մեր կամք եւ խնդիրք։,,

Եւ լուեալ զայս Վեհդենշապուհ եւ գործակցացն՝ ի սրտմտութիւն բարկութեան գրգռեալք՝ կամեցան եւ այլ պատրողական բանս խօսել՝ թերեւս կարասցեն ճեղքել զոք ի գնդէ. սկսան ստիպել զսուրբ եպիսկոպոսն Սահակ, զի թարգմանեսցէ նոցա եւ այլ զոր ինչ կամիցին խօսել ընդ սուրբսն։ Եւ սրբոյ եպիսկոպոսին պատասխանի Եղիշէ.
տուեալ ասէ. "Եթէ վեհքն մարտուցեալ են, մեք խոնարհագոյնք քան զնոսա զի՞րդ կարասցուք հաւանել բանից քոց։ Միաբանեա՛ զջուր եւ զկրակ, զի ուսցուք ի նոցանէ զխաղաղութիւն. կոչեա՛ զարեգակն ի տուն որպէս կրակ. եթէ նմա ո՛չ մարթի գալ։ Քեզ ո՛չ կարեմ մեղադիր լինել. որոյ ո՛չ տեսեալ է զմեծ թագաւորն, պատուաւորացն մատուցանէ զերկրպագութիւն։ Վասն արեգական՝ եթէ կամիցիս ուսանել, մասն է նա աշխարհիս արարածոց. ո՛չ է նա առանձին սուրբ յատակ լուսով, այլ ի ձեռն օդոյն տարածանէ զճառագայթս իւր եւ հրային մասամբ ջեռուցանէ զամենայն գոյացեալս ի ներքոյ իւրոյ կայանին։ Զորօրինակ նաւ մի ի վերայ ջուրցն անգիտութեամբ գնայ զուղեւորութիւն ի ձեռն հմուտ եւ ճարտար նաւապետին, այսպէս եւ արեգակն ի ձեռն կառավարին իւրոյ ունի զփո-

փոխմունս շրջանին իւրոյ տարեւոր ժամանակին: Եւ որպէս այլ մասունք աշխարհիս հաստատեալ են վասն մեր կենացն, եւ զնա իբրեւ զմի յայլոց մասանց տուեալ է մեզ յառաջնորդութիւն լուսոյ, որպէս զլուսին եւ զաստեղս եւ զօդս յարածուս եւ զամպս անձրեւաբերս. Նոյնպէս եւ յերկրիս մասանց զծով եւ զգետս եւ զաղբիւրս զամենայն եւ զցամաքայինս: Աստուած եւ զմի ոք ի սոցանէ չէ արժան անուանել: Միոյ իշխանութեան երկու թագաւորք ոչ լինին: Արդ եթէ կամիս ուսանել զճշմարիտն, քաղցրացո՛ զդառնութիւն սրտիդ եւ բա՛ց զաչս մտացդ: Արարիչն ամենեցուն աներեւոյթ է ի մարմնաւոր աչաց, այլ մտաց իմանի զօրութիւն նորա: Վասն զի ետես զմեզ ի մեծի տգիտութեան, յորում եւ մեք իբրեւ զձեզդ երբեմն զերեւելիսս կարծէաք արարիչ, եկն մարմնացաւ ի մարդկանէ եւ ուսոյց մեզ զաներեւոյթ աստուածութիւնն իւր. բարձրացոյց զինքն ի խաչն կախաղանի, մերկեաց յարեգակնէ զլոյս ճառագայթիցն իւրոց, զի եղիցի խաւար սպասաւոր մարդկութեան նորա: Պատրա՛ստ եմք ըստ օրինակի Տեառն մերոյ մեռանել, որպէս եւ կամիս կատարեա՛ զկամս դառնութեան քո:„

Անօրէնն Դենշապուհ հրամայեաց զմի ոմն երէց Արշէն անուն. եւ դահիճքն հրաման առեալ սրով հատանել զպարանոց երանելւոյն եւ ընկեցին զմարմինն ի խորխորատ մի ցամաք:

Սկսաւ խօսել Դենշապուհ ընդ եպիսկոպոսին եւ ասէ. "յաշխարհն Հայոց՝ զտարի մի եւ զվեց ամիս եհաս շրջել ինձ. ոչ յիշեմ եթէ բան մի տրտունջ յումեքէ լուայ վասն քոյ. եւ առաւել եւս վասն

Ցովսէփայ, զի դա իսկ էր իշխան ամենայն քրիստոնէից եւ հաւատարիմ յամենայն իրս արքունի. եւ ես ինձէն աչօք իմովք տեսի, զի որպէս հայր հաստատուն համարեալ էր ամենայն աշխարհին եւ անաչառութեամբ սիրէր զմեծամեծսն եւ զփոքունս։ Արդ՝ աղաչեմ զձեզ, խնայեցէք ի պատուական անձինս ձեր եւ մի՛ մատնիք ի մահ չարչարանաց ըստ առաջնոյն կարգի, զոր տեսէք աչօք ձերովք։ Իմ զի աղ եւ հաց կերեալ է յաշխարհին ձերում, գութ եւ սէր ունիմ ընդ աշխարհն ձեր։„

Ղեւոնդ երէց ասէ. “Որ ունիս իշխանութիւն ի վերայ մեր՝ դատեա՛ զմեզ ըստ կամաց քոց. չեմք ինչ զանգիտելոց յահաւոր սպառնալեացդ եւ ո՛չ երկիւղած ի դառն մահուանէն, զոր ածելոց ես ի վերայ մեր։„

Յայնժամ մեկուսացոյց սակաւիկ մի զերանելիսն ի միմեանց, եւ միայն ասէ ցսուրբ եպիսկոպոսն. “Յիշեցուցանեմ քեզ զչարիսն զոր գործեցեր. դո՛ւ աւերեցեր զատրուշանն յՌշտունիս, կամ զկրակն դո՛ւ սպաներ եւ զմոգսն դո՛ւ չարչարեցեր։„ Եպիսկոպոսն ասէ. “ո՛չ զօգուտ կենաց քոց կամիս ուսանել յինէն, այլ արեան իմոյ ցանկան միտք քո. զտուննն արդարեւ ես աւերեցի եւ զմոգսն չարչարեցի գանիւ, եւ զկահ պղծութեան՝ որ ի տանն էր ի ծովն ես ընկեցի. այլ զկրակ ո՞վ կարէ սպանանել. Արարիչն անմահս հաստատեաց զբնութիւն չորից նիւթոցս. մեռանի այն, որ շնչէն եւ շարժի եւ գնայ եւ ուտէ եւ ըմպէ. Երբ տեսեր դու զկրակն գնայուն կամ խօսուն կամ գիտուն։

Դենշապուհ ասէ. “խոստովանեա՛, դո՛ւ անցուցեր զկրակն թէ ո՛չ։„

Պատասխանի ետ երանելին. "Ես ինձէն մտի ի կրակատունն ձեր եւ տեսի զի կային պաշտօնեայք ամբարշտութեանն եւ կրակարանն լի հրով առաջի նոցա բորբոքեալ այրէր. Հարցի ցնոսա բանիւք թէ զի՞նչ համարիք ի միտս ձեր զկրակ պաշտամանս այսորիկ". Ետուն պատասխանի եւ ասեն. "մեք ինչ ոչ գիտեմք. այսչափ իմանամք, զի սովորութիւն է նախնեացն եւ հրաման բուռն թագաւորին: Ասեմ ցնոսա. "եւ զբնութիւն կրակիդ զի՞նչ իմանայք, արարի՞չ կարծէք թէ արարած". ասեն միաբան ամենեքեան. "Արարիչ մեք զդա ոչ գիտեմք. ձեռք մեր փապարեալ են ի կացնի եւ ողունք մեր տեռեալ են ի փայտակրի, աչք մեր գիջացեալ են արտասուօք ի կծուութենէ ծխոյ դորա եւ երեսք մեր մրոտեալ են ի խոնաւութեանց ծխոյ. եթէ շատ մատուցանեմք նմա զկերակուրն, յոյժ քաղցնու, եւ եթէ բնաւ չտամք՝ ամենեւին անցանէ, եւ եթէ մօտ երթամք եւ երկիր պագանեմք, կիզու զմեզ, եւ եթէ ոչ երթամք մօտ ամենեւին, մոխիր լինի. մեր այդպէս հասեալ է ի վերայ բնութեան դորա: Օրէնսդիրքն մեր հոգւովք մտաց կուրացեալ են, այլ թագաւորն մեր՝ մարմնով՝ միով ակամբն կոյր, այլ ոգւոյն բնաւ չիք իսկ աչք:" Վասն այնորիկ եւ ես սակաւիկ մի չարչարեցի զնոսա գանիւ եւ նոցուն իսկ ետու զկրակն ի ջուրն ընկենուլ. եւ ապա զմոգսն արձակեցի:"

Ղազար. Եւ սրտմտեալ երեցունց իշխանացն, յարուցեալ ինքնին Վեհդենշապուհ՝ հարկանէր սուսերաւ զուս սրբոյ եպիսկոպոսին Սահակայ եւ հուպ ի գոտին մերձեցուցանէր զվէրսն. եւ սրբոյ եպիսկոպոսին ի սաստիկ հարմանէ ի քարի մի յեցեալ՝ որ-

պէս ի բերանոյ ամենայն սրբոցն սկսաւ ասել այս-
պէս. “Գոհանամք զքէն Քրիստոս, որ բազում ան-
գամ գառնդ անմահական անծախութեամբ բաշ-
խեցար ի ձեռաց մերոց. արդ՝ ընկա́լ զամենեսեանս
արժանաւորապէս զպատարագեալս ի հոտ անու-
շից։„ ’Քաջալերէր զընկերակիցս իւր եւ ասէր. Եղիշ.
Ահա́պա առաքինիք, եհաս ժամ կատարման մերոյ։„

Եւ ապա հրամայէին զսուրբ կաթուղիկոսն Ղազար.
Յովսէփ գլխատել սրով. իսկ յաղագս սրբոյն
Ղեւոնդի հրաման ետուն մերկացուցանել եւ քար-
շել ուժգին ընդ քարաժեռ կոպճուտ տեղիս. եւ
այնպէս քարշեցին յերկար ժամս մինչեւ զամենայն
մարմինս սրբոյն զլանջացն եւ զթիկանցն քանցեալ
քերեցին ի մորթոյն. եւ այլքն կտրեցին սրով
զգլուխ Մուշէի, Արշէնայ եւ Քաջաջայ. եւ ապա
զսուրբն Ղեւոնդ ածին ի նոյն տեղիս, ուր եւ այլ
սուրբքն կատարեցան եւ հատին զգլուխ սրբոյն
սուսերաւ. եւ սուրբ եպիսկոպոսն Սահակ կայր
եւս սակաւ ոգով, զորոյ յետ վախճանելոյն ամենե-
ցուն կտրեցին զգլուխն սուսերաւ։

Այսպէս ի վեշտասաներորդում ամի թա-
գաւորութեան Յազկերտի, որ օր քսան եւ հինգ
էր ամսոյն Հրոտից, պսակեցան սուրբքն վեցեքեան
յԱպար աշխարհի մերձ ի գեօղն մոգուց Ռեւան[2],
’որոց անուանքն են՝ Սահակ եպիսկոպոսն յՌշտու- Եղիշ.
նեաց, սուրբն Յովսէփ ի Վայոց ձորոյ ի գեղջէ Հո-
ղոցմանց, Ղեւոնդ երէց ի Վանանդայ՝ ի գեղջէ Ի-
ջաւանից, Մուշէ երէց յԱղբակոյ, Արշէն երէց ի
Բագրեւանդայ ի գեղջէ Եղեգեկայ, Քաջաջ սար-
կաւագ յՌշտունեաց։„ ’Եւ որպէս ստուգիւ եւ Ղազար.
ջերմ խնդրով կամսարականին Արշաւրայ հարցեալ

ցերանելի խուժիկն եւ լուեալ ի նմանէ պատմեաց մեզ՝ գրեցաք հաւաստեաւ։

Եւ գնացեալ ի բաց ի տեղւոջէն իշխանացն՝ արս ինն թողին կազմ զինու, ընդ որս՝ նախ առաջին զերանելի Խուժիկն, հրաման տուեալ զի մինչեւ ցաւուրս տասն պահեսցեն զգուշութեամբ զդիակունսդ, մինչեւ եկեալ անցցէ ի բաց կարաւանն արքունի։ Եւ պահապանացն կացեալք զայն աւուրս՝ խորհէր Խուժիկն, եթէ զինչպիսի հնարիւք արժանի լիցի գողանալոյ զնշխարս սրբոցն յայլոց պահապանացն. եւ մինչդեռ յայնպիսի խոհականութեան կայր (՝իբրեւ աւուրք երեք անցին՝), յանկարծակի ի նմին աւուր յերեկորեայ գիշերոյն լինէր շարժումն մեծ ի տեղւոջն, բոմբիւնք եւ ձայնք ահագինք յանդնդոց հնչէին. ձայնք որոտմանց եւ փայլատակունք վլերինս դողացուցանէին եւ սիւն լուսոյ ըստ օրինակի ծիածանի զնահատակաց մարմինս ծրափակէր. եւ կործանեալ յերկիր պահապանքն կիսամեռք լինէին զգիշերն ողջոյն եւ զտիւն բովանդակ եւ զերկրորդ եւս գիշերն. մինչեւ ի ժամ արեգա-

Եղիշէ. կան ծագման։ ՚Արհաւիրք մեծ անկանէին ի վերայ ամենեցուն. ձայնք ահեղ հնչեցին, երկիրն դողայր ի ներքոյ նոցա, եւ շողիւնք սուսերաց փայլատակունս արձակէին շուրջ զնոքօք եւ զամենայն դիակունսն կանգնեալ տեսանէին, եւ զնոյն բանս

Ղազար. ատենին ահագինս բարբառէին ի լսելիս նոցա։ ՚Ապա լուէին ձայնք անդնդոցն հնչմանց եւ որոտմունք, եւ դադարէր երկիրն ի շարժելոյ. պահապանքն սակաւիկ մի ոգի առեալ՝ աչս ածէին փախչելոյ, այլ ոչ կարէին կանգնել ի յերկրէն. բայց զինն ժամու աւուրն երրորդի յարուցեալ Խուժիկն որպէս թէ

կամաւ կաղս ի կաղս հայելով զկնի իւր փախչէր, զի զնոսա զօրացուսցէ ի կանգնել եւ զկնի իւր հեռացուցանել ի վայրացն. որոց տեսեալ ուշաբերեալք զկնի նորա սրանային, չիշխեցեալք բնաւ դառնալ եւ հայել ի տեղիսն եւ զհետ Վեհդենշապհոյ փութային. բայց Խուժիկն ընդ այլ ճանապարհ որոշէր ի նոցանէն: Հասեալ պահապանացն յաւուր վեցերորդի պատմէին զամենայն անցս աղէտիցն. Դենշապհոյ եւ ընկերացն ապշեալք ի բազում ժամս ոչինչ կարէին իմանալ հնարս. զպահապանսն եւեթ լռեցուցանել ջանային եւ ինքեանք առանձինն զարմացմամբ յանզգայութիւն ընկղմէին ասելով ցմիմեանս. ո՞չ են իրք քրիստոնէից թեթեւ իմն եւ դուզնաքեայ, այլ հաստատ մեծ է զօրութիւն օրինաց նոցա եւ հաւատոց. եւ մեք յանգիտութեան վնասեալ կորնչիմք եւ չզգամք: ՚Զի՞նչ գործեսցուք վասն անքնին աղանդոյն քրիս- Եղիշէ.
տոնէիցն. քանզի մինչդեռ կենդանի էին, զարմանալի էր կեանք նոցա. ընչատեացք էին իբրեւ զանկարօտս, սրբասէրք էին իբրեւ զանմարմինս, անաչառք էին իբրեւ զարդարադատս, աներկիւղք էին իբրեւ զանմահս: Եթէ լուռ լինիմք, մեզ եւ անձանց մերոց կասկած իսկ է. եթէ տանիմք զդոսա առաջի թագաւորին, գուցէ եւ օրինացս մերոց քակտումն ինչ հասանիցէ:,,

Խուժիկն գիտացեալ զպատախանիսն իշխանացն՝ Ղազար.
առեալ ընդ իւր տասն եւս այլ ընկեր եւ գրաստս եւ ըստ իւրաքանչիւր անձին սրբոցն սապատս չորեքկուսիս, եւ գնացին լռելեայն ի գիշերի յիւրսն. եւ մերձեալք ի վայրն վրիպէին ի տեղւոյն, քանզի աղջամղջին էր գիշերն. եւ մինչդեռ խռովեալք յածէին ընդ տե-

զխան եւ ահմ լուսաւոր արծուոյ սլացեալ հասանէր յերկնից եւ նստէր ի վերայ մարմնոյ սրբոյն Ղեւոնդի։ Եւ նոցա ուրախալից սրտիւք ձեռն ի գործ արկեալ ժողովեցին զիւրաքանչիւր ոք յականէ ի մի մի սապատ եւ բարձեալ վաղվաղակի գրաստուց փոխէին յայլ տեղի յանապատին եւ դադարեալ աւուրս եօթն վասն քաջ ցածնլոյ երկիւղին. ապա մաքրեցին զոսկերս սրբոցն եւ առեալ բերին ի շահաստանն. լուելեայն սկսանէին տալ եւ ոմանց առաքինի քրիստոնէից, որք ի կարաւանին էին եւ ստիպով յիւրաքանչիւր աշխարհս տային հասուցանել վաղվաղակի։

Եղիշէ. ‘Եւ զառաջինն պտուղ ընծային մատուցանէին կապեալ նախարարացն։ Այս երանելի խուժիկս, որ արժանի եղեւ ի ծածուկ սպասաւոր լինել սրբոցն, որ ինչ ի մահուանէ եւ այսր ասացաւ դատակնիք վճռիս այսորիկ երկրորդեաց մեզ զամենայն կարգաւ։

Ղազար. “Սկսեալ այնուհետեւ մի ըստ միոջէ պատմել կապելոց նախարարացն Հայոց երանելի խուժիկն (զոր անուանել յայսմ հետէ խուժիկ ծանրանամ, եւ զանուն սքանչելոյն ոչ ոք հոգացեալ պատմեաց մեզ,) զխնամս մեծամեծ եւ զօգնութիւն Հզօրին զոր արարեալ էր նմա։

Նոյն խօսք եւ մխիթարութիւն էր յաւէտ կապելոցն Հայոց յելս եւ ի մուտս իւրեանց ի նստել ի տան եւ յառնել, ի տօնս եւ յամսագլուխս. մանաւանդ տէր Արշարունեաց[3] կամսարականն Արշաւիր որ յամենայն ժամու վարդապետութիւն սրբոյն Ղեւոնդի եւ պատասխանիք իւրաքանչիւր ուրուք ըստ հարցմանն սպանողացն պատմէր անձանձրոյթ հանապազ. եւ մեր յոլովագոյն լուեալ ի հրաշալի կամսարականէն գրեցաք յօժարապէս։

## ԳԼՈՒԽ Ի.

*Խորէն եւ Աբրահամ:*

“Զեմք ինչ մեք լաւ քան զառաջինսն։„

Եւ մտեալ Յազկերտի ըստ կարգելոյ ժամանակին յոստանն Վրկան՝ համարձակութիւն պնդուհետեւ տային նախարարացն Հայոց արձակել զմանկունս իւրեանց եւ կամ զայլ ոք ի պէտս արքանեկութեան ուր եւ կամիցին. իբրեւ լուան երիցունքն Խորէն եւ Աբրահամ՝ վաղվաղակի ի Վրկան հասանէին եւ անկեալք հրապարակաւ առաջի Դենշապհոյ ասէին. “Եթէ զհոգեւոր տեարսն մեր տարեալ ուրեք յերկիր օտար՝ անդարձ անցուցէք, առնելով բարերարութիւն պատմեցէք մեզ՝ երթալ եւ մեզ լինել անդարձ ընդ նոսա. եւ եթէ սպանէք զնոսա, կամեցարուք եւ ի վերայ մեր տալ զնոյն հրաման.„ Եւ Վեհդենշապուհ ասաց ցերանելիսն՝ թէ “Ճանապարհ վարդապետացն ձերոց ոչ ոք ցուցանէ, բայց վասն ձեր հարցանեմք ցարքայից արքայ:„ Մտեալ ի ներքս Դենշապուհ պատմէր Յազկերտի զխնդիրս երիցանցն. եւ թագաւորն ասէ. “Ի նոցա վերայ մնաս ինչ ոք յայտ չառնէ. երկիր պագցեն արեգական եւ ընկալեալ զպարգեւս մեծամեծս ի մէնջ արձակեսցին յաշխարհն իւրեանց. ապա թէ ոչ հաւանեսցին, պատուհաս կրեսցեն խեղութեամբ[1] եւ երթեալ յԱսորեստան մշակութիւն արասցեն ընդ արքունի մշակսն եւ ի հարկի կայցեն մինչեւ ցվախճան իւրեանց: Ղազար.

Եկն դարձեալ նոյն դահճապետն առ աշակերտս սուրբ սպանելոցն եւ ասէ ցնոսա. “Ի Միհր Եղիշէ.

աստուած երդուեալ է իմ, ոչ հնար է ձեզ ապրել ի մահուանէ, բայց եթէ երկիր պագանիցէք արեգական։ “Խորէն ասէ. “Ցիմ տեսեր զմեզ պակասագոյն քան զհարսն մեր. հանդէս արա քում չարութեանդ եւ մերում բարութեանս եւ ամաչեցեալ գտանի հայրն քո սատանայ։„ Իբրեւ լուաւ դահճապետն սրտմտեալ՝ ետ քարշել ‘զնոսա’ չարագոյն քան զառաջինսն այնչափ սաստիկ մինչեւ բազմաց կարծիք եղեն թէ մեռան։ Դարձեալ խօսել սկսան երկոքեանն եւ ասեն. “փոքր համարիմք զանարգանս զայս առ մեծ սէրն Աստուծոյ, որով կատարեցան հարքն մեր հոգեւորք։ Հապա մի դլար եւ մի դադարեր, այլ զոր ինչ առ նոսինն արարեր, զնոյն եւ առ մեզ կատարեա։„ Ցայնժամ հրամայեաց ‘դահճապետն’ զմահու գան[2] հարկանել. եւ մինչդեռ կիսամեռք յերկիր անկեալ դնէին, հրամայեաց զերկոցունց ականջս մօտ կտրել. եւ ասէ. “եթէ եւ այլ յամեմ առ ձեզ, կարծեմ, եթէ եւ աշակերտէք զիս։ Ցայդ վայր եղեւ հրաման պատուհասից ձերոյ եւ ի վերայ դորին պատուհասի՝ երթալ ձեզ յԱսորեստան եւ լինել ձեզ մշակ յարքունիս։„ Իբրեւ տարան հասուցին ‘զինուորքն’ զնոսա յերկիրն Բաբելացւոց ի գաւառ մի զոր Շահուղն անուանեն (ըստ Ղազարու՝ յԱսորեստան ի գաւառն Շաբուլ.) յայտ եւ գաղտ մեծապէս ընկալեալ եղեն ի բնակչաց աշխարհին։

Ղազար. Լուեալ հաւատացելոցն, որք յԱսորեստանին, ընդ առաջ ելին նոցա խնդութեամբ, պատուեցին զնոսա. նաեւ զկարասի իւրաքանչիւր ուրուք զինչ եւ ունէր բերեալ դնէին առ ոտս երանելեացն. եւ երիցանցն ընկալեալ յընծայիցն հաւատացելոցն՝

ըստ արժանի մասն ինչ նոցին իսկ տային տանել յԱպար աշխարհ կապելոց նախարարացն Հայոց։ Երէցն Աբրահամ առեալ զոուրս հարաւային կողմանցն Ասորեստանեացն տարեալ մատակարարէր կապելոց նահատակացն Հայոց ըստ իւրաքանչիւր պիտոյից բազում ամս մինչեւ յարձակումն նախարարացն Հայոց։ Կեցեալ ամս երիցուն Խորենայ անդէն յԱսորեստանի "սաստիկ տապով հարեալ ի խորշակէն„ վախճանիւր. իսկ երէցն Աբրահամ երաշխաւորութեամբ հաւատացելոց աշխարհին, որք զոուրս իւրեանց եւ զարարս փոխանակ ընդ հարկի նորա գրեցին յարքունիս ցվախճան նորա, մինչեւ Ծղէչ. յերկոտասաներորդ ամն պատժաւորացն արձակեալ եղեւ։ Մինչեւ աղաչել զնա միաբան ամենեցուն, զի հաւանեսցի երթալ յաշխարհն Հայոց. զի ընդմտանել նորա առ նոսա, ի նմա տեսցեն զքաջ նահատակսն, որք կատարեցան սրով. ի նմա տեսցեն եւ զսուրբ կապանս չարչարանաց։ Եւ յորժամ մարտիրոսք եւ խոստովանողք եւ կապեալք նովաւ տեսանին, նովաւ օրհնի աշխարհն ամենայն, նովաւ օրհնին եւ տղայք նոցա յածումն, նովաւ զգաստանան երիտասարդք նոցա ի սրբութիւն, նովաւ համեստանան ծերք նոցա յիմաստութիւն, նովաւ ուսանին իշխանք նոցա զմարդասիրութիւն, նովաւ եկեղեցիքն պարծին իբրեւ քաջ եւ կատարեալ զինուոր. յորժամ կոխեսցեն ամենավաստակ ոտք խոստովանողին զլայնատարած տեղիս պատերազմին, յորժամ կենդանի մարտիրոս ընդ նա շրջեսցի, կենդանի առ կենդանիս երթեալ՝ ամենայն աշխարհին կրկին լինի կենդանութիւն. յորժամ տեսցեն զսա ամենայն միայնակեացք աշխարհին Հայոց, սովաւ

յիշին սուրբ քահանայքն որք խողխողեցան յօտարութեանս եւ ցածուցին զսրտմտութիւն Թագաւորին. սովաւ զմեր կապանս յիշեսցեն եւ խնդրեսցեն յԱստուծոյ, զի գերեդարձ լիցի մեզ անդրէն ի հայրենի երկիրն մեր. քանզի յոյժ անձկացեալ եմք տեսանել զսուրբ եկեղեցիսն մեր եւ զսրբասէր պաշտօնեայսն, զոր ի նմա կարգեալ հաստատեցաք:„ Եւ վասն զի ոչ էր սովորութիւն երբէք բարւոյն ընդդէմ դառնալ՝ փութացաւ վաղվաղակի ՛սուրբն Աբրահամ՚ կատարել զհրամանն զմիաբան հաւանեցելոցն. եկն եմուտ յաշխարհն Հայոց:

Փութացան ելին ընդ առաջ նորա վաղվաղակի արք եւ կանայք, մեծամեծք եւ փոքունք եւ ամենայն բազմութիւն ազատաց եւ շինականաց. անկանէին եւ փարէին զոտիւք եւ զձեռօք սրբոյն եւ ասէին. "Օրհնեալ Տէր Աստուած, զի ահա ի քեզ կերպարանեալ տեսանեմք զամենեսեան զհրաժարեալսն. ի քեզ տեսանեմք եւ զաշխարհին շինութիւն, քեւ եկեղեցիքն մեր ցնծացեալ բերկրին. օրհնեա զմեզ սուրբ հայր մեր դու ես բերան հանգուցելոցն, խօսեաց ընդ մեզ յայտնի օրհնութեամբ, զի յագիս մեր լուիցուք ի ծածուկ զօրհնութիւնս սրբոցն. հորդեցեր ճանապարհ այնոցիկ, որ անձկացեալ էին գալ յերկիր իւրեանց, բայց եւ յերկինս զդուռն աղօթից մերոց, զի մինչդեռ եմք յելանելի մարմինս, որպէս տեսաք զքո երանելի սրբութիւնդ, տեսցուք եւ զսիրելի անձկալիսն մեր:„

Երանելի խոստովանողն Թէպէտ եւ այսպէս սիրով ընկալեալ եղեւ յամենայն աշխարհէն, ոչինչ կամեցաւ մերձենալ առ ոք ըստ մարմնոյ կարօտութեան, այլ ընտրեաց իւր տեղի մի զատ յամենայն

բազմամբոխ ժողովրդոց եւ առաքինի եղբարբք երիւք կատարեաց զկեանս իւր մեծաւ ճգնութեամբ. եթէ զողջնութիւնն ասիցես, իբրեւ զկանթեղ անշէջ կայր զամենայն գիշերս. եթէ զսակաւապիտութիւնս, համարեա՛ց եթէ զանկերակուր հրեշտակացն բերէր զնմանութիւնն, եթէ զհեզութիւն, ո՛չ զոք ի կենդանեաց կարիցես գտանել նման նմա. եւ եթէ զանընչասիրութիւն, զորօրինակ չպատրի մեռեալ ի կարասի, զնոյն զճշմարտութեամբ եւ առ երանելին իմասջէր: Աղ եղեւ նա անհամելոց եւ խիթան ընդոստուցիչ ամենայն հեղգացելոց: Ի լուր համբաւոյ նորա իմաստնացան ոգէտք. ի տեսիլ մերձաւորութեան նորա զդաստացան լկտիք. բնակեալ էր ըստ մարմնոյ ի նեղ խըցկանն եւ ահ սրբութեան նորա արկեալ էր զհեռաւորօք եւ զմերձաւորօք: Ցոյնք երանի ետուն վասն նորա աշխարհին Հայոց եւ բազում բարբարոսք փութացան տեսանել զնա մարմնով: Սկիզբն արար առաքինութեան անդստին ի տղայ տիոյց եւ նովին առաքինութեամբ կատարեցաւ ի վախճան կենաց իւրոց. ոչ խառնեցաւ ի կարգս սուրբ ամուսնութեան աշխարհիս. եւ եթէ պարտ է պարզաբար ասել, որպէս փոխանակեաց զպէտս մարմնոյ ընդ պիտանացու հոգեւոր իրաց, այսպէս փոխադրեալ եղեւ յերկրէ ի յերկինս[3]:

"Եկն ՙԱբրահամ՚ ի Հայս եւ ձեռնադրեալ Ղազար.
յաստիճան եպիսկոպոսութեան աշխարհին Բզնունեաց բազում ուղղութեանց աշխարհին մարդկան լինէր ուսուցիչ եւ վախճանէր ի նմին կարգի ի բարւոք ծերութեան:„

# ԳԼՈՒԽ ԻԱ.

## Վերադարձ նախարարաց:

"Չիք ումեք քաղցրագոյն քան զծնողս եւ ոչ քան զգաւառ իւր:"

Եղիշէ. Երեսուն եւ հինգ արք* նախարարազունք եւ բազում եւս այլ մարդիկ՝ նիզակակիցք եւ մարտակիցք քաջ նահատակացն՝ ամենեքեան սոքա կամօք չոգան մտին ի փորձութիւնն։

Մարդիկ, որ զօրէն ազատ էրէոյ շրջէին ի մէջ ծաղկաբեր լերանց, ընկեցան ի բոցակէզ աշխարհն արեւելից կապեալ ոտիւք եւ կապեալ ձեռօք. հաց նեղութեան եւ ջուր կարօտանաց, խաւարարգել ի տուէ եւ անլոյս ի գիշերի, անվերարկուք եւ անանկողինք, գազանաբար գետնախշտիք լինէին զինն ամ եւ զվեց ամիս. եւ այնպէս մեծաւ խնդութեամբ տանէին զնեղութիւնն, զի ամենեւին ոչ ոք տրտունջ հայհոյութեան ի բերանոյ նոցա լուաւ։

Ղազար. ՚Զարհուրիմ հայեցեալ ի կամաւոր նոցա (նախարարաց Հայոց) տանջանաց մասունս. տեսեալ զմեծ նոցա տեւողութիւն համբերութեանն՝ արհամարհելով զմեծութիւն, առ ոչինչ համարելով զիշխանութիւն, հեռանալով յընչից, տալով աներկիւղ զանձինս ի մահ. եւ բազմաժամանակեայ համբերել կապանաց, յանձն առնուլ զանարգութիւն քան զփառս, տանջիլ ի քաղցոյ, հաշիլ ի ծարաւոյ. ոմանք ի կապելոց նախարարացն (որում ականատես իսկ եղաք) արդա՛րեւ յերկրի երկնաւորք էին եւ ի մարմնի հրեշտակք երեւէին. կարգեալ

* Տես գլ. ԺԳ. 5։

*անձամբ անձանց դպրոց եւ ուսեալք զկտակարանս եկեղեցւոյ անվեհեր կատարէին կանոնս Գուբղայից եւ կարգացմունս ընթերցուածոց զցայգ եւ զցերեկ ի դումարտակի որպէս ի տան երբեմն յայտնի եւ երբեմն ըստ ժամանակին ի ծածուկ, որք յաղագս ծերութեան կամ ծանրամտութեան ուսանել ոչ զօրէին՝ համայն յերկար աղօթիւք յօժարութեամբ անքուն լինէին։*

*Ցերանելեացն բազումք, որ մանկագոյնքն էին,* Ծննդ.
*ուսան զդպրութիւն Հայրենի աշխարհին իւրեանց, որով զանձինս քաջալերէին եւ զընկերան մխիթարէին. եւ այնպէս զմայլեցան ի միտս եւ յոգիս իւրեանց, զի որ ծերագոյնքն էին ի Նոցանէ, մատաղացան մանկացան. Թէպէտ եւ դպրութեան ժամանակքն անցեալ էին, սակայն բազում սաղմոս ի բերան առեալ երգակից լինէին մանկտւոյն եւ այնպէս բարձրացուցանէին զպաշտօնն սրբութեան, մինչեւ ոմանք ի դառն դահճացն, որչափ ի ձեռս իւրեանց էր՝ արտաքոյ արքունի հրամանին դիւրութիւն առնէին Նոցա եւ բազում անգամ զմարմնաւոր պէտս Նոցա լնուին։*

*Կարծիք եղեն ի միտս Թագաւորին ՙՅազկերտի՚ թէ առ յոյժ վշտին ձանձրացեալ են դառնութեան կենօքն իւրեանց, յղեաց առ Նոսա զմեծ հազարապետն եւ ասէ. “Երկիր պագէք արեգական եւ արձակիք ի չարաչար կապանացդ եւ ունիք անդրէն զիւրաքանչիւր Հայրենի կեանս ձեր։”*

*Ետուն պատասխանի երանելիքն եւ ասեն. “Առ փոքր ինչ եկեալ հարցանես ցմեզ. որք միանգամ աշակերտեալ են ճշմարտութեանն, ոչ երբէք փո-*

խին ի նմանէ, այլ որ ենն՝ նոյն կան. միթէ յայնժամ առ չիմանա՞լ պնդեցաք եւ այսօր նեղութիւնս իմաստնացոյց ինչ զմեզ, արդ՝ աղաչեմք զքեզ եւ քեւ զթագաւորն՝ զինչ եղեալ է ի մտի ձերում վասն մեր կատարեցէք:,,

Հազարապետն յոյժ գովեաց ի միտս իւր զպնդութիւն հաստատութեան նոցա, եւ յայնմ հետէ սկսաւ արկանել սէր ընդ նոսա. եւ բազում բանիւք ողոքանօք ածէր զթագաւորն ի հաւանութիւն, զի թողութիւն արասցէ նոցա: Թէպէտ եւ փոխեցաւ նա ի գործոյ հազարապետութեան եւ ի բազում իրս գտաւ մնասակար, (ինքն իսկ յանձն իւր կրթէր զաւեր աշխարհին Հայոց, վասնորոյ եւ մեծաւ անարգանօք յուղարկեցաւ ի տունն իւր,) սակայն զկապելոցն ոչ երբէք չարախօս կամէր լինել մինչեւ ցօր վախճանի կենաց իւրոց:

Նաեւ որ մեծ իշխանն էր աշխարհին, զոր Հրեւ Շղոմշապուհ անուանէին եւ նմա իսկ յանձն էին ամենայն պատժաւորքն, մեծապէս գութ սիրոյ էարկ առ ամենեսեան. զծերս ի նոցանէ առ հարս ունէր եւ զմանկագոյնս իբրեւ զսիրելի որդիս գրգուէր. բազում անգամ գրեաց եւ եցոյց յարքունիս զվիշտս նեղութեան կապելոցն. առաջի մեծամեծացն տառապէր ջանայր ազդի ազդի հնարիւք, մինչեւ բազում բարեխօսիւք ածին ի հաւան զթագաւորն: Հրամայեաց 'Յազկերտ' լուծանել զկապանս նոցա եւ բառնալ ի նոցանէ զլուծ պատուհասին եւ ազատել նոցա հանդերձ՝ զօրէն նախարարութեանն. կարգեաց նոցա ռոճիկ եւ զպատրաստութիւն սպառազինութեանն հրամայեաց յարքունուստ. գրեաց եւ յանձն արար մեծ սպարա-

*պետին, զի ընդ զօրս արքունի երթիցեն ի գործ*
*պատերազմի։*

*Ի բազում տեղիս, ուր եւ հասին՝ առաւելեալ*
*գտան ի գործ արութեան, մինչեւ գովութեան*
*հրովարտակ վասն նոցա ի դուռն տային։ Հրամայեաց*
*'Յազկերտ' զամենեսեան ածել զառաջեաւ։ Եկին*
*եւ յանդիման եղեն Յազկերտին արքայից արքային.*
*ետես զնոսա զուարթութեամբ, խօսեցաւ ընդ նոսա*
*խաղաղութեամբ եւ խոստացաւ տալ նոցա զիւրաքան-*
*չիւր իշխանութիւն ըստ կարգի հայրենի պատուոց*
*եւ արձակել զնոսա օրինօք քրիստոնէութեանն։*
*Եւ մինչդեռ անդէն մեծաւ խնդութեամբ շրջէին ի*
*կարաւանին, ի նմին ժամանակի հասանէր վախճան* 456
*կենաց Թագաւորին յիննեւտասներորդ ամի թա-*
*գաւորութեանն իւրոյ։ Եւ ընդ հակառակս ելեալ*
*երկու որդիք նորա ի վերայ տէրութեանն կռուէին*
*զերկուս ամս. եւ մինչդեռ նոքա յայնմ խռովու-*
*թեան էին ապստամբեաց եւ Աղուանից արքայն։*
*Կրտսեր որդւոյն Յազկերտի դայեակն յարձակեցաւ ի*
*վերայ երէց որդւոյ Թագաւորին եւ ձերբակալ*
*արարեալ հրամայէր սպանանել եւ Թագաւորեցու-*
*ցանէր զիւր սանն Պերոզ։ Աղուանից արքայն ոչ* 458
*կամէր նուաճել անդրէն ի ծառայութիւն, այլ միա-*
*բանեաց զմետասան Թագաւորս զլեռնորդեայն եւ*
*ընդդէմ եկաց պատերազմաւ Արեաց գնդին։ Եր-*
*կիցս եւ երիցս ետուն հրովարտակ աղաչանաց, ոչինչ*
*կարացին ածել զայրն ի հաւանութիւն. այլ գրով*
*եւ պատգամաւ յանդիմանէր 'արքայն Աղուանից'*
*զնոսա վասն զուր աւերածին աշխարհին Հայոց·*
*"ի վերայ այնչափ սիրոյ եւ վաստակոց փոխանակ*
*կեանս առնելոյ զարեւ հատէք, ասէր. լաւ լիցի ինձ*

զնոցա չարչարանսն յանձն իմ առնուլ քան թողուլ զքրիստոնէութիւնն։,, Իբրեւ տեսին թէ ոչ կարացաք[2] ածել ի հաւանութիւն, գանձս սաստիկս ետուն տանել յաշխարհն Խայլնդրաց, բացին զդրունս Ալանաց[3] եւ հանին դունդ բազում ի Հոնաց. եւ կռուեցաւ տարի մի ընդ Աղուանից։ Եւ յայնչափ ժամանակաց ընդերկարել պաշարմանն մեծ կէս աշխարհին աւերեցաւ։

Այս ամենայն յերկար խռովութիւնք, որ եղեն մինչեւ ի հինգերորդ ամ̅ն Պերոզի, պատճառ եղեն չարձակելոյն Նախարարացն Հայոց։ Եւ ի նմին ամին զբազմաց նոցա անդրէն զկեանսն շնորհեաց եւ այլոցն խոստացաւ յամ̅ն վեցերորդ միանգամայն արձակել զամենեսեան կենօք եւ պատուով։

Ղազար. Ի նմին ամի թագաւորութեանն իւրոյ առաքեալ ՛Պերոզ՚ զՅզատվշնասպ զիւր դայեակորդին եւ հրաման ետ արձակել զնախարարսն Հայոց ի կապանաց եւ կարգել նոցա ռոճիկ ի Հրեւ[4], "կացցեն, ասէ, անդէն այրուձիով եւ կատարեսցեն որ ինչ եւ դիցէ նոցա Աշտատ հայրն Յզատվշնասպայ։,, Եւ ի տեսանել զնախարարսն Հայոց Յզատվշնասպայ եւ առ սակաւ սակաւ ընդելնուլ ընդ նոսա՝ սիրեաց զկամսարականն Արշաւիր։ Տարեալ զնախարարսն ի Հրեւ՝ գումարէին ի ձեռն Աշտատայ ի գործ պատերազմի։ Եւ իշխանն Հրեւայ՝ Հրեւ Շղոմշապուհ սիրէր զկապեալսն Հայոց յոյժ եւ զքաջութիւն նոցա եւ զլաւ բարս եւ մարթչութիւնն բազում անգամ գրով ծանուցանէր մեծամեծացն ի դուռն եւ իւրոց սիրելեացն որք ի հրապարակին էին։

Ամենողորմ̅ն Աստուած յիշեաց զնահատակութիւն զամենայն միաբանելոցն եւ պարգեւեաց

դառնալ կապելոցն յաշխարհ Հայոց յամի վեցե-
րորդի թագաւորութեանն Պերոզի։ Եւ կեցեալք 463
իւրաքանչիւրոց ըստ սահմանելոյ ի Տեառնէ՝ վախ-
ճանեալք թաղեցան ի դիրս հարց իւրեանց խա-
ղաղութեամբ, օրհնեալք ամենեքեան ի բերանոյ
սուրբ կաթուղիկոսին Գիւտայ։

# ԳԼՈՒԽ ԻԲ.

## Կանայք:

«Միով գօտեաւ ճշմարտութեան զըն-
դէյին զմէջս արք եւ կանայք։»

Եղիշէ. Իսկ կանայք երանելի առաքինեացն, եւ կապե-
լոց եւ անկելոցն ի պատերազմին ընդ ամենայն աշ-
խարհն Հայոց համօրէն համարել ես ոչ կարեմ.
Հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանա-
չեմ. ամենեքեան միահամուռ թէ աւագագոյնք եւ
եթէ մանկագոյնք զմի առաքինութիւն հաւատոյ
Ղազար. զգեցան. Եւ զբնական տկարութիւն մարմնոյ կա-
նանց զօրացուցեալ առաւել քան զարանց քաջա-
յաղթօղք եղեն։ Կանայք փափուկք դասերք նա-
խարարացն եւ կանայք աւագաց փոխանակ նաշհոյ
կորեակ ուտէին, փոխանակ պարզ գինւոյ ջուր չա-
փով ըմպէին, փոխանակ կերպասեայ ոսկեհուռ
զգեստուցն խոշոր բրդեայս զգենուին եւ փոխանակ
բազմադիմի անկողնոցն փրխայիւք ի վերայ երկրի
գետնատարածք լինէին. Եւ որք յառաջագոյն յամ-
րանային ի քուն՝ նմանեալք վերնոցն անքուն եղեն։
Զօծան իւղով, չյարմարեցին սանտրով զհեր գլխոյ
իւրեանց։ Եւ որում անհնար է յաղթել կանանց,
շատախօսութեանն եւ ստէպ ընդ քօղով այսր անդր
զաչս ածելոյ, եւ ցածուցին զլեզուս իւրեանց յաւե-
Եղիշէ. լորդ խօսից։ Թէպէտ եւ ունէին զիւրաքանչիւր ձեռ-
նասուն սպասաւորս, ոչ ոք երեւէր ի նոցանէ՝ թէ
որ տիկին իցէ եւ կամ որ նաժիշտն. մի հանդերձ
էր հասարակաց եւ միապէս գետնախշտիք երկո-
քեան. ոչ ոք ումեք անկողնարկ լինէր. ոչ գոյր

նոցա համեմ՛ խախամողք անուշարար առանձինն եւ ոչ հացարարք որոշեալ ի պէտս սպասու ըստ ազատաց կարգի. ոչ ոք ումեք ջուր ի ձեռս արկանէր եւ ոչ կրտսերք աւագաց գաստառակս մատուցանէին. չանկաւ օշնան ի ձեռս փափկասուն կանանց եւ ոչ մատուցաւ իւղ ի զուարթութիւն խրախութեան. չեղան առաջի սուրբ սկտեղք եւ ոչ անկան բաժկակալք յուրախութիւն. չեկաց ուրուք նոցա նուիրակ առ դուրս եւ ոչ կոչեցան պատուականք յարանց ի տաճարս նոցա. չսփռեցան նոցա՝ թէ գուցէ ոք ամենեւին ի բնակասնունդ դայեկաց եւ կամ բնաւ ի սիրելի հարազատաց: Փոշոտեցան եւ ծխոտեցան սրահակք եւ սրսկապանք նորեկ հարսանց եւ սարդի ոստայնք ձգեցան ի սենեակս առագաստաց նոցա. խանգարեցան սպասք երախանաց նոցա. անկան կործանեցան ապարանք նոցա եւ տապալեալ աւերեցան ամուրք ապաստանի նոցա. չորացան ազազեցան բուրաստանք ծաղկոցաց եւ տաշտախիղ եղեն որթք գինեբեր այգեաց. աչօք իւրեանց տեսին զյափշտակութիւն արարոց իւրեանց եւ ականջօք իւրեանց լուան զչարչարանս սիրելեաց իւրեանց. առան գանձք իւրեանց յարքունիս եւ ոչ մնացին ամենեւին զարդք երեսաց իւրեանց:

Տիկնայք փափկասունք Հայոց աշխարհին, որ գրգեալք եւ գգուեալք էին յիւրաքանչիւր բաստեռունս եւ ի գահաւորակս, հանապազ բոկ եւ հետի երթայքին ի տունս աղօթից: Որ ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց եւ ամճովք երէոց, խոտաբուտ կենօք իբրեւ զվայրենիս ընդունէին զկերակուրն մեծաւ խնդութեամբ: Սեւացեալ ներկան մորթք մարմնոյ նոցա, վասն զի

ցերեկ արեւակէզք էին եւ զամենայն գիշերսն գետնաբիկք: Սաղմոսք էին մշանջենաւորք՝ մրմունջք ի բերանս նոցա եւ մխիթարութիւնք կատարեալք ընթերցուածք մարգարէիցն: Մոռացան զկանացի տկարութիւն եւ եղեն արուք առաքինիք ի հոգեւոր պատերազմին. մարտ եդեալ կռուեցան ընդ մեղսն կարեւորս. սուրբ սիրով լուացին զկապուտակ ներկուածս նախանձուն, հատին զարմատս ագահութեան, խոնարհութեամբ կործեցին զամբարտաւանութիւն եւ հասին երկնաւոր բարձրութեանն: Այրիք որ ի նոսա էին՝ եղեն վերստին հարսունք առաքինութեան, իսկ կանայք կապելոցն կամօք կապեցին զմարմնաւոր ցանկութիւնս եւ եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն. ի կեանս իւրեանց նմանեցին քաջ նահատակացն մահուամբ, եւ ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք բանտարկելեացն: Մատամբք իւրեանց վաստակեցին եւ կերակրեցան եւ զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ ամ յամէ թոշակ առնէին եւ տային տանել նոցա ի մխիթարութիւն: Բազում ձմերաց հալեցան սառնամանիք, եհաս գարուն եւ եկին նորեկ ծիծեռունք, տեսին եւ խնդացին կենցաղասէր մարդիկ. եւ նոքա երբէք ոչ կարացին տեսանել զանձկալիսն իւրեանց: Ծաղիկք գարնանայինք յիշատակեցին զպսակասէր ամուսինս նոցա, եւ աչք իւրեանց կարօտացան տեսանել զցանկալի գեղ երեսաց նոցա: Սպառեցան բարակք որսականք եւ խցեալ կուրացան արշաւանք որսորդաց: Բնագրօք յիշատակեցան նոքա, եւ ոչ մի տօնք տարեկանաց ոչ ածին զնոսա ի հեռաստանէ. ի ճաշակատեղս նոցա հայեցան եւ արտասուեցին եւ յամենայն յատեանս յիշեցին զանուանս

նոցա. բազում արձանք կանգնեալ էին յանուն նոցա եւ անուանք իւրաքանչիւր նշանակեալ ի նոսա:

Եւ իբրեւ այսպէս յամենայն կողմանց ալէկոծ լինէին միտք նոցա, ոչինչ կասեալ թուլացան յերկնաւոր առաքինութենէն: Ո՛չ եւս սովորեցին հարցանել զեկեալ ոք ի հեռաստանէ, եթէ երբ լինիցի մեզ տեսանել զսիրելիս մեր, այլ այն էին իղձք աղօթից նոցա առ Աստուած, եթէ որպէս սկսանն՝ քաջութեամբ ի նմին կատարեսցին լի երկնաւոր սիրովն:

Կանայք նահատակելոցն եւ կապելոց ի դրանն Ղազար.
թէպէտ եւ ի նեղութեան էին, սակայն ուսուցեալ եւ բազում հոգողութեամբ ուսուցանել տուեալ եւ խրատեալ իբրեւ գքաջ արս՝ զառաջիկայ զօգտաբեր հրահանգս մանկանցն լնուին:

# ԳԼՈՒԽ ԻԳ.

## Գիւտ կաթողիկոս:

«Հովիւ քաջ զանձն իւր դնէ ի վերայ
ոչխարաց:»

Ղազար. Յետ կատարման սուրբ կաթուղիկոսին Յով-
սէփայ յաջորդեաց զկաթուղիկոսութիւն աշխարհիս
Հայոց տէր Մելիտէ յազգէն Մանազկերտեցեաց.
զհետ նորա տէր Մովսէս ի նոյն ազգէն եւ ապա՝
տէր Գիւտ ի գաւառէն Տայոց ի գեղջէն Արահե-
զայ, այր լի գիտութեամբ հայոց եւ առաւելեալ
յունիւն. լուսաւորապէս ուսուցանէր բովանդակ
ժողովրդոց եւ զմնացեալ դեռ եւս ի տղայութեան
հասակի զորդիս նահատակելոցն ի տոհմէ Մամիկո-
նէից եւ Կամսարականաց եւ յայլ ազգաց:

Սեբէոս. Եւ եղեւ յամս Պերոզի արքայի Պարսից բար-
ձումն ամենայն իշխանութեանցն եւ կարգաց եւ
օրինաց քրիստոնէութեան եւ վտանգ նեղութեան
հալածանաց եւ քամահանաց ի վերայ հասեալ իշ-
Ղազար. խանաց: Մինչ զի ՚ի ժամանակին գտանէին ի Պարս-
կաց զտանուտէրութիւնն գնեալ ուրացութեամբ
արք անմիտք եւ վնասակարք, անպիտանք եւ ոչ
քաջք. ոմանք ի լեռնախոյզ աւազակաց ի մէջ
անցեալ ուրացութեամբ վերտէին եւ ոմանք կա-
տակութեամբ աստուածս գնէին, անմարդք ի ստոյգ
մարդկանէ եւ անարժանք եւ անծանօթք յազգէ
տոհմկաց: Եւ էր տեսանել յաշխարհիս Հայոց
զլաւութիւն հեռացեալ, զիմաստութիւն կորու-
սեալ, զքաջութիւն մեռեալ, զքրիստոնէութիւն
թագուցեալ: Որ երբեմն քաջանուն զօրքն Հայոց

ի մէջ այլ զօրացն ամենայնի երեւէին եւ զօրագլուխք անուանիք եւ յաղթօղք, ծաղր էին ամենեցուն եւ կատականք. մինչեւ ինքն իսկ Թագաւորն Պերոզ յայտնապէս ասէր՝ թէ "այր անպիտան եւ գունդ յետին, որ գամ մի յիմ իշխանութիւնն է, Ասորոց է, բայց քան զԱսորի՝ Հայն է այր յետին եւ անպիտան։„ Եւ էր լուրն այն արժանի լալոյ եւ ողբալոյ։

Լաւ ոք այր թէպէտ եւ էր ի ժամանակին, որպէս Բաբիկն Սիւնի կամ Առնակն Ամատունի եւ կամ այլ ոք նման նոցին, ‘սակայն’ ի կատաղութենէ ամպարշտեալ իշխանացն զօղեալք թաքչէին. կարեւոր համարէին համբերութեամբ ի քրիստոնէական կարգի վախճանել՝ քան թէ փառախնդիր յածմամբ պատահել ուրացութեան եւ կորնչել. իբրեւ տեսանէին բարձրացեալ զամբարշտութեանն կիզումն եւ ոչ ոք էր որ շիջուցանէր, ժողովեալք նստէին առ սուրբ քահանայապետին Հայոց Գիւտեայ ի խնդիր լինել օգնականութեան եւ ապստամբել. առաքէին գաղտ պատգամաւորս միանգամ եւ երիցս առ Թագաւորն Յունաց Լեւոն, ‘այլ’ յերկարէր ժամն եւ խափանէին խորհեալքն։ Սկսանէր այնուհետեւ կաթուղիկոսն Գիւտ յայտնապէս գրգռել ընդ անօրէն ուրացելոցն եւ սիրել եւ պատուել զկողմն տառապեալ հաւատացելոցն. մանաւանդ առ վստթարս ունէր եւ արհամարհէր զՄաղխազն Գադիշոյ՝ զօրագլուխն եւ քաջալերիչն ամենայն ամբարշտելոցն, որոյ չկարացեալ տանել արհամարհանաց Գիւտայ՝ ամբաստան լինէր զնմանէ առ Թագաւորն Պերոզ ասելով, եթէ "զմարդիկ, որ կամին զքո օրէնս յանձն առնուլ եւ սիրել, կո-

չէ առ ինքն եւ է՛ որ ինչ տալով եւ է՛ զորս քաղցր բանիւք պատրէ եւ յիրացն ի բաց դարձուցանէ ՙԳիւտ՚. այլ եւ զմեզ՝ որ զքեզ սիրեմք եւ արժանական եւ կրակի երկիր պագանեմք, ատեայ եւ թշնամանէ. եւ ինքն ընդ կայսեր խօսի եւ պատուական ընծայիւք հպատակէ նմա:„

Լուեալ զայսպիսի բանս ամբաստանութեան Պերոզի ի Գադիշցւոյն՝ հրաման տայր կաթուղիկոսին ի դուռն հասանել: Գիւտ յօժարութեամբ երթայր եւ յանդիման լինէր աւագաց դրանն. տեսանէր ամենայն մարդ զերեսս նորա իբրեւ զերեսս հրեշտակի եւ հեթանոսք պատկառէին ի նմանէ, այլ քրիստոնեայքն եւ եպիսկոպոսն Տիզբոնի եւ Խուժաստանի եւ Հրեւեայ եւ ամենայն կողմանցն այնոցիկ երիցունք եւ սարկաւագունք երկուցեալ դողային ի սրբոյն:

Լուեալ Պերոզի զերթալ Գիւտայ՝ յղէր առ նա մի ըստ միոջէ զամենայն բանս ամբաստանութեան Մաղխազու զԳզատվշնասպն: Եւ Գիւտայ պատասխանի արարեալ ասէր. "Ո՛չ են ամենայն ասացեալքդ Մաղխազու արդար. քանզի սիրել զքրիստոնէութիւն եւ որ ոք քրիստոնեայ է՝ ո՛չ այսօր պահեմ յանձին իմում, այլ ի մանկութենէ իմմէ. եւ զամենայն մարդ՝ որ վրիպեալ է ի ճշմարտութենէն, ատեմ. եւ որ ի ճշմարտութենէն մոլորել կամէր, ո՛չ տայի կորնչել այնպիսւոյն. այլ որ ասենդ երթեւեկք ի Հռոմ ըստ դորա կարծեաց, սուտ է. զի զդպրութիւն գիտութեանս մերոյ եւ զիմաստ բանաւոր ուսմանց յաշխարհին Հոռոմոց ուսեալ եմ. են իմ անդ ծանօթք բազում եւ ուսումնակիցք. այլ եւ զկերպարան հանդերձից զոր ունիմքս՝ մեք անտի

գնեմք․ այլ զհնազանդութիւն ծառայութեան, օրէնք իսկ մեր պատուիրեն հատուցանել տէրանց զդի-պողն եւ զարժանաւորս։,,

Իսկոյն ծանեաւ Թագաւորն թէ ստոյգ եւ մտացեբար են խօսք եւ սուտ խօսի Մաղխազ զնմա-նէն. բայց զի մի՛ թեթեւացուցեալ զկարգ օրի-նացն իւրոց երեւեցուսցէ քրիստոնէից, լռեալ թո-ղոյր զխօսս Մաղխազին եւ յղէր առ Գիւտ, թէ՝ "մինչեւ ցայժմ քո իշխանութիւնդ առանց իմ հրամանի կալեալ է եւ ծառայ մարդիկ են, որոց քեզ զայդպիսի մեծ գործ տուեալ է. եթէ զիմ կամս առնես եւ արեգական երկիր պագանես, զգործդ զայդ քեզ եւ քում ազգի եւ որում դու կամիս՝ պատրշրաւ տամ մինչեւ յաւիտեանս եւ զքեզ պատուով արձակեմ ի Հայս. ապա թէ չհաւանիս, զեպիսկոպոսութիւնդ ի բաց առնեմ ի քէն եւ ի գործոցդ ի բաց հանեմ եւ դու անար-գանօք եւ թեթեւութեամբ երթաս ի տուն քո եւ յաշխարհն։,, Եւ կաթուղիկոսն Գիւտ ասաց ցպատ-գամաբերն. "ասա՛ ցԹագաւորն թէ յաղագս գոր-ծոյս, զոր ասես թէ առնուք յինէն՝ ուրա՛խ եմ եւ կամիմ, իսկ յաղագս եպիսկոպոսական ձեռնադրու-թեանս, որ ասէս թէ ի բաց առնում, զայս ո՛չ Թագաւորք եւ ո՛չ յիշխանաց ոք իշխէ։ Վասն օրի-նացդ որ ինձ ունել հրամայես եւ պատիւս խոստա-նաս, ո՛չ ուրուք է յերկրաւորացս պատիւ մեծ եւ իշխանութիւն հզօր առաւել քան զքոյդ, որ ունիս, բայց վասն գարշելի օրինացդ դու ինքնին, որ թա-գաւորդ ես եւ ամենեքեան, որ զայդ օրէնս ունիք, մեռեալ համարեալ էք յաչս իմ եւ զպատիւս քո անարգանս համարիմ։,,

Եւ երթեալ. պատգամաւորն առաջի թագաւորին ասէ. "ո՛չ իշխեմ զխօսեցեալս առն յանդըրգնաբար երկրորդել առաջի ձեր բայց եթէ հրաման առնում.,, եւ հրամայեալ թագաւորին ասել համարձակապէս զամենայն, եւ լուեալ զամենայն խօսեցեալսն Գիւտայ՝ ասէ. "Ո՛չ տամ համբուրել քրիստոնէից զկապանս նորա եւ ո՛չ երկիր պագանել ոսկերաց նորա որպէս սովորութիւնն է նոցա. բայց ասա՛ ցնա՝ թէ կաց ուր եւ կամիս, բայց ի գործոյ կաթուղիկոսութեան հեռի ես եւ չէ քո։,,

Կացեալ այնուհետեւ ի դրան ըստ իւրում կամելոյ՝ Գիւտ բազում համարձակութեամբ պատուեալ ո՛չ միայն ի քրիստոնէիցն այլ եւ ի հեթանոսացն, զոմանս ձեռնադրէր յեպիսկոպոսութիւն եւ զայլս բազումս յաստիճան երիցութեան կարգէր. եւ շքեղութեամբ հրաժարէր գնալ յաշխարհն Հայոց. եւ կեցեալ առաւելապէս պատուովք քան զառաջինն ի Հայս, հանգչէր երկայն ծերութեամբ ի դիրս հարց իւրոց ի գեօղն Ոդմնու

Յովհ. կթ դ. ի գաւառին Վանանդայ[1], կացեալ ամս տասն յաթոռ հայրապետութեան*։

* Ըստ Վարդանայ "վեց ամ։,,

## ԳԼՈՒԽ ԻԴ.

### Վահան Մամիկոնեան:

«Մեծ իսկ քան զամենայն՝ սէր տուրք
յանձնենք մնաց գիտեմք։»

Յամին եօթնեւտասներորդի Յազկերտի իշ- Ղազար.
խանն Վրաց Աշուշայ աղաչէր զաւագս դրանն ար-
քունի անհամար կարասի ծախեալ իւրաքանչիւր
ումեք եւ մանաւանդ Միհրներսեհի՝ տալ ասել
ցԹագաւորն, զի շնորհեսցեն նմա զորդիս Հմայեկայ
ի տոհմէն Մամիկոնէից, զոր առեալ էր Վասակայ ի
դայեկաց. եւ էին յոյժ տղայք. եւ հաւանեցուցեալ 431
զմիտս Թագաւորին՝ պարգեւեաց Աշուշայի զմեծ
նորա խնդիրն։

Կին նահատակին Հմայեկայ Մամիկոնէի՝ ա-
նուանի եւ առաւելեալ ամենայն լաւ եւ մտաւոր
մասամբք յամենայն կանայս ի Հայաստան աշխարհիս,
մնացեալ եւ խրատեաց զորդիսն իւր (յաշխարհին
Վրաց), զորս Աշուշայ խնդրեաց պարգեւս ի Յազ-
կերտէ եւ ածեալ եա ցմայր իւրեանց Ձուիկ.
(զքոյրն Ձուկայ ունէր ի կնութեան բդեշխն Աշու-
շայ — որում ‘կնոջ’ անունն էր Անուշվռամ.) սնու-
ցեալ անդ մանկունքն (յաշխարհին Վրաց) եւ ու-
սեալ յառաջադէմք էին յամենայնի եւ հուչակաւորք.
ամենայն տեսանօղ մտաց երեւէին աջողակք եւ
զարմանալիք. անունն է առաջնոյն Վահան, եւ եր-
կրորդին Վասակ, եւ երրորդին Արտաշէս. էր նոցա
միւս եւս եղբայր կրտսեր անունն Վարդ՝ մնացեալ ի
դայեակս իւր ի Տայս։

Անպիտան իշխանք ժամանակին տեսանէին օր

ըստ օրէ զաճումն յառաջադիմութեան յորդիս Մամիկոնէից. 'զի' էին 'որդիքն' ականաւորք ի խորհըրդի, մտաւորք եւ իմաստնագիւտք. ի նետաձգութեանն գեղեցկաձիգք եւ դիպեցուցողք. յորս թեթեւաշարժք եւ նախասպանք. յերկոցունց ձեռաց աջողակք. նոքօք շքեղանային ընտրիք ամենայն տանուտէրանց Հայոց, նոքօք զարդարէին յամենայն տունս օտարք եւ ընտանիք: փութային 'Վահան եւ եղբարքն' զորդիս երանելւոյ կամսարականին Արշաւրայ տեառն Արշարունեայ (որք եւ ծնունդ դըստեր Վարդանայ) խրատել եւ հրահանգել ըստ իւրեանց իմաստութեան եւ արուեստի: Եւ զայսպիսի ինչ բարւոյ մասունս առնել առաւել յորգորագոյն էր աւագ որդին Հմայեկայ Վահան, քանզի էր այր մտացի առողջախորհուրդ եւ բարեսէր: Նաեւ գործակալք պարսիկք թէպէտեւ ոչ կամաւ, այլ սիրէին զնա եւ պատուէին, որք առաջի թագաւորին գովէին զլաւութիւն առն, մինչեւ ինքն իսկ թագաւորն գլխովին ծանեաւ զնա եւ առ լաւս ունէր եւ յանդիման ամենեցուն գովէր եւ արժանի պատուոյ հաշուէր, այլ յիշելով զհարցն նորա զիրս եւ զգործս յապաղեալ կասէր զարժան պատիւ տալ, մանաւանդ իբրեւ հապստէպ լսէր զնախանձորդացն զբանսարկութիւն, զորս կարի երկեցուցանէր յաջողումն Մամիկոնէին Վահանայ:

Մաղխազն Գադիշոյ եւ դասք ուրացողացն իբրեւ տեսանէին զՄամիկոնեանն Վահան ա՛յնպէս երեւելի յաճմունս բարւոյ համակեալ՝ խընդրէին հնարս, որով զնա եւ զեղբարս նորա կորուսանել կարասցեն. յիշեցուցանէին Արեաց զնախնեացն նորա թէ ո՛վ ի նոցանէ ո՛չ խռովեցոյց

զԱրեաց աշխարհ. "արդ՝ ո՛րք են է, ասեն, եւ սա զնոյն խառվութիւնս յարուցանելոց է ի վերայ ձեր:„

Տեսեալ Վահանայ զայնչափ յարուցմունս նախանձաւորացն ի վերայ նորա, երթեալ ի դուռն տկարանայր ի հաւատն. սակայն եւ այնպէս խնուլ զբերանս չարախօսացն ո՛չ կարէր. զի որ ոք բան ուղիղ ի հրապարակի առաջի իշխանի չգիտէր խօսել, զնա ատեայր. "Նստի, ասէին, եւ ամենեցուն ունչս առնէ. յառաջէ յամենայն ի գործս եւ չտայ ինչ ումեք գործել.„ զի էր նա 'Վահան' գործակից որում անուն էր Վրիւ, որդի առն Ասորւոյ, որոյ չմարթացեալ գործել զգործ արքունի, լինէր ամբաստան զՎահանայ առաջի Պերոզի թէ "ի գործ ոսկեհատին[1] չետ ինձ մօտ երթալ, եւ իւր ժողովեալ զամենայն ոսկի աշխարհին խորհի երթալ առ կայսր կամ յաշխարհն Հոնաց եւ տուեալ զոսկին կամի խնդրել գունդ եւ ապստամբել:„ Եւ Վահանայ առեալ փութանակի զբազմութիւն ոսկւոյն հասանէր ի դուռն, եւ եղեալ յանդիման թագաւորին, տեղեկանայր ի նմանէ թագաւորն զքանիօնութիւն բազմութեան ոսկւոյն զոր բերեալ էր եւ ուրախանայր յոյժ. ապա յանդիման Վահանայ տայր ասել Վրուայ զբանսն, զոր ասէր զնմանէ յառաջագոյն:

Եւ պատասխանի (Վահան) առաջի թագաւորին եւ ասէ. "այնքան կոյր չեմ թէ զԱրեաց ոյժ տեսանել անգամ չգիտեմ. որ ապստամբելս կամիմ ըստ դորա ասելոյդ, դոյն իսկ ինքն գիտէ, զի մի ծառայ չգտանի իմ, որ ինձ խոհկերութիւն առնէ եւ ո՛չ երկուց կամ երից պատանեաց իշխեմ տի-

րաքար, որ ինձ սպաս ունին. գնդի իմոյ ոյժ այդ է։ Եթէ ուրեք յօտար երկիր գնալ կամէի, զայդ-չափ ոսկի այսր զի՞ բերէի։,,

Եւ ելանէր Վահան արդարացեալ յատենէն եւ հրաժարեալ մեծարանօք՝ հասանէր յաշխարհն Հայոց։

# ԳԼՈՒԽ ԻԵ·

## *Ա պ ս տ ա մ բ ո ւ թ ի ւ ն։*

“Երկիւղ՝ Թերահաւատութեան է նշանակ։”

Քանզի ոչ էր խաղաղութիւն մտաց նորա վա- սըն վատ անուան ուրացութեանն, զոր նման հարց իւրոց պատճառանօք կրէր, ծանուցանէր առ ջերմ սիրողացն զիւրն հոգալ եւ հնարս հայցէր։ Եւ մինչդեռ յայսպիսի յուզմունս կայր տարակուսեալ, յաշխարհին Վրաց Վախթանգ սպանանէր զըդեշխն Վազգէն յամի քսաներորդի հինգերորդի Պերոզի. քրիստոնեայ մարդիկն Հայոց, որ այն ամ անդ ի կուսին էին, իբրեւ լուան զապստամբութիւնն Վրաց, երկնչէին թէ մի՛ գուցէ՝ առեալ զգունդն Հայոց զօրագլխացն Պարսից՝ ի դուռն գումարիցեն. այլ Քրիստոս յայնպիսի կարծեացն զերծուցեալ զնոսա, գային ի Հայս ի գաւառն Շիրակայ ի դաշտն, ուր բնակէր մարզպանն Հայոց Ատրվշնասպ Յոզ- մանդեան եւ առ նմին հազարապետն Հայոց Վեհ- վեհնամ։ Աստ խորհուրդ ի մէջ առեալ արանց ո- մանց նախարարացն Հայոց, որք զտրտմելն եւ զտա- րակուսելն գիտէին զՄամիկոնէին Վահանայ յաղագս մոգութեանն անուան, ասէին թէ “կարի պատեհ էր եւ մեզ աշխատ առնել զՊարսիկս.” եւ յայտ- նէին ի գիշերի միում զբանս մտածութեանն իւ- րեանց Մամիկոնէին Վահանայ, որոյ լուեալ ասէր ցամենեսեան. “գիտեն ոմանք, թէպէտեւ ոչ ամե- նեքեան, որք էք ի խորհրդիս յայս, թէ որպէս վտանգեալ տագնապիմ յամենայն ժամու յաղագս

Ղազար.

սուտ անուանս, զոր ատելութեամբ կրեմ յանձին իմում, եւ կամէի գտանել հնարս զերծանել ինձ ի խղճէս, որ նեղէն զիս. բայց զոր դուքդ խորհիք՝ ասել թէ "լաւ է եւ արարէք„ ոչ կարեմ. վասն զի զԱրեաց ուժն քաջ գիտեմ. բայց քան զամենայն եւս առաւել յանձանց երկերուք, վասն զի մարդիկք սուտք էք եւ անվստահք. եւ եթէ զիս հարցէք, յընդունայն եւ յանպիտան խորհուրդս ձեր զիս մի՛ աշխատ առնէք:„

Ետուն պատասխանի ‘նախարարքն’ եւ ասեն. "զոր ասացերդ, որպէս վայելէ քում իմաստութեանդ ճշմարիտ ասացեր եւ արդար. բայց զյոյս մեր եդեալ է նախ՝ յողորմութիւնն Աստուծոյ եւ ապա՝ ի մահ անձանց մերոց. քանզի լաւ համարիմք մի ժամ մեռանել քան թէ զամենայն օր զեկեղեցւոյ եւ զքրիստոնէից զարհամարհանս տեսանել եւ զքակտումն:„ Եւ լուեալ զանուն մահուան՝ Մամիկոնէին Վահանայ եւ եղբօր նորա Վասակայ՝ քաջալերեալք զօրացան: Սկսաւ խօսել Վահան եւ ասէ. "Գիտէք, զի Վարդ իմ եղբայր ի դրանն է, եւ թէ լուեալ է զխորհուրդս մեր Պարսկաց՝ կապեն զնա եւ վշտացուցանեն. բայց ի մահ յօժար եմ քան թէ այսպէս կեալ ուրացութեամբ. եւ Ամենագիտին հայեցեալ ի դարձս իմ արասցէ յիս նշան բարի եւ դարձուսցէ առ իս զանձկալի եղբայրն իմ զՎարդ ողջ եւ տացէ տեսանել զնա աչաց իմոց եւ ուրախանալ:„ Զայս ասացեալ յառնեն ամենեքեան միաբանութեամբ քրիստոնեայքն եւ ուրացեալքն, եւ յաղօթս կացեալ՝ խնդրեն զաւետարանն սուրբ. եւ սրբոյ քահանային Աթիկ, որ էր ընդ նոսա ի բանակին, յերեւելի գեղջէն Բծնի[1], բերեալ սուրբ

աւետարանն եւ եդեալ իւրաքանչիւր ուրուք զձեռս ի վերայ երդուեալք եւ հաստատեալք ի հաւատն Քրիստոսի յիւրաքանչիւր վանս գնացին հանգչել։

Մի ոմն ի Նախարարացն Հայոց Վարազշապուհ ի տոհմէն Ամատունեաց ելեալ ի խորհրդենէ որպէս Յուդա գնաց ի նմին գիշերի եւ պատմեաց մարզպանին եւ պյլոցն ամենեցուն զխորհուրդ միաբանութեանն եւ զերդումն աւետարանին եւ զխօսս ամենայն Նախարարացն Հայոց։ Իբրեւ լսէր Ատրվշնասպն եւ ջոկք ուրացողացն Հայոց՝ սրտաբեկեալք անքունք լինէին. ի ժամ առաւօտուն չուէին ի տեղւոյն եւ երթեալ բանակէին մօտ ի պարիսպ բերդին Անի[2] եւ կասկածանօք կային ղտիւն զայն անդէն. եւ ի գիշերի մարզպանն եւ հազարապետն եւ որք ընդ նոսա միաբանք էին, փախստականք լինէին. եւ վասն զի տեղեակ առաջնորդօք փախչէին, զերծեալք անկանէին ի բերդն Արտաշատու։ Նախարարքն Հայոց զգրաստ ամենայն Պարսկաց հասեալ ըմբռնէին ի ճանապարհին, եւ զՄաղխազն Գադիշոյ ձերբակալ արարին. եւ հասեալք ի Դուին՝[3] երթեալ պաշարէին զբերդն Արտաշատու. իսկ մարզպանն եւ հազարապետն գաղտ ի գիշերի ելեալ ի բերդէն փախստեայ գնացին ի կողմանս Ատրպատականի։

Թէպէտեւ տեարքն երեւելիք Սիսական պետութեան[4] պատրեալք ի հին խաբողէն առին ժառանգութիւն զփառս աշխարհականս, զառօրեայս Ստեփ. եպիսկ.
եւ զեղծականս. սակայն ոմանք ի նոցանէ եղբարք ըստ մարմնոյ եւ արեանառուք իմաստնացան զվերին իմաստութիւն. որոց անուանքն Բաբգէն եւ Բակուր եւ Յազդ. սոքա ելեալ ի գնդէն Սիւնեաց գնացին

զհետ ուխտապահացն Հայոց, որոց գլուխ էր քաջն Վահան Մամիկոնեան, ՙբայց միայն՚ անհեդեդ հսկայն Գդիհոն (տէրն Սիւնեաց), որ անպարտելի էր զօրութեամբ, պատերազմէր ընդ մնացորդս
Ղազար. Հայոց. (այսինքն հակառակէր ուխտապահաց)։ Եւ Վարազներսէհ որդի Կողթեկայ իշխանին Ուրծայ[5], որ էր յերդմանն ընդ նախարարսն Հայոց, նենդեալ ուխտին սրբոյ՝ աւերէր զշահաստանն Բռնավիժի եւ առեալ զամենայն կարասի շահաստանին դիմեալ ամրանայր ի Սագրայ բերդ իշխանութեանն իւրեանց։ Իսկ ոմանք ի Հայ նախարարացն ամբարշտելոցն խրատ տուեալ մարզպանին Հայոց Ատրվշնասպայ ասէին. “չեւ եւս քաջ կազմեալ են, դու թէ այժմ փութով հասանես ի վերայ նոցա, դիւրով վճարես զգործ մի կարի մեծ։„ Հաճոյ թուեցաւ բանն մարզպանին եւ վաղվաղակի գունդ առեալ գայր հասանէր յաշխարհն Հայոց ի գետեզրն Երասխայ։

# ԳԼՈՒԽ ԻԶ.

## *Ճակատն Ակոռոյ:*

«Դիւրին է Աստուծոյ՝ առկաւուր զմեծամեծ իրս գործել:» Ղազար.

Ըսպետն Սահակ զմարզպանութիւնն եւ Վահան զսպարապետութիւն ի Հայոց ընկալան. առ որս եւ եկ՝ք Պարսից գնդին լսելի եղեն. եւ խորհէին թէ արդ պարտ է ստիպով ընդդէմ նոցա ʻՊարսիցʼ գնալ. խորհէին եւ զայս եւս՝ մնալ մարզպանին Սահակայ եւ սպարապետին Վահանայ եւ ոմանց յայլ նախարարացն անդէն յոստանին ի քաջալերութիւն եւ ի բարի յոյս երթելոցն յառաջ, ի զարհուրումն եւ ի բեկումն սրտից կողման անօրինացն: Եւ պատրաստեալք այնուհետեւ ի պատերազմն կազմեցան Սիւնին Բաբգէն, սեպուհն Մամիկոնէից Վասակ ʻեղբայր սպարապետին Վահանայʼ, Գարջոյլն Մաղխազ, երկոքեան որդիքն երանելւոյ Կամսարականին Արշաւրայ Ներսէհ՝ տէր Շիրակայ եւ Հրահատ ʻնորին եղբայրʼ եւ Ատոմ իշխանն Գնունեաց եւ եղբայր նորին Առաստոմ, եւ գունդ ընդ նոսա թուով չորեքհարիւր այր: Եւ մտեալ նոցա յեկեղեցին երկիր պագանէին Արարչին ամենայնի. երկիր պագանէին եւ կաթուղիկոսին Յոհանայ[1]. ապա հրաժարէին յասպետէն Սահակայ եւ ի զօրավարէն Վահանայ եւ յայլ ընկերակցաց իւրեանց: Եւ եկեալք ի գիւղն Վարազկերտ՝ լուան եթէ գունդն Պարսից անցին ընդ դետն եւ են թուով եօթն հազար: Եւ քաջ սեպուհն Վասակ, քանզի առաջապահ էր այն օր, գնայր յառաջ ի գեօղն Կռուակք

առնուլ զգնդին Պարսից զհանգամանս. եւ երթեալ ի կռուակս յօթ, յանկարծակի յառաւօտուն ծագել Ատրվշնասպ լսէր զՄամիկոնենէն Վասակայ թէ անդ է։ Վասակայ գիտացեալ զնոցանէն՝ հնար փըրկութեան խորհեցաւ զգունդն իւր ապրեցուցանել ի ժամուն. հրաման տայր երկուց երկուց կամ երից եւ յոլովից ընդ անյայտ տեղիս եւ ընդ փողոցս ելանել ի շինէն եւ զատ ի միմեանց փութալ ի Վարազկերտ, ուր Նախարարք եւ պյրուձի էին Հայոց. Եւ ինքն Վասակ պատրողական բանիւք բանդագուշեցուցանէր զԱտրվշնասպ, թէ ես պատգամ ունիմ առ քեզ։ Ատրվշնասպայ լուեալ թէպէտ եւ ի միտս ուրախանայր, այլ խստագոյնս յղեալ ասէր, թէ “աշխարհ մի ապստամբ առ իս զի՞նչ պատգամ յղեն։„ Եւ Վասակայ գիտացեալ զիւրոյ պյրուձիոյն, թէ չիք ինչ կասկած, եկելոցն յԱտրվշնասպայ ասաց. թէ “մեր ոչինչ գործեալ է արքունի իրաց վնաս. դու հրամայեա՛ ասել զպատգամն եւ ապա հայեցարո՛ւք յարժանն.„ եւ արձակեալ զպատգամաւորն՝ ինքն հեծեալ յերիվարն, ասաց ցայլ Պարսիկսն, թէ “ես ծաղր առնելով ընդ ձեզ խօսեցայ. զիս ուրուք առ ձեզ պատգամ չէ՛ յղեալ։„ Եկեալ քաջն ի գունդն Հայոց պատմեաց նոցա թէ գունդ բազում է, բայց յոլովք ի նոսա անպիտանք են եւ քերթաքաղիւ շաւարեան։ Արք զօրուն Հայոց խորհուրդ ի մէջ առեալ ասաց թէ “պա՛րտ է ի դաշտէն ի լեռնակողմն փոխել, զի հարեալք ի դիմի՝ զօրեմք. եւ եթէ այլազգ ինչ դիպի, պահպանութիւն է մեր ամրութիւն լեռնակողմանն։„ Եւ չուեալք բանակեցան ի գեօղն Մասեաց Ակոռի[2]։

Առ վաղիւ կանխեցին ըստ սովորութեան ի

պաշտօն գիշերոյն եւ կազմէին ի պատերազմ բաժանեալ ի չորս առաջս. միջին վայրին կարգէին զօրագլուխս ի ժամուն զիշխանն Սիւնեաց Բաբգէն եւ զքաջ սեպուհն Վասակ. եւ ահեակ կողմեանն ըզԳարջոյլն Մաղխազ. եւ կողմանն աջոյ զիշխանն գնունեաց Ատոմ եւ զնորուն զեղբայրն զԱռաստոմ. եւ ընդ մէջ երկոցունց մասանցն՝ զիշխան Շիրակայ զՆերսեհն Կամսարական եւ զնորուն եղբայր զՀրահատն պատրաստական յօրինէին, զի ո՛ր կողմ տկարասցի, նոցա հասեալ օգնեսցեն. քանզի ամենեքեան վստահ էին ի յարսն որպէս յարդարսն եւ յուխտապահսն։ Եւ այսպէս յօրինեալ զչորեքհարիւր արսն աղաղակէին միաբան. “օգնեա՛ մեզ Աստուած փրկիչ մեր, մի՛ երբէք ասասցեն ի հեթանոսս թէ ո՞ւր է Աստուած նոցա։„

Զսակաւութիւնն Հայոց տեսեալ Պարսից՝ ոչինչ այլ կարծեցին, բայց եթէ կամաւ խեղացնորեալ ի խնդիր են մահու. յարձակեալք ի վերայ զօրացն Հայոց՝ քաջաձիքն յառաջեալ հասանէին ի տեղի պատերազմին. Գարջոյլ առեալ զիւրեւ զհարիւրսն՝ նենգեալ ուխտի աւետարանին՝ ի գունդն Պարսից անկանէր. եւ մնացին երեքհարիւրն Հայոց, որ յառաջեալ՝ զընտիր արս պատերազմին անդէն եւ անդ ի տեղւոջն դիաթաւալ յերկիր կործանէին. եւ զայլ բազմութիւն գնդին Պարսից ձորոց եւ առապար տեղեացն ցրուեալ վատնէին։ Անդ ի կողմանն Վասակայ եւ Բաբգէնայ անկեալ սատակէր Ատրվըշնասպն մարզպան եւ այլ արք յուրացողացն Հայոց եւ բազում Պարսիկք։ Նոյնպէս եւ ի կողմանն Ատոմայ եւ Առաստոմայ բազումք մեռանէին ի քաջ արանց։ Բայց նախ զյառաջեալ այր ի գնդէն Պարսից

Հրահատ հարեալ Նիզակաւ սատակէր։ Եւ մինչդեռ նոքա այսպէս քաջալերեալք էին, առեալ Գարջուղայն զգունդն կատաշաց հանդերձ այլ հայորերով եւ գնդաւ որ ընդ իւրն էին եւ ըստ աներեւոյթ ձորոցն խորութեան հասեալ զկնի ուխտապահ զօրացն Հայոց՝ կամէր ի թիկանց կուսէ անկանել ի վերայ։ Եւ դիմեալ յարձակէին ի վերայ այնչափ բազմութեան երկոքին եղբարքն սակաւ արամբք. անդ Կամսարականն Ներսէհ զզօրագլուխն կատաշաց զայր հզօր եւ զմարտիկ հարեալ Նիզակաւ սատակէր եւ զայլ ամենայն գունդն կործանէր յերկիր։

Եւ լինէր օրն այն օր նշանաւոր ուրախութեան հաւատացելոցն ի Քրիստոս եւ օր ամօթոյ ամենայն ուրացելոցն ի Քրիստոսէ։

Ի տոհմէն Գնթունեաց Վարդոշ եւ ի տոհմէն Սահառունեաց Վասակ ընդ ծագել առաւօտուն գոյժ աղաղակի լսելի առնէին յականջս հայրապետին Յոհաննու եւ աւագ իշխանացն Հայոց եւ ասեն. "զօրացաւ կողմն Պարսից եւ ի պարտութիւն մատնեցաւ գունդն Հայոց եւ մեռաւ քաջն Մամիկոնեան Վասակ եւ Սիւնին Բաբգէն եւ տէրն Շիրակայ Ներսէհ եղբարբն իւրով Հրահատաւ, եւ արքն Ատոմ եւ Առաստոմ եւ այլ ամենայն զօրքն Հայոց ի լանջակողման Ակոռայ տապաստ անկեալ դիականացան եւ մեք միայն մնացաք։ Իսկ չեւ եւս սփռեալ տարածանէր համբաւս այս ի Դուին, գայր հասանէր փաղփաղակի հրեշտակ աւետաւոր ի տոհմէն Գնունեաց գոչելով՝ "յաղթեաց զօրութիւն սուրբ Խաչին եւ միշտ յաղթէ։,, Եւ լուեալ զայս հայրապետին Յոհաննու եւ աւագ իշխանացն եւ ամենայն նախարարացն Հայոց եւ ռամկացն դիմեալք

միաբանութեամբ ի տունն Աստուծոյ, գոհանային։ Եւ զատիկ ուրախութեան առնէին. Նախ՝ զաղքատաց յագումն նկատէին եւ ապա ինքեանք ուրախանային։ Եկեալ հասանէին եւ զօրքն ի պատերազմէն եւ համբուրէին զմիմեանս։ Ի հանգիստ ձմերայնոյն մտանէին. Հոգային առ գարունն զպատրաստութիւն պատերազմին։

# ԳԼՈՒԽ ԻԷ․

## Ճակատն Ներսեհապատի:

“Կեանք իւրեանց ի մահ համարեալ էին
եւ մահ իւրեանց անշուշտ կեանք։„

Ղազար. Իսկ դեսպան ստիպով առ Թագաւորն Վրաց Վախթանգ առնէին՝ տալ նոցա Հոն ըստ խոստմանցն իւրոց, եւ նա ժամավաճառ բանիւք երկայնէր զառ-սացեալսն իւր. եւ ապա ուստեք ժողովէր Հոնս երեքհարիւր եւ առաքէր ի Հայս. եւ չեւ եւս ան-ցեալ ամիս մի ի ձմերայնոյն փոյթ պատճառադրու-թեամբ անդրէն առ ինքն կոչէր. եւ աշխարհիս Հայոց ի մարդկանէ ոչ ոք էր որ օգնէր։ Առաքէր զօրավարն Վահան յերեւելի ազգն Արծրունեաց եւ յազգս գաւառին Անձեւացեաց եւ Մոկաց եւ առ ազատորեարն Ռշտունեաց. տայր գիտել, եթէ որպէս յառաջնումն օգնեաց Աստուած յուսացելոց իւրոց, եւ ասէր թէ “որ ոք տենչի անմահ կենացն լինել ժառանգորդ, եկայք խնդրել զվրէժ եկեղեց-ւոյ թշնամանաց, որով թշնամանեցաւ ի բազում ժամանակաց եւ ամաց յարհամարհող ուրացողացն։„

Եւ լուեալ զայս պատգամ չորեցունց գաւա-ռաց նախարարացն, կէսքն գրոհ տուեալ ընթա-նային ի հօտ ոչխարացն ժամանել. եւ այլք ընդ-դասակս պծեաց հաղորդեալք գնային անդարձու-թեամբ ի խաւարն արտաքին։ ՅԱնձեւացի նախա-րարացն սեպուհ մի անուն Յոհան եւ միւս եւս Երուանթունի Ներսէհ անուն միաբանեալ ի խնդիր բարի ցանկութեան գնային խառնել ի գունդն զօ-րավարին Մամիկոնենի. եւ ի ճանապարհի մերձեալք

ի քաղաքագեօղն Առեստ ի մեծի շաբաթու զատկին յանկարծակի յանզգաստից եկեալ հասանէին ի վերայ նոցա իշխանն Անձեւացեաց Սեւուկ եւ իշխանն Մոկաց Յոհան բազում այրուձիով ընդ առաւօտն ծագել։ Եւ հարկանէին ի դիմի աներկիւղապէս. Նախ՝ Ներսէհ Երուանթունի յարձակէր ի վերայ իշխանին Մոկաց Յոհանայ եւ հարեալ նիզակաւ, օգնելով նմա եւ Անձեւացւոց սեպհին Յոհանայ, յերկիր կործանէին. եւ զայն տեսեալ զօրացն բազմութեան ի փախուստ դառնային։ Եկեալ այնուհետեւ Անձեւացւոցն Յոհան եւ Ներսէհ Երուանթունի եւ տեսեալ զնոսա կաթուղիկոսին Յովհաննու՝ տօն ուրախութեան եւ պատարագս ընդունելիս մատուցանէին Տեառն Աստուծոյ։ Եւ անցուցեալ զաւուրս ձմերայնոյ՝ հասանէին գարնանային ժամանակի։ Լսէին թէ զօրք բազում ի Պարսից եկեալ հասեալ են ի սահմանս Հերայ եւ Զարեւանդ գաւառի եւ էր հրամանատու եւ աւագ զօրուն Փուշտիպան Սաղար։

Եւ զօրավարն Հայոց Վահան գումարեալ զզօրսն Հայոց՝ ճեպէր հարկանել անդէն զայն տեղեօք, թերեւս ո՛չ լիցի անցանել բազմութեան Պարսից ի միջոց կողմն աշխարհիս Հայոց. երթեալ հասանէին ի գաւառն յԱրտազ եւ մօտեալք ի գունդն Պարսից՝ բնակէին ի գիւղ մի, որում անուն էր Ներսէհապատ։ Եւ սուրբ կաթուղիկոսն Յոհան հրաման տայր ամենայն գնդին Հայոց ջերմեռանդն պարապել աղօթից զգիշերն ողջոյն. եւ կատարէին զսահմանեալ ժամս գիշերոյն եւ հասեալք ի լոյս առաւօտուն սուրբ կաթուղիկոսն օրհնէր զամենեսեան։

Սկսանէր այնուհետեւ զօրավարն Հայոց յօրինել ըստ պատշաճի զիւրաքանչիւր կողմն ճակատուն. զմիջոց կողմն բազում այրուձիովն տայր ի ձեռն Սահակայ մարզպանին. եւ ի կողման աջոյ Թեւին կարգէր զԲաշղ Վահեւունի եւ զԲաբգէն Սիւնի եւ զԱտոմն Գնունի եւ զՓապակն Պալունի իւրաքանչիւր այրուձիով եւ այլ եւս յաւելուածով. եւ յահեկէ կողմանէ հանդերձ ուխտասէր Կամսարականօքն՝ Վահանաւ, Ներսէհիւ եւ Հրահատաւ. եւ ընդ աջմէ իւրաքանչիւր այրուձիով գնդացն կազմէր զինքն. պատրաստէր եւ զայլ արս աւագս ընտիրս այրուձիով հանդերձ եւ Վրենաւ Վանանդացով, առ որս եւ առաքէր զՊապ Արտակունեաց զայր ոստանիկ, զորդի Բաբոցի՝ ասել ցիւրաքանչիւր աւագս թէ “զնշանս հզօրագոյն արանց Պարսկաց եւ զԿատշաց եւ զգնդին Սիւնեաց տեսանեմ, զի դէպ ի մեզ դիմեալ գան. արդ դուք մեղմով երթայք եւ ուշադրեալ հայեցարո՛ւք ի մեզ. Թո՛ղ մեզ նախ լինի յարձակել, եւ եթէ մեք զմեր կողմն շարժեալ փախուցանեմք, ապա այլ կողմանքն՝ մեր եւ ձեր առաջի ո՛չ կարեն կալ:„

Թէպէտ եւ կամէին ըստ հրամանի զօրավարին առնել, այլ ստիպով հասեալ գունդն Պարսից յիւրաքանչիւր թեւ կողմանցն, ո՛չ տային պարապել, այլ դղրդեալ զկողմն աջոյ, ուր Բաշղն Վահեւունի էր, փախուցանէին. եւ Սահակ ասպետ յարձակեալ նիզակաւ ի վերայ Փուշտիպանացն Սաղարի, վրիպեցին ի միմեանց զնիզակսն երկոքեան. եւ մօտեալ առ միմեանս երիվարացն, բուռն հարեալ զմիմեանց հերաց եւ կռուէին ՙՍահակ եւ Սաղար՚. եւ տեսեալ Վահան թէ աղմկեցան զօրքն Հայոց եւ տկարացան,

ձայն արարեալ առ Վրէն Վանանդացի՝ “յառաջեա՛, ասէ, ի վերայ թշնամեացն եւ ձեռն ի գործ արա պատերազմելոյ.„ եւ նորա զարհուրեալ ասաց եթէ “ոչ եմ կարող. յիս ինչ ապաստան յայսմ ժամու դու մի՛ լինիր։„ Եւ Վահանայ զօրացեալ սրտիւ եւ նշանաւ խաչին կնքեալ զինքն՝ հանդերձ կամսարականօքն երկոքումբք յարձակէին ի վերայ հասելոց նոցա թշնամեացն, եւ շարժեալ սաստկապէս զկողմն իւրեանց՝ ի փախուստ դարձուցանէին եւ զբազում արս քաջս ընկեցեալ յերկիր կործանէին։ Եւ դարձեալ գունդ Հայոց բարի անուամբ եւ սաստիկ ընչիւք առ կաթուղիկոսն Յոհան, որոյ ընդ յառաջ ելեալ յաղթօղ գնդին ցնծալից սրտիւ օրհնէր զնոսա։ Եւ մինչդեռ գային ի գործոյ պատերազմին՝ լուր յանկարծակի աւետեաց տարածեալ քարոզէր ընդ ամենայն բանակն Հայոց. եւ եկն Վարդ (եղբայր զօրավարին Վահանայ) ողջ զերծեալ ոչ միայն լոկ անձամբ այլ եւ ծառայիւք դրամբ եւ կազմածով յամուր տեղեաց շահաստանին ի բարձրաբերձ պարսպացն եւ յասպարափակ բազմութենէ պահապանացն։

# ԳԼՈՒԽ ԻԸ․

*Խարդախութիւն Վախթանգայ*

“Բարի է յուսալ ի Տէր քան յուսալ ի մարդիկ։„ ՍԱՂՄՈՍ։

Ղազար. Գնային այնուհետեւ ի Ծաղկէոտն կամեցեալք առ վայր մի հանգչել ի ջերմկին, որ կոչի Վարշակի։ Հասանէր դեսպան ի Թագաւորէն Վրաց Վախթանգայ՝ թէ “գունդ սաստիկ եհաս յերկիրս Վրաց եւ իմ տեսեալ թէ ոչ եմ կարող կալ առաջի՝ խոյս տուեալ ի լերինս Հայոց մօտ ի սահմանակցութեանն Վրաց մնամ ձեզ։„ Եւ նամակ ունէր գրեալ ի Վախթանգայ խաբէութեամբ թէ Հոն գնդի հրաման ետու գալ եւ չեւ եւս հասին, բայց մինչ դուք գայք՝ հասանեն։„

Վասն զի երդումն էր աւետարանաւ եւ խաչիւ ընդ Վախթանգայ, յարուցեալ անյապաղ ամենայն զօրքն Հայոց առ արքայն Վրաց հասանէին եւ բանակեալք առ վայր մի ի գաւառին Կանգարաց[1] դադարէին։ Ուր պատրողական բանիւք թարթափեցուցանէր Վախթանգ զմիտս Վահանայ եւ այլ աւագ տանուտէրացն Հայոց՝ թէ “Միհրանայ զձեր եկդ լուեալ խոյս ետ ի սահմանաց Վրաց եւ յԱղուանս փախեաւ առ երկիւղի„ եւ թէ՝ “զերկուս աւուրս՝ եւ գունդք Հոնաց հասանեն.„ եւ ապա յերրորդ եւ ի չորրորդ օր ձգէր զպատճառադրութիւնն. եւ յետ այնորիկ յայլ ի վեց եւ յեօթն օր։ Դարձեալ լրտեսս տայր արձակել ի գնդէն Վրաց եւ Հայոց ի տեղիս ինչ դաշտացն, տայր երեւեցուցանել լոյս կրակաց բազմաց եւ կոճեղս ծառոց զի-

նեալս պյրանմանս ըստ խաբէութեան Մակեդոնացւոյ Աղեքսանդրի։ Դարձեալ ասէր՝ “ո՛չ գայ գունդն Հոնաց առ մեզ ի լերինս, այլ ասեն թէ աստ ի դաշտիս ած ցոյց մեզ զՀայս. ապա թէ ո՛չ չհաւատամք թէ Հայք ընդ քեզ միաբան են. արդ՝ եթէ դուք ի դաշտն չիջանէք, Հոն գունդքն չշարժին ուրեք եւ Միհրան դառնայ եւ զՎիրս աւերէ. ինձ ձեր եկք զի՞նչ օգուտ է։„

Եւ Հայոց գունդն ջանային վասն աւետարանին երկիւղի զամենայն կատարել. զի թէպէտ եւ տօթ էր ժամանակն, հարկաւորեցան իջանել ի դաշտն ճարմանայնու. եւ յիշխանացն Հայոց ոմանք ո՛չ յաջող համարէին զէջս գնդին ի Վիրս։ Չեւ եւս անցեալ աւուրս երեք կամ չորք՝ գայր հասանէր Միհրան եւ բանակէր դէմ յանդիման բանակին Հայոց յայնկոյս գետոյն, զոր Կուրն անուանեն. եւ բանակն Հայոց չուեալ յայլ տեղի հեռագոյն ի բանակէն Պարսից՝ առնէին զիւրեանց օթեւանին տեղին. եւ բազմաց ի գնդէն Հայոց ի գիշերին յայնմիկ մոռացեալ զահաւոր երդումն աւետարանին՝ պատգամագնացութեամբ գաղտ խօսեցան ընդ իւրաքանչիւր ոք սիրելիս զօրացն Պարսից՝ թէ “մեք ի բռնութենէ զօրավարիս Հայոց Վահանայ եւ ո՛չ սրտի կամաւ անկեալ եմք յիրս յայս. միտք մեր եւ խորհուրդք առ ձեզ են. եթէ առնիցէք մեզ թողութիւն, դուք իշխեցէք։„

Արտմտեալ ընդ սուտ եւ անպիտան խօսս արքային Վրաց Վահան Մամիկոնեան երիւք Կամսարական եղբարբք հարեալ ի դիմի իւրոյ թշնամւոյն կողմանն՝ դարձուցանէին ի փախուստ. մինչեւ տարեալ անցուցանէին զբազումս յայնկոյս Կուրն գետոյն եւ

զբազումս ի զօրացն Պարսից կոտորէին քաջաբար։
Եւ մինչդեռ այսպէս մրցէր Վահան, յանկարծակի
փախուցեալք առ հասարակ սրանային գունդքն ա-
մենայն Հայոց եւ Վրաց. բազումք ի նենգաւորացն
աղաղակէին առ միմեանս անհանգիստ՝ թէ "փա-
խեան Հայք, անձնապուրք լերուք.„ եւ դարձուցեալ
այնուհետեւ զերասանակս երիվարացն գնացին եւ
նոքա զհետ փախստէիցն Հայոց։ Եւ Վահանայ եկեալ
պատահէր Բաբգենայ Սիւնոյ անկելոյ ի զօրացն
Պարսից կարեվէր, զոր հեծուցեալ ի վերայ իւրոյ
նժուգի ի պատերազմէն ապրեցուցանէր։

Բայց որք ընտրութեանն եղեն արժանիք ընդ
սրբոյ ասպետին Սահակայ եւ քաջին Վասակայ Մա-
միկոնենի, կատարեցան յաւուրն։ Իսկ զօրքն ամե-
նայն Հայոց՝ ընդ որս եւ անպիտան զօրքն Վրաց
հանդերձ թագաւորաւն իւրեանց Վախթանգաւ՝
վատնեալք ցրուէին. զորոց զկնի հետամուտ եղեալ
գունդքն Պարսից՝ զբազումս կոտորէին եւ բազումք
յայլեւայլ տեղիս զերծեալ ապրէին. բայց զՀրա-
հատն կամսարական՝ սաստկապէս վազս առեալ երի-
վարին իւրոյ ընկենոյր, եւ հասեալ Պարսկացն մինչ-
դեռ էր հետիոտս՝ կալեալ ածէին առ Միհրան.
Ստեփ. եպիսկ. ապա պնդեալ զկնի՝ կալան եւ զգովելի սեպուհն
Ղազար. Ցազդ. տեսեալ Միհրանայ մեծապէս ուրախացաւ
եւ կապեալ տայր պահել զգուշութեամբ, եւ ուր
երթայր յաշխարհիս Հայոց՝ ընդ իւր շրջեցուցանէր,
Ստեփ. եպիսկ. եւ օր ըստ օրէ զառաջեաւ ածեալ կապանօք՝
դառն տանջանօք նախատէր եւ չարչարէր եւ հնա-
Ղազար. րէր դարձուցանել յիւր կրօնս։ Իսկ Վահան եր-
թայր առ վայր մի յամրագոյն տեղիսն Տայոց, ուր
եւ սինլքորք փախստէիցն Հայոց առ նա ժողովէին.

պյլ կամսարականքն երկոքեան ընդ Նմա իսկ էին միշտ։

Ջհետ եկեալ Միհրան գնդաւն իւրով՝ ջանայր հաւանեցուցանել Նուաճել. եւ էր բանակ զօրուն Արեաց ի գեօղն Դու[2] ի սահմանակցութեան Պարսից եւ Հոռոմոց։ Եւ զօրավարն Հայոց մերձ ի Նա իբրեւ երկուք հրասախօք ի գեօղ մի, որ կոչի Մկնառինճ[3], արամբք որպէս թէ հարիւրովք. եւ տեղին էր յիշխանութեանն Պարսից։ Ի մէջ այնչափ բազմութեան զօրաւոր քաջորերոյ գողացեալ սարսեալ կայր Միհրան եւ չիշխէր դիմել ի վերայ, այլ բանիւ ողոքանաց պատգամաւորէր ընդ Նմա ասելով՝ թէ "մի՛ կորնչիր եւ յարքայից արքայի ծառայութենէ մի՛ ելաներ եւ զաշխարհս Հայոց մի՛ տար ի վտանումն, ի հնազանդութիւն եկ թագաւորին, եւ ես աղաչեմ զթագաւորն եւ հաշտեցուցանեմ ընդ քեզ. եւ ինչ որ արժան է տալ քեզ՝ ջանամ զի տայ։„

Եւ Վահանայ պատասխանի արարեալ ասէր ցՄիհրան. "Այր թագաւոր, որ ուղիղ աչօք չհայի ի ծառայս եւ ուղիղ լսողութեամբ չլսէ ուրուք զբանս եւ ո՛չ ըստ արժանի իրաւանց քննութեան, առաւել եւս՝ որ կարի դժնդակագոյն է, հանապազ կամի տեսանել այլոյ աչօք եւ լսել այլոյ ականջօք, ծանր է ծառայութիւնն այն եւ դառն եւ վտանգ. վասն զի տէր՝ որ յիւր ի ծառայից զլաւ եւ զվատթար չգիտէ ընտրել, լաւ ծառայի տէր դժուարաւ կարէ լինել։ Արդ՝ Հայոց աշխարհս որպիսի՛ մեծ եւ պիտոյի աշխարհ է. ցո՛յց ինձ այր մի յայսպիսի աշխարհի արժանաւորապէս հասեալ ի տանուտէրութիւն. որեար աւազակ եւ անպիտան, հացկատակք եւ վատտոհմիկ

զայնպիսի մեծ Թագաւորութիւն խաբեն եւ ընդ կրակի փառս գնեն եւ տէրութիւն. եւ ի ձէնջ ըստ կողմն ելեալ զվաճառականն եւ զվաճառն ի միասին Թշնամանեն. այլ լաւութիւն եւ քաջութիւն եւ միտք եւ գիտութիւն, որով աշխարհ շինի եւ ի միջի լինի, այն չխնդրի եւ արհամարհեալ է։ Եւ արդ՝ իմ երկուս կռիւս արարեալ է ընդ Արի մարդկան եւ երրորդն այս է զոր ընդ քեզ արարաք. զերկուս կռիւսն արարաք ընդ այնպիսի երեւելի եւ քաջ մարդկան, զոր ի՞նքն Արեաց տէրն եւ ամենայն Արիք ճանաչէին թէ որպիսի որեար էին. օտար մարդոյ մեզ չէր օգնեալ, բայց միայն այս Հայոց վճարեալ է զայնպիսի մեծ գործ. ոչ բազում այրուձիոյ այլ հարիւր արամբ եւ կամ եւս նուազիւ զհազար եւ զերկուս հազարս այր փախուցեալ է սոքօք։ Եւ յայսմ կռուի մի՛ զմտաւ ածեալ պարծիք թէ աւելի ինչ քաջութեամբ յաղթեցէք մեզ, այլ ի մեր երկպառակութենէ եւ ի նենգելոյ եղեւ մեզ վնաս։ Զոր ձեր ի վատ տոհմէ եւ յանպիտան ի մարդկանէ աշխարհիս Հայոց իշխան կարգեալ էք, դոքա իւրեանց յետնութեան կորուսին յաշխարհէս Հայոց զքաջութիւն եւ զանուն բարի եւ զլաւութիւն. զի դնդի, որոյ զօրագլուխն վատ է, գնդին լաւ լինել չէ հնար. եւ աշխարհի, որոյ իշխանքն յետին են, անհնար է յառաջադէմ եւ անուանի լինել։ Իսկ յաղագս իմ դուք ամենեքեան գիտէք, զի ի հարցն իմոց ես տղայ մնացի. ո՛չ զվաստակս նոցա, որ առ Արեաց աշխարհն լեալ է, գիտեմ, եւ ո՛չ յանցման նոցա հաղորդ ինչ էի. բայց մինչ ես յանձինս զգացի եւ ձեզ Արեաց տեառնն արբանեկութեան արժանի եղէ, ի մտի եդի արդար

մտօք տեառն եւ ձեզ ծառայութիւն առնել. որչափ ես զլաւն հոգայի եւ ի լաւ վաստակսն յաւելուի, վասն անարժան իշխանքդ Հայոց զինչպէս բանսարկութիւնս առնէին, եւ դուք ինքնին մտօք լսէիք եւ ընդ իս չհայէիք ուղիղ. եւ իբրեւ ոչինչ գտի պատճառանս, խորհուրդ չար ի մտի արկի եւ ուրացայ զճշմարտութիւնն եւ երկիր պագի ստութեան եւ մոլորութեան, զոր այսօր առաջի ձեր եւ առաջի ամենայն աշխարհիս խոստովանիմ թէ ստութիւն է եւ աղտեղի խաբէութիւն. եւ յետ կործանման յորում կործանեցայ, մաշէի յերկիւղէ զամենայն օր թէ գուցէ մեռանիցիմ սովին մեղօք. ի բաց մերժեցի զերկիւղ թագաւորաց, կոխեցի զուրացութեանն խիղճ եւ լուսաւորեցայ. այսուհետեւ ուրախ եմ եւ պատրաստ հալածանաց, աղքատութեան, վշտի եւ մահուան, զի ո՛րում եւ դիպիմ քրիստոնէութեամբ՝ ուրախ եմ եւ անահ։

Բայց դու՝ զոր խօսիսդ, արդարեւ կարես առնել եւ հաւանի թագաւորն նուաճել զմեզ։ Նախ քան զամենայն զքրիստոնէութիւն շնորհէ աշխարհիս Հայոց. եւ զաղտեղի վաճառդ հատանէ յաշխարհէս մերմէ. եւ զմարդ ճանաչէք զլաւն եւ զանպիտան. ե՛ւ գործ խնդրէք յիւրաքանչիւր ումեքէ եւ ո՛չ կատակաբանութիւն. եւ ի գործ հայիք՝ տալ ըստ վաստակոց զհատուցումն եւ ո՛չ ի լկտէբանութեան խաբէութիւն։ Եւ կարէք գրել եւ կնքել թէ “ի մերմէ բռնութենէ եղեւ ձեր յանցումն եւ ո՛չ ի ձեր ստահակելոյ եւ յանդգնութենէ։„ Եւ զտոհմիկսն առ տոհմիկս ունիք եւ զվատտոհմակսն առ անտոհմակս. եւ եթէ այդպէս նուաճէք զմեզ՝ մեր բնիկ տեարք էք եւ հպատակ

*լինիմք։ Ապա եթէ նոյնպէս զյետինսն առ լաւս ունիք եւ զլաւսն յետս տանիք եւ զիշխանութիւնս աշխարհիս ոչ ըստ իրաւանց յարժանաւորսն եւ ի պիտանիսն տայք, մեք՝ որ ապստամբեցաքն, ոչ եթէ գիտէաք եթէ Արեաց առաջի ինչ կարեմք կալ, բայց միայն զմեռանելն եդաք առաջի եւ նմին պատրաստ եմք, եւ առաւել եւս ուրախ եմք, զի զանուանի եւ զլաւ մահ մեռանիմք քրիստոնէութեամբ քան թէ ուրացութեամբ գնել զանցաւոր փառս։„*

*Եւ մինչդեռ Միհրան եւ զօրավարն Հայոց զայսպիսի բանս ընդ միմեանս խօսէին յանկարծակի դեսպան հասանէր ի դրանէ եւ ստիպով զՄիհրան ի դուռն կոչէին. եւ նորա չուեալ ամենայն բազմութեամբ ճեպով ի դուռն, առեալ ընդ իւր զկապեալն Հրահատ եւ զայլ կապեալսն։ Եղբայր նորուն ՙՀրահատայ՚ տէրն Շիրակայ Ներսէհ յօրէ ունելոյ զՀրահատն ոչ էր դադարեալ ի լալոյ եւ ոչ էր հանգուցեալ ի վերայ անկողնոյ եւ ոչ ճաշակեալ հաց առանց արտասուաց. եւ երթայր զհետ գնդին Պարսկաց ածելով զմտաւ թէ ո գիտէ լրտեսեալ ուրեք կարասցէ զնա զերծուցանել. եւ մերձեալք որպէս թէ օթեւանաւ միով ի սուրբ տեղի տան Նահատակին Գրիգորի՝ ձայն սաստիկ բարբառոյ հանդերձ արտասուօք արձակեալ առ այրն Աստուծոյ աղաղակեաց ասելով՝ "Տէր Գրիգոր, որ զսաստիկ մէդ ամբարշտութեանն մեղաց մերոց մերժեալ փարատեցեր յաշխարհէս Հայոց, փարատեա եւ զիմ սաստիկ մէգս տրտմութեանս ի սրտէս եւ շնորհեա ինձ զանձկալի զեղբայրն իմ տեսանել առողջ առ իս։„ Եւ նորա լուեալ վաղվաղակի զկապեալն Հրահատ ի շրջափակ զգուշութենէ պահապանացն ար-*

ձակէր խաղաղութեամբ առ սիրելի եղբայրն իւր եւ յաշխարհ։ Ցայնժամ տեսեալ զաներկիւղապէս եւ զքաջաբար ելս կամսարականին Հրահատայ՝ զօրագլխին Արեաց Միհրանայ, հրաման տային ածել զերանելի սեպուհն Սիւնեաց զՑազդ ի նմին աւուր զառաջեաւ իւրեանց եւ սրով կտրել զգլուխ երանելւոյն մերձ ի տեղի մատրանն սրբոյն Գրիգորի ի գեօղն Բագաւան ի նահանգին Բագրեւանդայ ի լանջակողմն լերինն Նպատ յամսեանն Հոռի որ օր ԺԶ էր. եւ ամփոփեալ նշխարք նորա եդան անդէն ի սուրբ մատրանն Գրիգորի։

Եւ զօրավարն Հայոց Վահան չուեալ գայր հասանէր յԱյրարատ գաւառ եւ կատարեալ զուխտ պատարագաց ի Վաղարշապատ քաղաքին հանդերձ ուխտապահ նախարարօքն եւ այլ զօրօքն Հայոց, նախ՝ հոգացեալ զաղքատաց գարմանս, ապա՝ ուրախանային եւ ինքեանք։ Եւ չուեալք անտի հանգչէին ի բնական ոստանին Հայոց ի Դուին զաւուրս ձմերայնոյն։

Գային յանկարծակի ի կողմանց Վրաց արք դիւազգեցիկք եւ խելաշուրջք եւ ասէին ցամենեսեան թէ «ողջ են եւ կենդանի ասպետն Սահակ եւ սեպուհն Վասակ. եւ զմեզ յղեցին առ ձեզ թէ ի փախչելն ձեր ի կռուոյն Վրաց մնացաք մեք ի կռուատեղն խոցեալք կարեվէրք. եւ ըստ Աստուծոյ ցուցակութեանն առն միոյ քահանայի ապրեցուցանել զմեզ կամեցեալ՝ ի վանկունսն իւր բերէր զմեզ, եւ թաքուցեալ առ իւր աւուրս բազումս՝ բժշկեալ ողջացաք. եւ որսալ զմեզ կամին. եւ սուրբ վանականս ընդ բազում անապատ տեղիս եւ ընդ բազում խորաձորս քարանձաւաց շրջեցուցանէ

զմեզ ի ծածուկ, բայց ածել պյդր առ ձեզ երկնչի։ Արդ՝ փութացարուք արձակել պյտի գունդ սաստիկ եւ զօրագլուխ հաւատարիմ եւ տանել զմեզ առ ձեզ, որպէս զի հասեալք առ ձեզ լիցուք ի միասին վրէժխնդիրք հաւատոցն ճշմարտութեան։,,

Զայսպիսի սատանայական խօսս արանց անմտաց լուեալ զօրավարին Հայոց ասէր. “այդ բանք արանց վատախորհրդաց են եւ որք չարաչար են իմաստիւք, այլ զի մի՛ երեւեցայց ումեք բարենախանձ, առաջի ձեր են արք զօրուդ Հայոց եւ Նախարարքդ եւ որ ոք կամի երթալ չարդելում. բայց յիշեսջիք եւ գիտասջիք թէ ո՛րքան կորուստ յանօգուտ երթիցդ յայդոցիկ հասանէ աշխարհիս Հայոց։,, Յայնժամ հաւանեցուցեալ անխորհուրդ եւ թեթեւամիտ մարդոց եւ մանաւանդ կանանց Նահատակելոցն եւ Նոցունց ընտանեաց եւ դայեկաց՝ զնեպուհն Մամիկոնէից Մուշեղ բազում այր ընտիր գնդաւ արձակէին ընդ արսն խաբեբայս յիրս անօգուտս եւ ի ճանապարհս զոր ոչ գիտէին. եւ յածեցուցանէին զՄուշեղ եւ զգունդն մինչեւ ցվախճանել ձմեռայնոյն։

# ԳԼՈՒԽ ԻԹ․

## *Մահ Պերոզի:*

«Թագաւոր ոչ միայն զեւրն տայէ ըղպարտիս, այլ եւ որոց եղեւ պատճառք ի կորուստ:»

*Եւ եկեալ ժամանակ գարնայնւոյն հասանէր* Ղազար.
*յանկարծակի յերկիրս Զաւմիհր Հազարաւուխտ սաստիկ զօրօք․ անցանէր ստիպով ընդ կամուրջ գետոյն Երասխայ եւ ի գիւղաքաղաքին Արտաշատ բանակէր: Քանզի զգացուցեալ էր նմա ուխտանենգացն Հայոց զերթն կիսոյ գնդին ի Վիրս, ի վաղիւն դիմէր ի վերայ զօրավարին Հայոց մօտ ի քաղաքն Դուին․ կարգեալ զուազմն ի միջոցէ մայրւոյն, որում Խոսրովակերտն ասեն, անցուցանէր ի վերայ դաստակերտին մինչեւ ի լեռնակողմն, զոր Ջրվէժ կոչեն:*

*Եւ տեսեալ Վահանայ զայսչափ բազմութիւն զօրացն Պարսից, թէպէտ եւ զանընդդիմակայ չափաւորութիւն իւրեանց գիտէին, սակայն եւ ոչ կարի զարհուրեալք՝ ըստ բաւականի զօրուն իւրեանց բաժանեալ ի մի մի եւ յերկուս նախարարս՝ յարձակէին ի վերայ եւ առեալ քաջասրտաբար մասն ի գնդէն Պարսից բազում արս ընտիրս դիաթաւալ յերկիր կործանէին, եւ իւրեանց դարձուցեալ զերասանակս երիվարացն գնացին ի բաց քաջաբար․ բայց անդէն ի տեղւոջն նահատակեցան երկուք արք ի նախարարացն Հայոց՝ երանելին Որդի ի տոհմէն Դիմաքսենից եւ երանելին Քաջաջ ի տոհմէն Սահառունեաց․ եւ զսուրբ հայրապետն Յոհան ընկեցեալ ի ձիոյն թողին կիսամահ:*

Եւ ի նմին աւուր գայր հասանէր սեպուհն Մուշեղ հանդերձ պյրուձիովն, եւ ոչինչ ժամանեալ գործոյ պատերազմին գնային ի բաց։

Այսպէս ցրուեալ այսր եւ անդր զօրքն Հայոց իւրաքանչիւր սփռէին. եւ գնայր զօրավարն Հայոց՝ ինքն եւ նախարարքն՝ դադարել առ վայր մի յամուր տեղիս սահմանացն Խաղտեաց։

Հազարաւուխտ դիմեալ ամենայն զօրօքն զբազում տեղիս ամրոցացն Հայոց առեալ հարկանէր, քակէր, աւերէր եւ անցանէր. եւ զբազումս կոտորեալ հանէր արեանց ճապաղիս. խնդրէր հնարս կամ առնել ձեռբակալս զքաջ Մամիկոնեանն Վահան եւ կամ սպանանել պատերազմաւ եւ հանգչել։ Եւ երթեալ Յոքաղն[1] բանակէր մօտ ի գեօղն Գիւղիկ եւ Վարդաշէն. լսէր ի վաղիւն թէ Վահան մօտ է ի նա ի Վարայրվարդյն ի Հոռոմ տան ի գաւառին Շաղագոմ[2]։ Տեղեակ առաջնորդօք հասանէր ընդ առաւօտուն ծագել. եւ գտեալ անդ բազմութիւն այլ մարդկան, ընդ որ եւ կանայք կամսարականացն Ներսէհի եւ Հրահատայ։ Զբազումս ի ռամիկ մարդկանէն Հայոց սպանանէին եւ զկանայս կամսարականացն ըմբռնեալ տանէին ի բանակն Պարսից. բայց զօրավարին Հայոց ոչ պատահեալ՝ դառնայր։ Ստուգեալ վասն կանանցն կամսարականացն՝ թէ արդարեւ նոցա կանայքն են, ուրախանայր խորհելով այսպէս թէ “արդ նոքօք հաստատ կարեմ որսալ եւ ըմբռնեմ զՎահան։„ Եւ զկանայս հրամայէր ըստ օրինացն քրիստոնէից հաստատապէս պահել սրբութեամբ եւ ամենայն զգուշութեամբ. եւ ինքն չուեալ Յոքաղայ իջանէր ի գաւառն Բասեան եւ բանակէր մօտ ի գեօղն Դու ի

դաշտին աղբերականաց զոր Արծաթաղբերսն[3] կոչեն։ Եւ կացեալ անդ օր մի՝ դեսպան ի դրանէ հասանէր առ նա տալ գիտել զիւր ամենայն Արեաց ուժով ի վերայ Հեփթաղին զդիմեցումն. եւ նմա հրամայէր երթալ ի Վիրս եւ զթագաւորն Վրաց զՎախտանգ ունել՝ կամ սպանանել եւ կամ ի բաց փախուցանել յաշխարհէն. եւ զՇապուհն ի Միհրան տոհմէն անդէն յաշխարհին Հայոց թողուլ գնդաւ մարզպան։ Եւ Հազարաւուխտոյ երթեալ անդ ՚ի Վիրս՚ ժողովէր առ ինքն զուխտանենգաց դասն, եւ ումեմն թագաւորութիւն խոստանայր, ումեմն գահ եւ պատիւ եւ պարգեւ բազում, եւ այլոց բազմաց զպէտս իւրաքանչիւր։ Եւ միաբանեցուցեալ զշատս յաշխարհէն Վրաց գունդ կազմէր. զայն տեսեալ Վախտանգայ՝ խոյս տուեալ յաշխարհէն Վրաց ի կողմանս Եգեր աշխարհին հասանէր։

Իսկ Շապհոյ տարեալ զկանայս կամսարականացն յամուր բերդն Բասենոյ, զոր Բողբերդն կոչեն, անդ թողոյր. յանձն արարեալ Ցղտավշնասպայ բերդակալի՝ պատուիրէր նմա բազում զգուշութեամբ պահել ըստ օրինացն քրիստոնէից զնոսա. քանզի կանայքն իսկ կամսարականացն զնոյն ասէին բազում անգամ համարձակապէս. “թէ զարսն մեր արդարեւ կամիք նուաճել, զայդ եւեթ տուք լսել նոցա՝ թէ մեք խաղաղութեամբ եմք, ապա զոր ինչ հրամայէք նոցա՝ լսեն եւ կատարեն. ապա թէ այլ ինչ լսեն վասն մեր՝ ի նախատանաց եւ յամօթոյ առաւել դնեն զանձինս ի մահ։„ Ինքն իսկ Շապուհ պատուէր ստէպ տայր լսել կամսարականացն՝ թէ “մի կորնչիք, այլ եկա՛յք նուաճեցարո՛ւք եւ զկանայս ձեր առ ձե՛զ առէք, եւ իմով միջնորդութեամբ

մէն Մամիկոնէից եւ Ներսէհ կամսարական ընդ կողմանն հիւսիսոյ ծովուն երթային ի գիւղ մի կար-…ոյ, որում անուն էր Արծաթի, կամեցեալք առ…այր մի հանգչել. հնձօղք արտորայոցն շուրջ զտե-…կօքն գործէին, եւ Պարսիկքն կամեցան մշակացն …եղեացն վնասել թէ "ընդէր բնաւ ծառայից ար-քայից արքայի տայք շրջել յաշխարհի ձերում:,, Եւ տեսեալ Խուրսայ, որ էր ի գաւառէն Արշամունեաց ի գեղջէն Շիրմաց դայեկորդի տեառն Շիրակայ կամսարականին, զոմն ի Պարսից զօրացն, զի կամէր սպանանել զայր մի կարնացի ի մշակացն. եւ մշակն շուրջ գալով զբարդիւ միով խուսափէր ի սպանո-ղէն. եւ յարձակեալ Նիզակաւ Խուրսն ի վերայ Պարսկին անդէն ի տեղւոջն սատակէր եւ զերծու-ցեալ ապրեցուցանէր զկարնացին ի սպանօղէն. եւ Մուշեղ եւ Ներսէհ ընդ գործն հայեցեալ ընդ Խուրսայ, տեսեալ եւ զհետամուտսն զկնի նոցա թէ չեն կարի բազումք, յարձակեցան ի վերայ սակաւ արամբք եւ բազում արեանց ճապաղիս ի տեղւոջն հանէին եւ զայլսն փախստականս արարեալ դար-ձուցանէին ընդ կրունկն ամօթով. եւ եղեւ թիւ մեռելոց ի տեղւոջն եօթանասուն եւ երկուց արանց: Եւ լուեալ զպսպիսի յաջողութեան գործ զօրա-վարին Հայոց՝ եա փառս Աստուծոյ եւ ինքն գնայր ի սահմանս Հաշտենից եւ հասեալ բանակէր ի գաւառին Արշամունեաց ի գիւղն Երէզ, եւ գտեալ զայն գիշեր հանգստիւ յագեալ քնով՝ զարթն ի գեղջ Երիզայ առեալ ընդ զօրուն իւրոյ գայր հա-սանէր ի վերայ ղակիշին ի գիշերի եւ սպարափակ արարեալ Երիզացօքն զտեղի կռուոյն իւրեանց զգունդս Պարսկացն ահաբեկէին, եւ խառնեալ ընդ

միմեանս ինքեանք զինքեանս Պարսիկքն առաթ[illegible] հարեալ կոտորէին. եւ լինէր ձայն լալոյ եւ ձայ[illegible] գուժի ի բանակէ անօրինացն, բայց ի Հայոց գնդէ[illegible] Գաբաղ միայն սեպուհն Գաբեղեան մեծ արութի[illegible] ցուցեալ՝ կատարելութեան պսակի արժանի եղեւ. Եւ Վահան դարձեալ ի կոտորածէ թշնամեացն հանգչէր զմնացեալ մասն գիշերոյն յողին գեղջն Ճտեայ ի գոմս տեղեացն եւ ի ծագել լուսոյն երթեալ բնակէր ի գիւղն Ճտէոյ: Եւ մինչ կամեցեալ հանգչել առ վայր մի ի ծանրութենէ գիշերոյն աշխատութեանց՝ զաչս ի վեր առեալ տեսանէին եւ ահա հասեալ կայր ի վերայ նոցա զօրագլուխն Պարսից Շապուհ: Եւ տեսեալ Վահանայ զյանկարծահաս դիմեցմունս զօրագլխին՝ հրաման տուեալ փութանակի կազմէր, որքան իսկ էին. գոչէր առիւծաբար թէ "մարդոյ հաւատացելոյ միում յերկուց վրիպել անհնար է. այլ սակայն մինն յերկոսեան առաւել եւս մեծ՝ ի վեր է եւ բաղձալի քան զմիւսն. մի՛ զանգիտեալ ոք զարհուրեսցի թերահաւատութեամբ. Տէր Աստուած ի ձեռս սիրելեաց իւրոց մինն զհազարս հալածէ եւ երկուս զբիւրս շարժէ:„ Եւ մինչդեռ նա կազմէր յարձակմանն, հայեցեալ տեսանէ զի գունդն ամենայն Հայոց դարձուցեալ զերեսս յուխտէն երդման աւետարանին եւ ի խրատուէ զօրավարին, երթային փախստեայք ամենեքեան, եւ մնաց ինքն եւ Մուշեղ եւ երեքեան կամսարականքն ինքեանց դայեկօք եւ այլ թուով արք քառասնիւք կամ նուազիւք եւս: Ասէր ոմն ցզօրավարն թէ "յոււշ տէր յոււշ.„ այսինքն թէ հնար ինչ է ի ժամուս տեղի տալ եւ անձին զգուշանալ: Եւ Վահանայ տեառնագրեալ զինքն բարձր ձայնիւ ասէր թէ

“ցիս արդ ոք յուշ մի՛ ասէք, զի ինձ յուսալ է մարդ քան լիցի բայց միայն ի խաչն Տեառն.„ եւ քաջաբար հանդերձ ուխտապահ արամբք սակաւուք հերձանէր զբովանդակ գունդն Պարսից եւ ընդ մէջ ամենեցուն յայնկոյս ելանէր՝ սպանեալ իւր եւ արանցն բազում՝ արս հզօրս պատերազմօղս ի զօրացն Պարսից. հարեալ խոցէին նիզակաւ ընդ անութ կարէվէր եւ զհպարտ իշխանն Սիւնեաց զԳդիհոն, որ պարծէրն ամբարտաւանութեամբ թէ “ես ընդ Վահանայ եւ այլ Հայերդ ոչ եթէ նետիւ կռուիմ այլ գդլկով պողեալ զբոլորս ցնդեմ:„

Բայց զօրավարին Վահանայ հանդերձ գործակցօքն զգործ քաջութեան վճարեալ, երթայր այնուհետեւ անհոգս. եւ այնպէս արկեալ էր Աստուծոյ զահ եւ զերկիւղ զօրավարին ի վերայ զօրացըն Պարսից, զի կարծէին թէ ի հայեցուածէ լոկ առն Մամիկոնենի եւ յարանցն որ ընդ նմայն էին՝ չզերծանիցին առանց վտանգի:

Իսկ Սիւնեաց զօրուն թափեալ զփորոտի իշխանին իւրեանց ‘Գդիհոնի՝ վասն կարի զազրապէս հոտելոյ եւ պատեալ եղեգամբ՝ առեալ գնացին յաշխարհն Սիւնեաց. զայն տեսեալ Սիւնեաց այրուձիոյն բովանդակի՝ քայքայեալք ընդ այլեւայլ ճանապարհս գնացին յիւրաքանչիւր տեղիս:

Եւ Շապուհ՝ պարսիկ գնդին զօրագլուխն՝ իբրեւ տեսանէր զքակումն Սիւնի գնդին եւ զահաւոր զօրութիւն հակառակորդին Վահանայ Մամիկոնենի, սրտմտեալ զարհուրէր. եթէ զի՛նչ առնիցէ, չիմանայր. զի ասէր. “թէ երեսուն միայն արամբք ի վերայ եւ չորից հազարաց յարձակեալ խոր-

տակեաց զամենեցունց զսիրտս, այժմ որպիսի վըստահութեամբ կարասցուք զայնպիսի քաջ որերոյ ունել զդէմ սակաւացեալքս։ Մի գուցէ ի մերձակայ սահմանակից տեղեացս առեալ ՙՎահանայ՚ օգնականս՝ չկարիցեմք եւ զապրուստ անձանց գտանել այնուհետեւ։ Այլ եկայք փութասցուք յոստանին Հայոց ի տեղիս եւ ճեպաւ դեսպանօք զգացուսցուք արքայից արքայի։,, Զայս զմտաւ ածեալ՝ չուէր վաղւուն ի գաւառն Բասենոյ. եւ եկեալ ի գիւղն, զոր Ալվարն կոչեն, մինչդեռ տարակուսեալ տանջէին յերկիւղէ զօրավարին Հայոց, հասանէր դեսպան ի Պարսից ունելով գոյժ չարաչար եւ նամականի բազում անողջոյն ի Պարսից, որք յանթիւ կոտորածէ Հեփթաղին զերծեալք էին։ Եւ զբեկումն աշխարհին Արեաց ծանուցեալ ի գրեալսն՝ ի մեծ տրտմութիւն ընկղմեալ զարհուրէր ՙՇապուհ՚, եւ կոչեցեալ զայրն առանձին հարցանէր թէ ո՞րպէս կամ զի՞արդ սպառսպուռ եհաս այնպիսի վախճան եւ կործանումն Արեաց աշխարհին։ Եւ դեսպանին պատասխանի արարեալ ասէր թէ “քո հարցանելդ պատշաճ եւ ի դէպ է, բայց ինձ կարի ծանր է խօսել զվատ բանս, մանաւանդ յորում ոք այնչափ վնասուց եւ բեկման չէ պատճառ, բայց ինքն տէրն Արեաց Պերոզ։ Նախ՝ մինչդեռ այդրէն ի Վրկանի զօրաժողով արարեալ կամէր խաղալ ի վերայ Հեփթաղին, ո՛չ ոք հարցանէր ի մարդկանէ զարժանն եւ զանարժանն։ Աղաղակէր ամենայն բերան՝ “ինքն ՙՊերոզ՚ իսկ աստէն սուր ի վերայ եդեալ հրամայեսցէ սպանանել քան եթէ սրով Հեփթաղին տայ կորուսանել զԱրիս։ ,,Եւ այնչափ բազմութեամբ Արեօք եւ Անարեօք իբրեւ զմահապարտ ի մահ եւ

ոչ իբրեւ զպատերազմօղս ի կռուել երթային։ Ցորժամ մօտ հասաք անդր, առաքեաց առ Պերոզ Հեփթաղն թէ “քո ընդ իս ուխտ է երդմամբ գրով եւ կնքով՝ թէ չկռուիմ ընդ քեզ. եւ սահմանս կարգեցաք, զորովք չիշխեսցուք թշնամութեամբ անցանել առ միմեանս. արդ յիշեա՛ զուխտն եւ ի բա՛ց դարձիր խաղաղութեամբ եւ մի՛ մեռանիր. քանզի ես եւ արդարութիւն ուխտապահութեան ի միասին կռուիմք եւ դու եւ ուխտազանցութեանն ստութիւն ի միասին էք. եւ արդ՝ դու ինձ զի՞րդ կարես յաղթել։,, Եւ Պերոզի սաստկապէս զայրացեալ պատասխանի արար հպարտութեամբ Հեփթաղին եւ ասէ. թէ “զայս բազմութիւն գնդին, զոր դուք տեսանէք, կիսովս ընդ ձեզ կռուիմ եւ կորուսանեմ, եւ կիսովս զհող տեղեացդ, ուր դու լինիս, կրել տամ, որ ի ծովն եւ որ ի փոսն, զոր հատին, լնուլ։,, Եւ առ անզգայութեան սրտին ոչ իմանայր թէ դիակամբ ծառայից իւրոց լնելոց է զփոսն, զոր փորեաց ի կորուստ անձին իւրոյ եւ ամենայն Արեաց աշխարհին։ Եւ հասեալք առ միմեանս եւ հարեալք ի դիմի՝ կորեաւ ինքն ամենայն որդւովքն իւրովք եւ աշխարհաւ։,,

Եւ լուեալ զայս ամենայն ի դեսպանէն՝ հրամանն տային զօրուն եւ հասանէին յաշխարհն Պարսից. բայց զկանայս կամսարականացն թողեալ Հայոց անդէն ի Բողբերդի՝ յանձն առնէր բերդակալին պատուիրելով բազում զգուշութեամբ պահել ըստ օրինի քրիստոնէից։

Եւ զօրավարին Հայոց Վահանայ եկեալ այնուհետեւ ի Վաղարշապատ քաղաք հանդերձ ողջախորհուրդ եւ աննենգ ուխտապահ Նախարարօքն

Հայոց՝ կատարէր զսովորական ուխտս եւ զպատարագս ի սուրբ եկեղեցւոջն կաթուղիկէի, զոր նորոգեաց մեծապայծառ շքեղութեամբ՝ զհնացեալ գործ նախնեացն իւրոց, եւ անտի չուեալ յոստանն Դուին մտանէին, եւ դադարեալ անդ աւուրս սպասէին եւ ակն ունէին հրամանի առաջնորդութեանն Քրիստոսի։

# ԳԼՈՒԽ Լ·

## *Հաշտութիւն:*

"Բախեցէք եւ բացցի ձեզ. խնդրեցէք եւ տացի:"

Եւ լուեալ Հազարաւուխտոյ յաշխարհին Վրաց զսպանումն Պերոզի՝ տարակուսէր յանձն իւր եւ հասեալ ի դուռն՝ ժողովին առ նմա մնացորդք Արեաց աւագանւոյն: Խորհուրդ ի մէջ առեալ թէ զո՞ արժանի թագաւորութեան նմանեցուցանել կարասցեն. հաստատէին միաբանութեամբ զերսն ի վերայ Վաղարշու,* որ էր եղբայր թագաւորին Պերոզի եւ եդեալ վկայութիւնս բազմեցուցանէին զնա ի գահու թագաւորութեանն Պարսից: Ղազար.

Խորհուրդ ի մէջ առեալ այնուհետեւ Հազարաւուխտոյ միաբանութեամբ աւագանւոյն յերկրորդումն աւուր թագաւորութեանն Վաղարշու՝ խօսէր առաջի թագաւորին՝ "Նախ առաջին՝ որպէս մեծ աշխարհն Հայոց ի ձեր ծառայութենէ ի բաց կացեալ են, եւ այրն որ ի չճանաչելոյ զպիտանաւորութիւն նորա Պերոզ կորուսեալ եհան յԱրեաց ծառայութենէ զայնպիսի աշխարհ, ո՛րքան ինձ առնէ վնասք, գիտեն ամենեքեան. եւ Շապուհ Միհրան, թէ լսել կամիք, դոյն իսկ ասէ ձեզ:"

Հարցեալ զՄիհրան Շապուհ զգործոյն Հայոց եւ լուեալ կարգեալ բանս ի Միհրանայ Շապհոյ, ի Հազարաւուխտոյ եւ այլ ամենայն Արեաց աւագանւոյն՝ վաղվաղակի Նիխոր զՎշնասպդատ զայր հեզ եւ մտացի եւ աշխարհաշէն բազում այրընտիր

* Ըստ Սեբէոսի "Կաւատ որդի Պերոզի:"

*խնդութեամբ մեռցուք, այլ պարսկի առն երկիր ոչ պագցուք։„*

*“Նախ առաջին՝ եթէ զհայրենի եւ զբնիկ օրէնս մեր ի մեզ թողուք. եւ զհայ այր զոք մի մոգ ոչ առնէք. եւ ումեք յաղագս մոգութեան գահ եւ պատիւ չտայք. եւ զկրակարանն յաշխարհէս ի բաց տանիք. եւ զեկեղեցւոյ թշնամանս յաղտեղի եւ յանպիտան մարդկանէ, որ ցայժմ լինէր, յայսմ հետէ մեզ չտայք տեսանել։*

*Երկրորդ՝ զմարդ ոչ իշխանաբար ճանաչէք այլ իրաւաբար գիտել զլաւն եւ զվատթարն, ընտրել զպիտանին եւ զանպիտանն, իմանալ զտոհմիկն եւ զանտոհմիկ, ունել առ լաւսն զպատուականն եւ զքաջն եւ զօգտակարն, սիրել զվաստակաւորսն եւ ատել զանվաստակն, ունել ի մօտ զիմաստունս եւ ի խորհուրդս առնել. եւ զանմիտսն ոչ մօտեցուցանել, այլ եւ ի հրապարակէ եւս հալածել։*

*Եւ երրորդ՝ որ տէրն է Արեաց եւ աշխարհի թագաւոր՝ կամիմք, զի ինքն տեսցէ իւրովք աչօք եւ ինքն լուիցէ իւրովք ականջօք եւ ինքն գիտասցէ զմարդ լաւ եւ զանլաւ։ Թագաւոր, որ իւրովք առողջ աչօքն հայի եւ աննախանձ լսողութեամբ լսէ եւ արդար բանիւ խօսի ընդ իւր ծառայս, կենդանացեալ ծառայքն օր քան զօր աճեցուցանել ջանան զբարին, որպէս աշխարհ շինի եւ տէրն պայծառանայ։*

*Արդ՝ եթէ զայդ այդպէս կարէք խոստանալ, զխոստացեալսն գրով եւ կնքով հաստատեալ տայք ցմեզ, ապա կոչեա՛ եւ գամք կամաւ եւ լսեմք բանից ձերոց եւ հրամանի թագաւորին հաւանիմք, զոր ինչ ասէ։„*

Եւ խօսեցեալ զայս ամենայն ընդ Շապհոյ Ի Բուլ-
հըրդեան դպրի եւ ընդ Միհրվշնասպայ ճուկաւ
շացւոյ ուղարկեաց զնոսա. առաքեաց եւ յխա-
ւխտակցացն զՑաշկուր Արծրունի եւ զՅահ-ալ
կամսարականն՝ զերանելւոյ զԱրշաւրայ զորդի
զՎասամուրտ կարքային եւ զԱռավան Աղբիւրկացւ
եւ զՊաճոկ ի մարդպետական գնդէն։

Եւ տեսեալ Նիխորոյ զՀայերն, որ չողքան առ
նա ի Վահանայ՝ ուրախացաւ. եւ հրաման տուեալ
ընթրեացն ընկալաւ զնոսա բազում գոհութեամբ
եւ յոյժ սիրով՝ յիշելով հանապազ ըստ ամենայն
բաժակի զքաջ Մամիկոնեանն Վահան։ Եւ ընդ
առաւօտն ժողովեցան ամենայն ատեանն Պարսկաց
առաջի Նիխորոյ՝ աստուածուրաց մարդիկն եւ պատ-
գամաւորքն ի Նիխորոյ եւ հայ Նախարարքն. զպատ-
գամն Վահանայ առաջի ամենայն ատենին յայտնապէս
լուեալ Նիխորոյ եւ խնդալից եղեալ գրէր Նամակ
առ Վահան օրինակ զայս. "Լուայ, ասէ, զամենայն
խօսեցեալսն քո ի պատգամաւորացն. արդ՝ արի եկ
առ իս վստահութեամբ եւ զամենայն խնդիրս քո
եւ այլ ինչ զոր դու ասես՝ ուխտեալ է Արեաց
տեառնն եւ ամենայն Արեաց աւագանւոյն տալ
լիով եւ կատարել։" Եւ զնախարարսն, որ եկեալ
էին ի Վահանայ, պատուեալ արձակէր ընդ պատ-
գամաւորս իւր։

Եւ պատգամաւորացն առ Վահան մատուցեալ
զնամակն Նիխորոյ ստիպով հաւանեցուցանէին Նմա
երթալ։

Զուեալ այնուհետեւ զօրավարին Հայոց Վա-
հանայ ամենայն ուխտապահօք եւ բազում գնդաւ՝
երթային ի գաւառն Արտազ ի գեօղն Եղինդ.

խնդրարէր անդ ինքն եւ որ էին ընդ նմա եւ առաքէր պատ Նիխոր եւ զլուր եկն տայր գիտել նմա. եւ ասէր ցՆիխոր. “արդ՝ եթէ թուի քեզ գալ իմ եւ օրհնանել զքեզ, տուր ածել առ իս արս աւագս՝ ոչ Յրիս յականաւոր տոհմաց, որ եկեալ կացցեն աստ առ ւ իմ որեար մինչեւ եկեալ ես տեսից զքեզ եւ խօսեցեալ իմ եւ քո լուիցուք ի միմեանց զոր ինչ ի դէպն թուի մեզ առնել:„

Եւ Նիխորոյ լուեալ զեկն եւ զկամս Վահանայ՝ վաղվաղակի տայր տանել ցկամսարականն տէրն Շիրակայ Ներսէհ՝ Բագէ զԱտրպայական Շահպապ եւ զՎեհվեհնամ զՀայոց հազարապետ եւ զՆերշապուհ զՄիհրանայ զեղբայր եւ զՀինդ եւս այր աւագ Պարսիկս:

Եւ Վահանայ տեսեալ զաւագորեարն ընդունէր զնոսա խնդութեամբ եւ ի միասին ուրախացեալք այն օրն ի վաղիւն թողոյր զուլթեսին զնոսա առ իւր հաւատարիմ արս եւ ինքն չուեալ գնդաւ եւ կազմութեամբ գնայր առ Նիխոր. մերձեալք ի գիւղն, ուր Նիխոր էր, հրամայէր զօրուն վառել ըստ օրինի պատրաստութեան պատերազմի. տայր հրաման Վահան հնչեցուցանել զփողս պատերազմականս, յորմանէ[1] զարհուրեալք արք զօրուն Նիխորոյ՝ կարծէին խաբէութեամբ ի վնասել զնոսա եկն Վահան. եւ Նիխոր առաքեալ ընդ առաջ նորա արս աւագս՝ տայր ասել ցՄամիկոնեանն, եթէ՝ “ոչ ըստ կարգի Արեաց առնես դու զայդ, այլ նորոգ իմն ձեւանաս. քանզի ի չուի փողով յԱրեաց բանակ սպարապետն միայն Արեաց իշխէ մտանել եւ այլ ոք զայդ համարձակութիւն ի Պարսիկս ոչ իշխէ առնել:„ Եւ Վահանայ պատաս-

խանի տուեալ ասէր. «Նախ՝ արա զիս Արեւաց տեառն ծառայ, ապա եւ առանց ի քէն իսկ ուսանելոյ թուի թէ եւ ես իսկ գիտեմ զԱրեւաց աշխարհի զկարգ եւ զարժանն։» Ապա ինքն իսկ Վահան՝ եկեալ տեսանէր զնա ՙզՆիխոր՚ յատենի ժամու, վասն զի ընդ ծագել արեւուն եկն Մամիկոնեանն առ Նիխոր։ Եւ Նիխորայ տեսեալ զՄամիկոնեանն Վահան եւ զուխտակիցսն ընդ նմա՝ տայր զողջոյն զԱրեւաց տեառնն Վաղարշու եւ զամենայն աւագանւոյն։ Եւ լուեալ Վահանայ զողջոյն Արեւաց տեառնն եւ դրան աւագանւոյն շնորհակալութեամբ ընգունէր։ Հրաման տուեալ Նիխորոյ զամենայն արս զօրուն Վահանայ ի ներքս թողուլ, նոյնպէս եւ աւագ պարսիկ որեարոյ ի ներքս կալ յատենին հրամայէր եւ սկսանէր խօսել ընդ Վահանայ եւ ասէր. «Գործ պատերազմի քաջութեամբ, եւս առաւել խոհականութեամբ եւ իմաստիւք վճարի. դու զերկոսեանն զայդ ի քում անձին լիով ետուր տեսանել ամենայն Արեւաց աշխարհի եւ ճանաչել. քանզի զքաջութիւն ցուցեր սակաւ արամբք կռուելով ընդ բազումս եւ զիմաստութիւն յայտ արարեր գիտելով զժամ կռուոյն եւ զտեղի տալոյ։ Զի եթէ ոչ երկու այդ իրք ի քեզ լի եղեալ էին, զիա՞րդ հնար լինէր քեզ այդչափ կարի սակաւ արամբք կալ ընդդէմ այնչափ անթիւ բազմութեան պատերազմօղ որերոյ եւ երբեմն մեծապէս յաղթել եւ երբեմն զարհուրեցուցանել եւ աշխատել։ Ցաղագս որոյ՝ զմտաւ ածեալ իմ զքո այդպիսի արարուած եւ զմտաւորութիւն՝ կարի քաջ ճանաչեմ զամենայն պատասխանիս, զոր առնելոց ես դու մեզ ամենայն բանի զոր լսես ի մէնջ։ Վասն զի՝ թէ զապստամ-

*բուժենէդ քումմէ հարցանեմք թէ զիա՞րդ իշխեցեր խորհել՝ թո՛ղ թէ առնել՝ պատասխանի տուեալ ասես թէ՝ «չճանաչողութիւնն Պերոզի բռնադատեաց զիս մեռանել։» Եւ ոչ ոք յԱրեաց կարէ քեզ մեղադիր լինել։ Որ այժմ Արեաց տէրն է եւ ամենայն աւագանին զայդ եւեթ խօսին հանապազ յիշելով զՊերոզի անհաւան եւ զամբարհաւաճ զբարսն։ Դու թէ հաւանեալ նուաճիս եւ բնիկ քո նախնեաց տեառն ծառայութիւն առնես եւ որ ինչ վատթարն եղեւ ի մէնջ եւ ի ձէնջ մոռանաս եւ ի բաց թողուս, աստէն ի Հայս կաս, մինչեւ թագաւորն կնքէ եւ տայ բերել առ քեզ. եւ եկեալ բարեաւ առ տէրն Արեաց զամենայն որ ինչ բարի եւ արժան է եւ քում անձինդ եւ որում դու կամիս՝ տայ սիրով եւ կամաւ եւ կատարէ։»*

*Եւ լուեալ Վահանայ տայր պատասխանի եւ ասէր. «Յորժամ զիշխանս բարեսէրս տայ եւ լաւածանօթս եւ աշխարհաշէնս՝ անդէն եւ անդ արժան է նուազամտին գիտել զբարերարութեանն Աստուծոյ այցելութիւն։ Տեսանեմք զքեզ կամաւոր բարւոյ եւ սիրիչ. իսկ վասն Պերոզի զոր ասացեր անընտրող միտս ունելով զծառայս, բաւական լիցի քոյ տեառն բանն, եւ ես գոհանամ զԱստուծոյ, զի զիս անաշխատ պահեցէք յառնելոյ զըստ հարցման քո զպատասխանիսն։ Իմ թէպէտ էր ամենայն տրտունջ զՊերոզէ, որպէս հանապազ խաբէին զնա այլք ատեցեալք յամենայն սրբասէր մարդկանէ, փախստականք յաշխարհէն ըստ աղտեղի գործոց իւրեանց, լեռնախոյսք, աւազակապետք, արիւնապարտք, հացկատակք, բանսրսողք, խաբեբայք, շաղակրատք, անյարուչք, վատատոհմակք. եւ գային*

անկանէին ի մոխիրն, եւ ձեր տուեալ զխնդիրն ուղարկէիք պարգեւելով դահ եւ պատիւ եւ զտունս եւ զկեանս եւ զմեծութիւնս. եւ այնպիսի խաբեբայ մարդկան ծանուցեալ թէ ոչ իմաստիւ եւ քաջութեամբ կեցեալ եւ մեծացեալ, այլ սուտ վաճառականութեանն մոխրով, զնոյն փութային եւ որդւոցն իւրեանց ուսուցանել. վասն որոյ բարձեալ էր յաշխարհէն Հայոց եւ կորուսեալ վաստակք եւ միտք, քաջութիւն, տոհմականութիւն, արդարութիւն. եւ ձեր Արեաց տեսանելով զայն ամենայն եւ չծանուցեալ թէ՝ չեն ուսեալ ինչ՝ չգիտեն՝ չեն մեղադրելի, ամենայն վատաց եւ յետնելոց զՀայս ածէիք օրինակ՝ նախ Ասորոց, ապա լքելոց, ապա լուծելոց, ապա՝ անգամալուծաց։ Որ նոցա իսկ նման մարդ էր, ձեր խարող հացկատակաց ջոկն էր եւ ոչ կորացեալ մտանէր ընդ գետին. վասն նոցա եւ խնդութիւն եւս թուէր այնպիսի լուրն։ Այլ որ մարդ էր եւ ամօթ կայր ի սրտի եւ զայնպիսի բանս յԱրեաց տեառնէն լսէր, ոչ միայն միանգամ՝ եւ երկիցս եւեթ, այլ թէ եւ տասն անգամ կեայր եւ հանապազ զնոյն լսէր, տասն անգամ արժանի էր մեռանել։ Վասն որոյ եւ մեք իբրեւ զխորհուրդս զայս իշխեցաք խորհել, թէպէտ ածաք զմտաւ երթալ ըստ աշխարհ ելանել եւ կորնչել ճանաչելով թէ մեք առաջի այնչափ բազմութեան զօրաց ոչ կարեմք կալ. բայց ապա՝ զայս ածաք զմտաւ՝ թէ գաղտ բնաւ զարհուրեալ դնամք առաւել եւս ստուգապէս հաստատեալ ժառանգեմք զանուն վատութեանն որ կայր ի վերայ մեր, թէ մարդիկ, որ այնպէս յետին եւ անպիտան էին յիրաւի կորեան եւ անհետ եղեալ չերեւէին

ուրեք. արդ՝ ընտրեցաք նախ ծանուցանել զանձինս եւ ապա կամ մեռանել եւ կամ կորնչել: Զայս նշան մի տամ ձեզ եւ փորձեցէք. եւ զորեարն զայն, որ գամ մի պերոզի յիւրում Թագաւորութեանն մոգութեամբ տէր է արարեալ եւ այժմ գահ ունին եւ պատիւ եւ յիւրաքանչիւր գաւառի իշխան են եւ ձիոյ տէր են եւ զինու եւ գնդի, հրաման տուք, զի ժողովեսցին միաբան ամենայն իւրեանց այրուձիով եւ մեք եւ սոյն արք Թուով, զոր դուք գիտէք, որոց ոչ գոյ ոչ տուն եւ ոչ ծառայ, ոչ գունդ եւ ոչ տանուտէրութիւն, եւ դուք որ Արիք էք, վճեր օգնութիւն վայր մի ի բաց կալջիք եւ զաշխարհս Հայոց ի մեզ եւ ի նոսա Թողէք եւ որ ոք կարասցէ ի միւսմէն հանել՝ նմա տաջիք եւ ձեզ ծառայութիւն արասցէ:

Եւ արդ՝ լռել զօգուտն բազմաց եւ չասել անհնար է. եւ քանզի յաղագս մեծի աշխարհի են բանքս իմ, որ զանձինս ի մահ եդաք եւ յԱրեաց տեառնէն ի բաց կացաք, զայդ երիսս ինչ ի ձեռն պատգամաւորացն գրեցի առ քեզ. մեզ այդ խընդիրք միայն պիտին եւ շնորհեցէք գրով եւ կնքով ի Թագաւորէն, եւ մեր բնիկ տեարք էք եւ մեք ձեր բնիկ ծառայք. եւ զյանցուածս, զոր ի բռնութենէ յանցանել ետուք, Թողութիւն արարեալ շնորհեցէք մեզ:„

Եւ Նիխորոյ լուեալ զայսպիսի կարգուածս բանիցն ի Վահանայ՝ ասաց առաջի ատենին՝ Թէ “համարձակապէս եւ արդար խօսք Վահանայ եւ Նուածմանս աւետիք մխիԹարեալ ուրախացուցին զիս:„ Եւ այն օր հրամայէր Վահանայ առ նմա ուրախանալ ամենայն ուխտակցօքն եւ զուխտանենգսն եւ զուրա-

ցօղսն հանին արտաքոյ ընթրեացն ամօթալիցս։ Եւ ի վաղիւն ժողովեալ ամենայն բազմութիւն մարդկան ի հրապարակն՝ հրաման տայր Նիխոր մինչդեռ ինքն առանձինն էր զՄամիկոնեանն Վահան տանել ի ներքս ի սենեակ, եւ խօսեցեալ ըստ ժամուն ընդ նմա միայն ընդ միայն զբազում ժամս զպէտս կարեւոր իրաց աշխարհի՝ գային երկոքեան ի միասին ի տուն ատենին։ Հրաման տայր Նիխոր ամենայն եկելոցն ընդ Վահանայ՝ նախարարաց եւ ռամկաց եւ արանց պարսիկք աւագաց գալ առ նոսա յատեանն. բայց զարսն որ զինքեանս հաւատարիմս Պարսկացն կացուցանէին՝ հրաման առեալ նուիրակացն եւ ոչ ի դուրսն մտանել տային։ Եւ էր այնուհետեւ տեսանել ի վերայ երեսաց մոխրապաշտացն նոյն կերպարան մոխրոյն իջեալ լի ամօթալից ձաղանօք. եւ էին գոյնք ամենեցուն արդար եւ ծիւրեալք, ծնկեալք, երիթացեալք. եւ ցանկային բազում գնոց առնուլ թէ գոյր հնար զապստամբութեանն անուն եւ ոչ ոք տայր նոցա. վասն զի որ ոք յայնպիսի անծանօթիցն կամէր մտանել յատեանն՝ ասէր ցնուիրակսն թէ յապստամբացն դնդէն եմ։

Եւ երկրորդեալ յատենին զնոյն բանս Մամիկոնեանին Վահանայ՝ սկսանէր միւսանգամ խօսել ընդ Նիխորայ եւ ասէր. “զոր ինչ խնդրեցաք ի քէն պատգամաւորօք եւ գրելովքն՝ երէկ եւ այսօր դէմ յանդիման խօսեցայ ընդ քեզ. դու հրամանաւ Արեաց տեառնն գրով եւ կնքով խոստացար տալ մեզ, առանց որոյ անհնար է կեալ մեզ եւ ծառայութիւն առնել ձեզ։ Հաւատոյ քրիստոնէութեան հաստատութիւն, մոգութեան եւ ատրուշանաց յաշխարհէս Հայոց բարձումն, զեկեղեցւոյ ըստ մեր

կամաց զպայծառութիւն եւ զպաշտօն կնքով Թա-
գաւորին հաստատեա՛ մեզ. եւ այլ զոր ինչ գրեալ
է ի Նամակին, ոչինչ է պիտոյ բազմաբանել առաջի
քո. յաղագս գահու եւ պատուոյ եւ շքեղութեան
հայելով յիւրաքանչիւր ուրուք վաստակս տաջիք
անհոգութեամբ եւ մի զրկիցէք:„

Զայս ամենայն Նիխոր ախորժելով յանձն
առնոյր. խնդրէր ի Վահանայ զընիկ Հայոց զայր-
ուձին. “կազմեա՛, ասէ, փութով եւ արձակեա՛ ի
դուռն. քանզի Զարեհ որդի Պերոզի ընդդիմացեալ
Արեաց արարուածի՝ գունդն դեռ կազմէր ի կո-
րուստ անձին իւրոյ:„ Եւ հրաժարեալք ի միմեանց
չուէին խաղաղութեամբ Նիխոր առ Թագաւորն
ի դուռն եւ զօրավարն Հայոց ի Դուին:

Եւ կազմեալ Վահանայ զայրուձին Հայոց
արձակէր ի դուռն ի ձեռն Վրենայ Վանանդացւոյ.
արձակէր եւ զիւր եղբօրորդի, զորդին Նահա-
տակին Վասակայ, զԳրիգոր: Որոց հասեալ ի գործոյ
պատերազմին եւ հարեալք ի դիմի միմեանց գունդքն
երկոքեան, գունդն Զարեհի փախստական լինէին:
Անդ սեպուհն Մամիկոնէից Գրիգոր ցուցեալ մեծ
քաջութիւն յայտնի լինէր զօրավարին եւ զօրացն
ամենեցուն:

Եւ հասեալք յեզր գետոյն զկամուրջն Արտա-
շատու գտին աւերեալ եւ տեղիս անցի ոչ գտա-
նէին. իսկ քաջ զօրավարն Վահան մերձեալ ի
տեղի մի յեզր գետոյն եւ տեառնագրեալ զինքն
նշանաւ խաչին՝ իջանէր ի գետն եւ որպէս ընդ-
ոյժ տեղի ծանծաղ անցանէր խաղաղութեամբ ընդ
ջուրսն, եւ տեղին ամենայն գնդին լինէր ճանա-
պարհ անցից անհոգութեամբ: Եւ ապա մտեալ

յոստանն ի Դուին եւ զշնորհակալութեան զպատարագն մատուցեալ՝ նախ զաղքատացն ողորմածութեամբ ըստ սովորութեանն կատարեալ զտուրս՝ ուրախանային։ Եւ յետ սակաւ աւուրց ժողովեալ զայրեւձին Հայոց գնայր առ Թագաւորն Վաղարշ։

# ԳԼՈՒԽ ԼԱ•

*Մարզպանութիւն Վահանայ:*

"Բազում ինչ է որբութիւն սատար լինել անօրութեան, որպէս աղօթք՝ գիտութեան եւ սէր սուրբ՝ միաբան օգնից։"

Ու լուեալ թագաւորին եւ ամենայն Արեաց Դոգոր. աւագանւոյն զերթմն Վահանայ ի դուռն՝ վաղվաղակի ժամ արարեալ յանդիման լինէր ՝Վահան՝ թագաւորին։

Վաղարշու զՄամիկոնեանն Վահանայ հարցեալ զողջոյն ոչինչ աւելի քան զայն հարցանէր այն օր. եւ վաղիւն լինէր խորան մեծ լցեալ սաստիկ որերով։

Սկսանէր խօսել Վաղարշ ընդ Վահանայ "լուաք, ասէ, լիով զամենայն խօսեցեալսն քո ընդ Նիխորոյ, զոր ինչ պատգամաւորօք, զոր ինչ նամակաւ եւ զոր ինչ դէմ յանդիման։ Պերոզի ամբարտաւանութիւն, եթէ զքեզ միայն էր կորուսեալ յԱրեաց՝ թեթեւ ինչ էր վնասն. ծառայ մի կորնչէիր, որում թերեւս եւ փոխանակ գտանէր. բայց նա ՝Պերոզ՝ անթիւ բազմութիւն լաւ որերոյ կորոյս, որոց այսօր փոխանակ չիք. արդ՝ դու այսօր հարցման արժանի էիր եւ պատուհասի եւ չարաչար մահու, բայց իբրեւ այլ է պատճառ ամենայն գործիցդ, զոր դու գործեցեր, զքեզ պատուհասել օրէնք մեր չհրամայեն. քանզի զայդ գործ զոր դուդ կարացեր գործել, առ Պերոզի արհամարհոտ եւ կամակոր բարուցն բազումք խորհէին յԱրիս գործել, բայց չեղեն ձեռնհաս, զի չկարացին զանձինս ի մահ տալ այդպէս աներկիւղ, որպէս դուքդ ետուք։

Դո՛ւք բնաւ առ ոչինչ համարելով զայս աշխարհ՝ քաջաբար մեռան, որք մեռանն, եւ եւս առաւել քաջաբար կեցայք, որ ապրեցայքդ եւ ի միջի էք։ Նրանի՜ թէ եւ այլ որերոյն, զորս կորոյս Պերոզ, կարացեալ էր առնել զայդպիսի քաջասրտութիւն, թերեւս այսօր կենդանի էին իբրեւ զձեզդ եւ ի միջի առ մեզ։„

Պատասխանի տուեալ Վահանայ առաջի ամենայն բազմութեանն ասէ. "խօսել առաջի Աստուծոյ եւ առաջի ձեր թագաւորաց երկայն բանիւք չէ արժան. քանզի ես զամենայն զխօսս մեր եւ զխնդիր եւ զհամարձակութիւն գործոյն ցուցի ի ձեռն Նիխորոյ գրով եւ կնքով։ Դուք զմեզ հոգւովք հարկանէիք որում ո՛չ մեր նախնիքն եւ ո՛չ մեք առաջի չկարացաք կալ եւ հանապազ բողոքեմք, եթէ սուտ թուին մեզ օրէնքդ ձեր, մի՛ բռնադատէք զմեզ թշնամանել զոր կամաւ խորհրդով պատուել ոչ կարեմք. քանզի օրէնք մեր զսրբութիւն խնդրեն եւ զամենայն աղտեղութիւն, որով հոգիք մարդոյ կորնչին, չառնուն յանձն եւ չկամին եւ տերանց հրամայեն ծառայել եւ հնազանդ լինել որպէս Աստուծոյ։ Ա՛ղէ ցուցէք այր մի՝ որ պատուեալ են վասն պիտոյութեան կամ ի կռուի վաստակ եւ գործ ցուցանելոյ. զաղտեղի գործս նոցա եւ զմահապարտութիւն յայտնապէս գիտեն գաւառակիցք նորա եւ այլ մարդիկք աշխարհին Հայոց. կրսեր շինականք աշխարհին Հայոց հաց գարշէին ուտել ընդ նոսա եւ կամ բնաւ ի մօտ խսկ երթալ առ նոսա։ Գայրին ի ձէնջ խաբէութեամբ զձեր օրէնսդ ունէին եւ ըստ կամի աղտեղեալ զկրակն՝ զձեզ առ անմիտս ունէին։

Ցաղագս որոյ համարձակապէս առաջի ձեր ասեմ այսօր՝ ի բաց բարձէք զխաբէութեան զվաճառդ զայդ յաշխարհէն Հայոց։ Դուք ի մէնջ որպէս ի ծառայից զձեր տերանց զպատիւն խնդրեցէք, զգործ եւ զվաստակ եւ զհպատակութիւն. եւ աստուածաբար ըստ իւրաքանչիւր վաստակոց զարժանն հատուցէք։ Եւ զխնդիրդ զայդ որպէս օրէնքն են թագաւորաց գրով եւ կնքով մեզ հաստատուն արարէք եւ ի մէնջ որպէս ի ծառայ որերոց գործ խնդրեցէք եւ հպատակութիւն։„ Պատասխանի տուեալ Վաղարշու ասէր. “Զամենայն զոր ինչ խօսեցաւ Վահանն տուեալ եղիցի ձեզ մեր գրով եւ կնքով մինչեւ յաւիտեանս։ Եւ զգործս ապստամբութեանդ, զոր ի բռնութենէն Պերոզի եւ ոչ ի ձեր կամաց գործեցէք՝ թողեալ իցէ ձեզ այսօր։„

Եւ արձակեցին զատեանն. իսկ ի վաղիւն խորհեալ տալ Վահանայ զտէրութիւն Մամիկոնէից եւ զսպարապետութիւն Հայոց՝ բազմեցուցանէին զնա ‘զՎահան’ ի գահու տէրութեան Մամիկոնենից տուեալ ցնա ըստ օրինի նախնեաց իւրոց եւ զսպարապետութիւն Հայոց աշխարհին։ Շնորհէին եւ այլոց ուխտապահ նախարարացն Հայոց որ ինչ էին պատշաճ ըստ անձին արժանաւորութեան։

Եւ հրաժարեալ ի թագաւորէն Արեաց եւ յամենայն դրանն աւագանւոյն հարցանէր Վաղարշ եւ ասէր. “Վահա՛ն սպարապետ Հայոց գո՞հ ես զմէնջ. թէ պիտի եւ այլ եւս ինչ՝ ասա՛։„ Եւ Վահանայ պատասխանի տուեալ ասէր. “զոր ինչ ձեր բարերարութիւնդ առ մեզ արար՝ Աստուածն, որ ամենեցուն արարիչն է, նմա միայն հնար եւ վայելուչ

էր առնել, քանզի զվնաս թողէք, գահ եւ պատիւ տուեալ մեծարեցէք, զգլորեալ եւ զկորուսեալ աշխարհ մի գտեալ կանգնեցէք. բայց որովհետեւ հարցէք, որպէս եղէք կենդանացուցիչ մեռելութեանս իմոյ, կամէի թէ զբովանդակ անձնս յարուցեալ էր եւ ո՛չ զկէսս, վասն զի զկէսս մեռեալ տեսանեմ դեռ:,, Եւ Վաղարշու հարցեալ ասէր “ծանո՛ մեզ զպէտս բանիդ զի գիտասցուք:,, Եւ Վահանայ ասացեալ զի “թէ էր շնորհել զտանուտէրութիւնն կամսարականին, ապա բովանդակապէս տեսանէք զմեռելութիւն ամենայն անդամոցս կենդանացեալ:,, Եւ Վաղարշու պատասխանի արարեալ “յաղագս ոչ կարի տրտմեցուցանելոյ զքեզ ի ժամուս, զի նախ եւ առաջին զայդ պարգեւ խնդրեցեր ի մէնջ, եղիցի վասն քո տուեալ զտէրութիւն կամսարականին: Բայց դու այժմու ի մէնջ պարգեւիդ գոհ լեր եւ ջանա ամենայն ուժով տիրասէր լինել յայսմ հետէ եւ արդարամիտ եւ աշխարհաշէն: Եւ երթ բարեաւ ի քո ընտանիս եւ յաշխարհն եւ հասելոյ երբէք ի մէնջ հրամանի կազմ կաց եւ պատրաստ:,,

Եւ եկեալ տէրն Մամիկոնէից Վահան յաշխարհս Հայոց ամենայն ուխտապահ Նախարարօքն՝ ընդ յառաջ ելանէր սուրբ կաթուղիկոսն Յոհան պատուական նշանաւ խաչին եւ սուրբ նշխարօք ճգնազգեաց նահատակին Գրիգորի եւ ողջունէր զնոսա օրհնութեան համբուրիւ եւ ասէր ուրախալից սրտիւ. “ցնծասցէ անձն իմ ի Տէր, որ զճգնեալ որդւոց եկեղեցւոյ իւրոյ ջնջեաց զքիրտն, հանգոյց զաշխատութիւնն, մաքրեաց զաղտ զինուցն, լուաց զոգիսն հաւատարմաց ուխտապահութեան ջրովն

եւ զգեցոյց ամենեցուն հանդերձ փրկութեան եւ պատմուճան ուրախութեան։„ Եւ օրհնեալ զամենեսեան նախ՝ գայրն ի Վաղարշապատ, որ այժմ անուանի Նոր քաղաք, եւ ըստ սովորութեան իւրում սպարապետն Վահան ուխտակից նախարարօքն կատարէին զուխտս եւ զնուէրս ի սուրբ եկեղեցւոյն կաթուղիկէի եւ ապա՝ յիւրաքանչիւր տեղիս նահատակելոց կուսանաց՝ հոգացեալ նախ զպէտս աղքատացն։ Գային միաբան ամենայն նախարարքն Հայոց ցնծութեամբ սաղմոսիւք եւ ճառիւք հոգեւոր վարդապետաց եկեղեցւոյ սրբոյ։

Եւ կացեալ անդ աւուրս ապա գայր մտանէր ‘Վահան’ ամենայն բազմութեամբն ի բուն ոստանն ի Դուին Հայոց։ ’Եւ ժողովեաց ‘Վահան’ զհարկս Սեբէոս.
աշխարհին Հայոց եւ շինեաց եկեղեցիս մեծամեծս, զոր աւերեալ էր Պարսից ի Վաղարշապատ քաղաք ի Դըւնի եւ ի Մըզըրայս եւ ի բազում տեղիս աշխարհիս Հայոց։ Եւ շինեալ զերկիրն նորոգեաց վերստին ’թեղադրութեամբ եւ խրատու սուրբ հայրապետին Յովհաննու Մանդակունւոյ։„ Յովհ. կթղ.

Յայնժամ գայ յերկիրս Հայոց մարզպան Անդեկան այր խելացի, մտադիր, իմաստահայեաց, որ գիտէր ճանաչողութեամբ որոշել զիմաստունն յանմտէն եւ զլաւն ի վատթարէն, տեսեալ օր ըստ օրէ զիմաստից զառաջատեսութիւն, զարդարախոհութիւն, զաշխարհահոգութիւն ‘եւ’ զքաջութիւն սրտի Վահանայ՝ տայր գիտել թագաւորին Վաղարշու լիով զամենայն. ճանապարհորդեալ յաշխարհէս Հայոց ինքն Անդեկանն ի դուռնն ‘ասէ’. “համարձակիմ առաջի ձեր ասել յայտնապէս թէ անդէպ ‘է’ այլ մարզպան կացուցանել. քանզի այլ մարզ-

ողջոյնն ասէր. "Եկեղեցւոյ սիրե՛լիք, Առաքելոցն որդիք, Քրիստոսի արեանն գի՛նք, մի՛ ծառայեցուցանէք զոգիս ձեր երկիւղի մարդկան. տո՛ւք զկայսերն կայսեր եւ զԱստուծոյն Աստուծոյ:„

"Ահա՛ սիրեցէք զեկեղեցիս եւ սիրեցայք յեկեղեցւոյ. զթագաւորս քաղցրացոյց եկեղեցի. զգազանս ընդելացոյց. զգայլս գառինս արար. զձեզ պայծառացոյց. զթշնամիս ճշմարտութեան ամաչեցոյց:„

"Այլ ես այսօր առ ցնծալ սրտիս եւ ուրախանալ մտացս համբարձեալ զձեռս ի յերկինս աղաղակեմ. Օրհնեալ Տէր Աստուած, որ ետ ինձ ի զաւակէ իմմէ նստել յաթոռ իմ եւ աչք իմ տեսանեն: Օրհնեա՜լ Տէր Աստուած, որ ետ ինձ տեսանել զորդիս եկեղեցւոյս, որ ինձ հաւատացաւ, պատուով շքեղութեամբ պայծառացեալ ի Քրիստոսէ: Ո՞ւր են առանց Աստուծոյ գոռոզացեալքն. ո՞ւր են առանց Աստուծոյ իշխանացեալքն. ո՞ւր են արիւնահեղքն. ո՞ւր են պոռնկասէրքն. ո՞ւր են եկեղեցւոյ թշնամանիչքն, առոտնհարուք օրինացն, սրբութեանն պղծիչք, շինիչք մոխրատանցն, մոռացօղք ճշմարտութեանն, հայհոյողք արդարութեան. փախեա՜ն, երացա՜ն, ամաչեցի՜ն: Ո՛ տայր զգլուխս իմ ի ջուր եւ զաչս յաղբերս արտասուաց եւ նստեալ լայի զհիգացելոցն կորուստ: Ահա տեսէք, մեռանի իգատենչն, այլ մի՛ տայք մեռանել: Սատակի առաջի սեղանոյն արիւնահեղն, այլ օգնել փութացարո՛ւք: Գլխատի Սիմէի, այլ ձեռն տուք գթալով. չէ աստ, ասացէք, Սողոմոնի եւ ոչ ի քարեղէն սալս գրեալ անթողութիւնք օրինացն: Քրիստոս է աստ, ծա՛փս հարէք ամենայն հեթանոսք,

որ ասէ թէ «եկա՛յք առ իս ամենայն աշխատեալք եւ դուք ունիք զբեռինս ծանունս եւ ես հանգուցանեմ զձեզ։

Այլ եւ ձեզ պատուիրեաց հզօրագունիցդ եւ կարողացդ, թէ դուք որ կարողդ էք, զտկարութիւն տկարացն բարձէք։ Կոչեցեալք ի Քրիստոսէ ուտել զհաց երկնաւոր, կոչեցէք ընդ ձեզ զկաղսն եւ զկոյրսն եւ զհիւանդս։ Դիւել կաթն յօժարեցուցէք զտգէտսն ի սննդականութիւն եւ յուրախարար բաժակէն ըմպել ուսուցէք յանուշարար ուրախութիւն ոգւոցն։

Իսկ դուք՝ որ այժմդ ի ներքսդ էք՝ լերո՛ւք կոչնականք եւ հրաւիրակք արտաքոյ յանցաւորացն. ելէք ի հրապարակս եւ ի փողոցս՝ ժողովեալ զամենայն ախտացեալսն ոգւովք եւ զբեկեալս մեղօք ածէք այսր եւ բժշկին ամենեքեան բերելով ընդ ինքեան զխոստովանութիւն եւ զարտասուս։ Ըստ իւրաքանչիւր ախտից բժիշկքն յայտնի են եւ պատրաստ. զմաքսաւորն առ Մատթէոս աւետարանիչ ածէք եւ Զաքէոս. զպոռնիկս առ կինն պոռնիկ, որ այսօր դուստր է Քրիստոսի. զաւազակս առ աւազակն դրախտաբաց. զուրացօղս առ արքայութեան դռնապանն եւ փակակալ Պետրոս։ Եւ գին աւելի ինչ ոք քան զաղօթս եւ զարտասուս ո՛չ պահանջէ։

Վասն որոյ զձեզ աղաչեմ հաստատնոցդ, դեռ եւս անդայթիցդ՝ մի՛ նմանեցուցէք զաղօթս ձեր փարիսեցւոյն թէպէտ եւ բիւր բարեաց զանձինս գտանիցէք եղեալ պատճառ, այլ ասացէք եթէ ծառայք անպիտանք եմք։

Արդ եղիցի ձեզ ընդ այդպիսի զարդու եւ զերկնից փափագելի զգենուլ զզարդն եւ լսել

*զփառաւորեալ եւ զերանելի բարբառն թէ եկա՛յք օրհնեա՛լք Հօր իմոյ ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւնն ի սկզբանէ աշխարհի։ Որում լիցի մեզ արժանի լինել եւ ամենեցուն շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։„*

## *ՎԵՐՋ*

# ՑԱՆԿ

